# ՊՂԱՏՈՆԻ ԻՄԱՍՏԱՍԻՐԻ

## ՏՐԱՄԱԽՕՍՈՒԹԻՒՆՔ

## ԵՒԹԻՓՐՈՆ, ՊԱՇՏՊԱՆՈՒԹԻՒՆ
## ՍՈԿՐԱՏԱՅ ԵՒ ՏԻՄԷՈՍ

Ի ՎԵՆԵՏԻԿ
Ի ՎԱՆՍ ՍՐԲՈՑՆ ՂԱԶԱՐՈՒ

1877

Digitized by Google

# ՊՂԱՏՈՆԻ ԻՄԱՍՏԱՍԻՐԻ

## ՏՐԱՄԱԽՕՍՈՒԹԻՒՆՔ

## ԵՒԹԻՓՐՈՆ, ՊԱՇՏՊԱՆՈՒԹԻՒՆ ՍՈԿՐԱՏԱՅ ԵՒ ՏԻՄԷՈՍ

Ի ՎԵՆԵՏԻԿ
Ի ՎԱՆՍ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ
1877

Digitized by Google

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Իբրև այն ինչ դեռ պերճախօսականն դար ծաղկէր յԱթէնս, և Պերիկլէս այր հզօր բանիւք և ճոխութեամբ, վարակեալ 'ի մեծ սրածութենէն՝ որ ճարակէր յայնժամ 'ի քաղաքին՝ նովին ախտիւք մեռանէր, 'ի նմին ամի նորանշան այլ ծնունդ աւետէր աթենացւոց քաղաքին. որ իւրով մեծախորհուրդ և խորիմաստ գիտութեամբն գրաւել ունէր զբովանդակ աշխարհս՝ զնորս հնոյն հանդերձ միանգամայն։ ԶՊղատոն ասեմ, որ՝ որպէս աւանդութիւնն գրուցէ՝ անդըստին 'ի Սողոնէ և 'ի Կոդրոսէ՝ յաթենացւոց արքայէ՝ զազգ իւր սերէր. այլ ոչ ինքն և ոչ ոք 'ի հնոց փոյթ 'ի մտի եդ զվարս նորա աւանդել մեզ յետնոցս կատարեալ ոճով, զոր վասն և չատ իցեն սակաւ բանքն զոր զնմանէ գրեալ են Ոլոմպիոդորոս իմաստուն այր և լայերտացին Դիոգինէս, և այն առաւել առասպելական և ստայօդ կեղծեօք պաճուճեալ. որպիսի իմն՝ մեղուաց 'ի բերանի նորա մեղր գործել, և վասն լայնութեան ուսոցն և լանջաց կամ ճակատուն՝ յորջորջեալ Պղատոն, և այլ սոցին սակի բանս՝ զորոց և յերկարելն իսկ ոչ ինչ տեղւոյս և բանիս պատշաճաւոր։ Անդստին յառաջին տիոցն՝ ըստ սովորութեան ժամանակին՝ ուսաւ առ ոտս մեծամեծ գիտնականացն՝ զՔերականութիւն, զԵրաժշտականութիւն, զՔերթողութիւն և զԵրկգոննենին Դիոնիսեայ նուագսն, զՈղբերգութիւն, զբնական գիտութիւնս, այլ ապա հուսկ վերջին իբրև 'ի սիրելի իւր ուսումն՝ յարեցաւ յիմաստասիրութիւն, և լսէր զՍոկրատ՝ զմեծն զայն աթենացին, որ արդարև հայրն համարեալ է ողջախորհուրդ և ճշմարիտ իմաստասիրութեան. ուսաւ առ

Digitized by Google

ոտս նորա և Պղատոն, և իւրով նրբամիտ խորհրդականութեամբն անցոյց զանցոյց իսկ զվարդապետութիւն և զամենայն երևելի իմաստնովք՝ զորս ցայնվայր ընծիւղեալ էր Աթենայ։ Այլ 'ի մեռանել Սոկրատայ ոչ ևս յամեաց Պղատոն յԱթէնս, և անդ գնաց 'ի Մեգարա, և ապա ճանապարհորդեաց յԵգիպտոս, ուր ուսաւ և զեգիպտական գիտութիւնս, և եթէ հաճոյ ումեք թուեսցի՝ և զսրբադրոշմ մեհենական նոցին հանճար։ Զորոցայն իմաստութիւն բազում ուրեք 'ի Տրամախօսութիւնսն իւր գովէ Պղատոն, որպէս յայտնի իսկ է բանն այն զոր բերէ 'ի մէջ, իբրև զի Սողոնի երբեմն ուղևորեալ 'ի կողմանս յայնոսիկ՝ 'ի գաւառն Սայիսական, և հարցեալ բազում ինչ զհին պատմութենէ ցքուրմս տեղւոյն, և նորա պատասխանեալ ասէ. «Ո՛վ Սողոն, Սողոն. դուք հելլէնք միշտ մանկտի էք, և ծեր յոյն այր ոչ գտանի[1] »։ Առեալ նորա միանգամ զճաշակ իմաստիցն ազգացն երիցագունից քան զԱթենացիս, ցանկայր և զպարսկական կամ զմոգականն ուսանել իմաստութիւն. այլ քանզի անմարթ էր նմա գնալ յայնժամ 'ի Պարսկաստան վասն առաջիկայ պատերազմաց և ամբոխից՝ հանդիպեալ 'ի Փիւնիկէ արանց ոմանց մոգուց՝ ուսաւ 'ի նոցանէ և զնոցայն արուեստ։ Ճանապարհորդեաց նա և 'ի մեծն Յունաստան. լուեալ և զհրատոչոր զմեծ խառնարանէն Ետնայ՝ չոգաւ 'ի Սիկիլիա տեսանել զայն. և որ յայնժամ բռնակալէրն անդ՝ Դիոնիսիոս, կարծեցեալ հաճոյականս ինչ լսել 'ի նմանէ վասն իւր՝ կոչեաց առ ինքն և մեծապէս պատուեաց զնա. այլ տեսեալ զի ոչ ըստ քմաց նորա առնէ նմա մեծարանս՝ վանեաց յիւրմէ 'ի բաց։ Ապա միւսանգամ անդրէն առ որդւովն նորա դարձ արարեալ 'ի Սիկիլիա և դարձեալ անշուք մերժեալ առ 'ի նմանէ, անդրէն 'ի հայրենիս իւր դառնայր ամաց քառասնից. և անդ զԱկադեմիայն ծաղկեցուցանէր, և զիւրն պարտէզ՝ որ 'ի Կողոնէ, յորս մեծաւ փութով ուսուցանէր զբարձրագոյն իմաստս իւր. և յունկնդիրս իւր հոյակապս յիշին Գաբրիաս, Իփիկրատէս, Տիմոթէոս, հռչակաւորն Փոկիոն, և յոմանց կարծի՝ եթէ և Դեմոսթենէս ինքնին եղեալ իցէ նմա աշակերտ։ Թէպէտ ոչ այնչափ յոգնաթիւ ասին լինել աշակերտք նորա և ունկնդիրք, այլ բազում էր համբաւ նորա ընդ աշխարհ, և միշտ ուսաւ և ուսոյց յամենայն ընթացս կե-

[1] Տիմէոս։

նացն՝ մինչև ցմահ իւր, որ եղև ամաց ութսուն և միոյ կամ երկուց, յամի 347, և էր ծնեալ այրն անմահանուն յամի 429 նախ՝ քան զԹուական Տնօրէնութեան Փրկչին մերոյ։

Ոչ իբրև զայլս յիմաստասիրացն Հելլենացւոց էր նորա առանձին դպրոց, այլ միայն Ակադեմիայն՝ զոր յետ մահուան նորա այլք ժառանգեցին. բայց վարդապետութիւնք նորա և կարծիք, կամ թէ հաճոյ Թուեսցի ումեք ազանդ կոչել զայն, այնչափ արմատացան և հաստատեցան և եղեն 'ի կրօնս, մինչև ապա և նոցին իսկ սրբոց Հարց Եկեղեցւոյ բազում ինչ շահել 'ի նորա վարդապետութեանցն, զոր օրինակ զսակաւս 'ի բազմաց յիշատակեալ, Որոգինէս, Կղեմէս Աղեքսանդրացի, Եւսեբիոս, Ս. Բարսեղ կեսարացի և Աստուածաբանն Գրիգոր, որք 'ի մերժելն ինչ ինչ 'ի կարծեաց իմաստասիրիս՝ զբազում ինչ ընդունէին յօժարութեամբ։ Իմաստասիրութիւն նորա արդարև բարձրաթռիչ իսկ է քան զամենեցուն՝ որ յառաջ քան զնա և որ յետ նորա, մինչև՝ ցարդ ևս անիմանալի և անթարգմանելի մնալ գիտնոց չատ ինչ 'ի նորա վարդապետութեանցն. հռչակաւոր է Պարմենիդէս՝ մի 'ի Տրամախօսութեանց նորա, յորում է ընթեռնուլ ևեթ, այլ ոչ նոյնպէս և հասկանալ, զԳաղափարսն զայնոսիկ նախատիպս՝ զոր դնէ յաստուած ըստ անսահման յաւիտենականութեանն, և ըստ սյսմ՝ Պղատոն համարի եթէ և վերասցեալ բառքդ իսկ մարդկութիւն, անձնաւորութիւն, իցեն արդարև էացեալք յաստուածական գաղափարին և 'ի միտս՝ անդստին 'ի յաւիտենից։ — Այլ ոչ ամենայն ուրեք զնոյն ծանրութիւն իմաստից բերէ 'ի գիրս իւր, այլ բազում ուրեք և քերդողական խանդիւք և ախորժակօք պճնէ քաջ զիւր աստուածայնագոյն տեսութիւնս, և արկանէ զնոքօք՝ իբրև քօղ պաճուճազարդ՝ զհոմերական ոճս և զքաջոլոր խօսս դիւցականս, 'ի վեր քան զամենայն քերթողսն իսկ ճարտարագոյն։ Ծանօթ է նաև արեւելեան առասպելաց՝ զոր գեղեցկանկար արուեստիւք ընծայեցուցանէ 'ի գիրս, որպէս զառասպելն Գիւգեայ և զմատանւոյն շրջշրջելի՝ զկիւդացւոյ հովուին տեսիլ, և զԱրայի գեղեցկին, զոր կոչէ ինքն՝ Էր հայկազն Պամփիլացւոյ, որովք կամի զբարձրագոյն զանմահութեան հոգւոյ ճառս 'ի մէջ բերել։

Ոչ նոյնպէս անիմանալիք և մթինք իցեն Թերևս և բարոյական և քաղաքական տեսութիւնքն, զոր ցիր սաստ անդ սփռեալ է յամենայն Տրամախօսութիւնս իւր, մանաւանդ

Օրէնս և 'ի Քաղաքավարութեան գիրս։ Ըստ քաղաքական տեսութեան քան զչափն իսկ ելեալ թուի մեծի իմաստասիրին, որ զամենայն ինչ խառն 'ի խուռն հասարակաց համարի՝ զկանայս և զմանկունս, և ստեղծանէ 'ի մտաց իշխանութիւն իմն չնաշխարհիկ, իմաստասիրական, և համայն ասել՝ ցնորական, որոյ և ոչ ուրեք յարդիւնս գալ հնար է։ Զնոյն իսկ թերևս խորհուրդս թելադրէր յուղևորութեան իւրում և բռնաւորին Սիկիլիացւոց՝ Դիոնեսեայ և որդւոյ նորա, որ վասն և մերժեցաւ իսպառ յերեսաց նոցա։

Առաւել գեղեցիկք և ողջամիտ են բանքն՝ զոր ասէ զբարոյական կենաց, եթէ զիա՛րդ պարտ է կեալ և կենցաղավարել առաքինութեամբ. դժուարին յոյժ նկարագրէ զելս յառաքինութիւն և մացառօք ամրացեալս, և զի ինքն Արամազդ կամ Զևս բաշխեալ իցէ իւրաքանչիւր՝ գործել և ընտրել զչար 'ի բարւոյ. զսրբութիւն իբրև կին մի չքնաղ՝ շուրջանակի հրապուրանօք թակարդեալ, և զարդարութիւն ոչ այլ ինչ՝ բայց կռփահարութիւնք. իսկ արդարն որպիսի ոք իցէ, ահա 'ի սակաւուն նկարագիր նորա. «Դիցուք արդարև զարդարն՝ այր յստակ և առաքինի, ըստ Էսքիլեայ, ոչ այն որ կամիցի այնպիսի ոք երևել, այլ որ կամիցի լինել այնպիսի արդեամբք։ Զի որ այսպիսի արդարն իցէ, հարուածեսցի գելարանօք, տանջեսցի, աչքն խարեսցին. և զայս ամենայն կրեալ՝ մեռանիցի 'ի խաչի»։ Արդարև կարծիցեն այս ոմանց Եսայեայ մարգարէութեանն բանք՝ որ զՔրիստոսէ Յիսուսէ մերմէ մարգարէանայն։ Ըստ այսոցիկ և այլոց նմանագոյն ճարտարախօս և ճշմարտապատում բանից նորա՝ կարծեցին ոմանք եթէ ընթերցեալ իցէ Պղատոնի և զգիրս Հնոյ կտակին Եբրայեցւոց, և այլք ճգնեցան իսկ ցուցանել 'ի գիրս նորա զքրիստոնէութիւն վարդապետեալ որպէս օրինակ իմն 'ի Մարգարէս. այլ մեր հեռացեալ 'ի ծայրագունիցս՝ զարմանամք ապաքէն ընդ գեղեցիկ ասացածս նորա, այլ գիտեմք ևս՝ զի և բազում ինչ հակառակ մտաց և բարուց բնութեան խօսեցաւ և գրեաց, և 'ի սա ճշգրիտ զբան Առաքելոյն հայեցուցանեմք եթէ «ծանեան զԱստուած և ոչ իբրև զԱստուած փառաւորեցին»։

Ոչ ինչ հեռի 'ի հրաշակերտ բանիցն համարեսցուք և զոր խօսի զԱնմահութենէ հոգւոյ և զհանդերձելոյ վիճակէ նորա, որպէս 'ի Փեդրոսն և 'ի Պատասխանին Սոկրատայ և առաւել 'ի Փեդոնին, զոր և մակագրէ «Յաղագս Անմահու-

թեան հոգւոյ»։ Այլ հրաշալիս իմն վարդապետէ առաւել
քան այլուր՝ 'ի Պատասխանատուութեան Սոկրատայ իւրում
վարդապետին, զոր եդից աստանօր մտադիւր. «Յերկուց
աստի մի իցէ մահն, որպէս ոչի՛նչ լինել և ոչ զգայութիւն
ինչ ունել մեռելոյն զիրաց ինչ, եթէ՝ որպէս ասեն՝ փոփո-
խումն ինչ իցէ և պանդխտութիւն 'ի տեղւոջէ աստի յայլ
տեղի։ Եւ եթէ և ոչ մի զգայութիւն իցէ, այլ որպէս քուն,
յորժամ ոք ննջիցէ և ոչ երազ ինչ տեսանիցէ, սքանչելի
օգուտ իմն իցէ մահն այն...։ Իսկ եթէ իցէ մահն՝ չու իմն
աստի այլուր. և ճշմարիտ իցեն ասացեալքն՝ եթէ անդ իցեն
ամենեքեան որ մեռանն, զի՞նչ մեծ բարի քան զայս մարթի
թէ իցէ, ո՛վ արք դատաւորք։ Զի թէ ոք հասեալ 'ի դժոխս,
զերծեալ 'ի կարծեցեալ դատաւորացս, գտանիցէ անդանօր
զարդարև դատաւորսն, զորոց և ասի՝ անդէն դատաստան
առնել, Մինովս և Հռադամանթիս և Էակոս և Տրիպտողե-
մոս, և այլք, որք միանգամ 'ի կիսաստուածոցն արդարք ե-
ղեն 'ի կեանս իւրեանց, արդեօք չիցէ՞ գեղեցիկ այս չու տար-
աշխարհիկ։ Կամ ընդ Որփեւսի լինել և Մուսէոսի և Եսիո-
դեայ և Հոմերոսի, ո՞րչափ ինչ չիցէ մեծ։ Եւ ես բազում
անգամ կամէի մեռանել, եթէ ճշմարիտ իցեն այսոքիկ...։
Այլ և դուք, ո՛վ դատաւորք, պարտ է զի իցէք քաջայոյսք
առ մահն. և զմի զայս ածել զմտաւ ճշմարիտ, եթէ չիք առն
բարւոյ չար ինչ՝ ոչ 'ի կեանս և ոչ 'ի մահու, և ոչ վարք նորա
անտեսք իցեն առ յաստուածոց»։ Ահա յայտնագոյն վարդա-
պետութիւն նորա զԱնմահութենէ հոգւոյ, որոց և Տակիտոս
Հռոմայեցի նմանագոյնս ուրեք բարբառի 'ի վարս Ագրիկո-
լայ։ Այլ և զկարծիս աստուածութեան, որ ապախտ յոյժ
և նուաստացեալ էր առ հին Յոյնսն, ջանայ իմն նորոգել 'ի
միտս ռամկին՝ մեղմով և զգաստութեամբ, այլ բազում ու-
րեք և երկբայելով իմն. խոտէ անարգէ զհոմերական խառ-
նակութիւնս դից, զմարտս և զկագ և զկռիւ աստուածոց՝ որ
զՈլիմպոս դղրդեալ սասանեցուցանէին. թուի և ծաղր առ-
նել զծննդաբանութեամբ աստուածոց և զորդւոց սերնդոց
և զդստերաց և զայլ բիւր առասպելաց։

Զայն ամենայն կարծիս և տեսութիւնս քերթողաբան
ճոխութեամբ կարգեալ 'ի ձև Տրամախօսութեան՝ բազում
այն է զի յերկբայս մնայ իւրն սեպհական վարդապետու-
թիւն, և միշտ բարբառի ինքն յայլոց դէմս, մերթ 'ի Սո-
կրատայ և մերթ յայլոց. ուստի և չփոթ մեծ անկանի յիւ-

Digitized by Google

րաքանչիւր կողմն խօսելեացն՝ եթէ որ իցէ կողմն Պղատոնին։ Եւ քանզի անհնար է դարմանս մատուցանել այսմ դժուարակնճիռն իրացս, հարկ համարին չափք՝ զհզօրագոյն կողմն տալ Պղատոնի, կամ զՍոկրատայն բանս համարել ընդ իւրում աշակերտին բանս։ Ի բազում Տրամախօսութեանցն՝ զոր գրեաց, են գլխաւորքն Փեդրոս, Փեդոն և Քաղաքավարութիւնն (կամ Հասարակապետութիւնն), Օրէնք, և Տիմէոս և Պարմենիդէս. յորոց զՏիմէոսն, և յայլոցն՝ զԵւթիփռոն և զՊատասխանին (կամ զՋատագովութիւն) Սոկրատայ ընծայեմք ազգիս յընթերցումն առ այժմ, մինչև ապա և զՕրէնսն՝ եթէ հաճոյ թուեսցի 'ի ճաշակս ընթերցողացն՝ տայցեմք 'ի լոյս։

Ի նախնեաց անտի մերոց ոչ բազումս ճանաչեմք ցանկացօղս իմաստասիրութեան. և յետ հռչակելոյն Դաւթի Անյաղթի և Եզնկայ իմաստասիրացն՝ հարկաւորիմք իջանել ցԳրիգոր Մագիստրոս։ Այլ և 'ի սոսա 'ի զուր իցէ թերևս սեպհական ինչ կարծիս նշմարել իմաստասիրութեան, զի որպէս Անյաղթն, սոյնպէս և Մագիստրոս առաւելագոյն զյունական ուսանել գեղեցին. յորոց և յետինս այս, Մագիստրոս ասեմ, ձեռն արկ թարգմանել զՊղատոնի գործս՝ իւրով ընդել մառախլապատ և հելլենաբան խրթնութեամբն։ Վասն որոյ և մեք զամենայն ջան եդաք՝ բաղդատել ընդ յոյն բնագրի՝ անխիղճ ուղղագրել զվրիպակս գրչին, և ըզթարգմանչին՝ եթէ գոյր ուրեք. որպէս զի մի և վրիպակք իմաստից և սխալ գրութիւնք յաւելցեն 'ի մթութիւն հելլենաբանութեանն, որով՝ որ ընթեռնուն ոչ հասկացեալ ինչ, անօգուտ համարիցի զվաստակ թարգմանչին և զմերս։ Այլ և 'ի ձև տրամախօսութեան տամք 'ի լոյս, զի դիւրագոյն թերևս լիցի յընթերցումն բանասիրացս, որոց աղաչեմք՝ զի յընթեռնուլն ուշ ունել պարտին միշտ, զի հելլէն ձևք և ոճք են ամենայն ուրեք, և հայիցի ականջաց ծանրալուրք, բայց ոչ ամենևին անիմանալիք։

Հ. ԱՐՍ. ՍՈՒՔՐԵԱՆ։

# ՊՂԱՏՈՆԻ ՅԵՒԹԻՓՐՈՆ

## ԿԱՄ

# ՅԱՂԱԳՍ ՍՐԲՈՑ

---

Ա. Զի՞նչ նորագոյն, ով Սոկրատէս, եղև, զի դու թողեալ զշրջելն 'ի Լիւկիա՝ աստանօր այժմիկ դեգերիս առ սրահս Թագաւորին. քանզի ոչ երբէք և քեզ հանդէս [1] իսկ գոլով հանդիպի առ Թագաւորին՝ որպէս և ինձ:

Սոկրատ. Ոչ արդ Աթենացիք իսկ, ով Եւթիփրոն, հանդէս զսա կոչեն՝ այլ գիրք [2]:

Եւթ. Զի՞նչ ասես. գի՞ր ոք զքէն, որպէս թուի, գրեալ է. զի ոչ զայն իսկ իմացայց, որպէս դո՛ւ զայլմէ ուրուք:

Սոկրատ. Ոչ իսկ:

Եւթ. Այլ ա՞յլ ոք զքէն է գրեալ:

Սոկրատ. Ամենևին իսկ:

Եւթ. Ո՞ ոք է սա:

Սոկր. Եւ ոչ ես բարւոք ճանաչեմ զայրն, ով Եւթիփրոն. քանզի համբակ ոմն երևէր ինձ և [3] անգէտ, և անուանէին [4] զնա, որպէս ես կարծեմ, Մելիտոն. և է իսկ ատենիցն Պիտտեւս [5]. եթէ առ միտս ունիս զոք Պիտտեայ Մելիտոն, իբրու ձաղկամազ և ոչ ամենևին գեղեցկամօրուս և արծուունկն:

1 Հանդէս. դատ, փոխարէշ:

2 Գիր ասի 'ի յոյն լեզու ամբաստանութիւն զումքէ առաջի ատենի գրով:

3 Ցոր. էր և ինչ անգէտ:

4 Ցոր. անուանէի:

5 Պիտթիս էր ատեան կամ ժողովուրդ 'ի տասանց ցեղիցն Աթենացւոց:

Եւթ. Ոչ զմտաւ ածեմ, ով Սոկրատէս. այլ արդ՝ զի՞նչ գիր զքէն գրեալ է։

Սոկր. Ոչինչ առանց ազնուութեան, որպէս ինձ իսկ թուի. քանզի համբակ ելով այսչափ իրողութիւն իմանալ՝ դիւրին ոչ է, քանզի նա՝ որպէս ասէ՝ գիտէ թէ զի՞նչ յեղանակաւ համբակքն ապականին, և ո՞յք ոմանք են ապականիչքն սոցա. և տագնապի[1] իմաստուն գոլ, և զիմ անուսումնութիւնս տեսանելով իբրու ապականողի զհասակակիցս[2] սորա հասանի ջատագով ինձ լինել[3] առ քաղաքին՝ իբրու 'առ մօր։ Եւ երևի ինձ 'ի քաղաքականացս միայն իշխել ուղղապէս. քանզի ուղղապէս է՝ զհամբակսն յառաջագոյն դարմանել իբրու զի իցեն արիագոյնք, որպէս և բարեւք մշակի նորագոյն տնկոցն վայել է յառաջագոյն փոյթ առնել, և ապա յետ այսորիկ՝ այլոցն։ Եւ արդ Մելիտոս նախ զմեզ 'ի բաց խլէ՝ զհամբակացն շառաւեղիցն ապականիչքս, որպէս ասէ, և ապա յետ այսորիկ երիցագունիցն փոյթ արարեալ՝ յոլովագունից և մեծագոյն բարութեանց պատճառ քաղաքիս լինիցի. իբրև զի որ ինչ վայելչագոյն է պատահի՝ զայսպիսի սկիզբն սորա սկսանելով։

Բ. Եւթ. Ախորժեմ թերևս, ով Սոկրատէս, այլ խորշիմ գուցէ ներհակն հանդիպիցի. քանզի անարհեստաբար[4] ինձ թուի 'ի տանէ սկսանիլ չար գործել քաղաքին, ձեռս արկեալ անիրաւել զքեզ. և ինձ ասա՝ զի՞նչ առնելով քո ասէ ապականել զմանկունսն։

Սոկր. Անտեղի, ով սքանչելի, իբրու այսպէս իսկ լսել. քանզի ասէ զինէն քերթող[5] գոլ աստուածոցն. և իբրև նորագոյնս աստուածս առնելով զնախնիսն ոչ կարծելով, գրեաց 'ի սակս սոցունց այսորիկ՝ իբրու ասէ։

Եւթ. Իմանամ, ով Սոկրատէս, զի դու արդ զդիս յանձին քում ասես իւրաքանչիւրում ժամու լինել. արդ՝ իբրու նորաձեւելով քո առ աստուածայինն՝

1 Մարթի իմաստուն ոք լինել։ 2 Ցոր. ընտանեկիցս։
3 Ամբաստան լինել զինէն։
4 Աստանօր որպէս և այլուր միշտ բառն անարհեստաբար ըստ յունին նշանակէ յիրաւի, արդարև։
5 Արարող, ստեղծիչ, մուծիչ։

Digitized by Google

գրեաց զայնպիսի գիրս. և իբրու դաւաճանելով իսկ հաստանէ 'ի հանդիսարանն [1] գիտելով որպէս դիւրին են առ դաւաճանութիւնս այսպիսիքս ըստ բազմաց։ Քանզի և զինու [2], յորժամ ասեմ ինչ յեկեղեցւոջն յաղագս աստուածային՝ նախասելով սոցա զհանդերձեալսն [3], ծիծաղին իբրու զմոլորելով, և մանաւանդ ոչ ինչ զոր ինչ ոչ ճշմարիտ է՝ ասացի [4] յայնցանէ՝ որ նախ ասացի, այլ սակայն նախանձ հասուցանեն մեզ ամենեցուն այսպիսեացս. այլ ոչ ինչ պարտ է սոցունց փոյթ առնել, այլ երդնուլ յառաջագոյն հաստանել։

Գ. Սոկր. Ո՛վ սիրելի Եւթիփռոն, այլ ծիծաղելի լինելն իսկ՝ ոչ ինչ էր ուղղութիւն թերևս [5]. քանզի Աթենացւոցն, իբրու ինձ թուի, ոչ յոյժ փոյթ է, եթէ չար ուրեմն կարծիցեն զոք ոչ իսկ վարդապետական նորին իմաստութեան. բայց որոյ զայլս կարծիցեն [6] առնել այսպիսիս՝ սրտմտին, թէ նախանձ՝ իբրու դու ասես, և եթէ այլով իւիք։

Եւթ. Արդ յաղագս այսորիկ՝ թէ որպէս երբէք առ իս տրամադրեալ են, ոչ յոյժ ցանկամ փորձ առնուլ։

Սոկր. Քանզի դու թուիս սուղ ինձ զանձն քո առատուել և ուսուցանել ոչ կամել զիմաստութիւնդ քո. այլ ես երկնչիմ, որ 'ի ձեռն մարդասիրութեան, թուի ինձ, զոր ինչ ունիմ հեղլով սոցունց, և ամենայն առն ասել ոչ միայն առանց վարձու, այլ և յաւելեալ հեշտաբար՝ եթէ ոք կամեսցի ինձ լսել [7]։ Արդ եթէ որպէս այժմիկ ասէի՝ հանդերձեալ են լինել ծիծաղիլ զինև, որպէս դու զքեզ ասես, ոչ իցէ ինչ թախանձութիւն՝ խաղալով և ծիծաղելով շրջել 'ի հանդիսարանի. ապ'եթէ փութասցին, այս ինչ ար-

1 Յատեանն։ | 2 Յօր. զինուն։
3 Յօր. զհանդէսն։ | 4 Յօր. ասացի։
5 Յօր. Եւե Եբրա. ըստ յունին՝ այլ ծիծաղելի լինելն իսկ՝ ոչ մեծ ինչ էր թերևս։
6 Յօր. Բայց որով զայս կարծեցան։
7 Յն. Քանզի դու թուիցիս թերևս եթէ ոչ կամիս ուսուցանել զիմաստութիւն քո, և սակաւ ուրեք յայտնես զանձն քո. այլ ես երկնչիմ, զի մարդասիրութեամբս իմով կարծիմ զեղուլ ամենեցուն զոր ինչ ունիմս, ոչ միայն առանց վարձու....։

դեւք թէ որպէս պատահեսցի՝ անյայտ է ամենայնի, բաց 'ի դիւթիցդ 'ի ձէնջ:

Եւթ. Այլ ոչ ինչ իցէ [1], ով Սոկրատէս. այլ դու առ իսկ միտս [2] զանգիտեա 'ի հանդիսէն, բայց կարծեմ որպէս և ես յիմոյն:

Դ. Սոկր. Եւ զի՞նչ է քոյդ, ով Եւթիփռոն, հանդէս. փախչի՞ս 'ի սմանէ՝ եթէ հալածես [3].

Եւթ. Հալածեմ:

Սոկր. Զո՞ ոք:

Եւթ. Զոր հալածելով իսկ թուիմ մոլեալ:

Սոկր. Եւ զի՞նչ, թռուցեալ [4] ինչ հալածես:

Եւթ. Բազում կարօտանայ թռչել յինէն այն իսկ՝ որ հանդիպի գոլով մանաւանդ ծեր [5]:

Սոկր. Սա ո՞ ոք:

Եւթ. Իմ հայրն:

Սոկր. Քո՞յն, ով վեհագոյն:

Եւթ. Ամենևին արդ:

Սոկր. Եւ զի՞նչ է ամբաստանութիւն, կամ ո՞ւմ է հանդէս:

Եւթ. Սպանման, ով Սոկրատէս:

Սոկր. Եռակլէս. Ճշմարտապէս ուրուք, ով Եւթիփռոն, անգէտ է առ 'ի բազմաց՝ թէ որպէս երբէք ուղղապէս ունի. քանզի ոչ կարծեմ իսկ զոր և հանդիպեսցի ուղղապէս զսա գործեսցէ [6], այլ հեռի իցէ արդեւք յիմաստութենէ վարօղն սորա:

Եւթ. Հեռի իսկ, երդնլով 'ի Զեւս [7], ով Սոկրատէս:

Սոկր. Եւ է արդ՝ յընտանեա՞ց ոք մեռեալն 'ի ձեռն հօր քո, եթէ յայտ է. զի ոչ երբէք վասն օտարի իսկ հանդիսէիր ընդ սմա [8] յաղագս սպանմանն:

Եւթ. Ծիծաղելի է, ով Սոկրատէս, զի թուի քեզ

1 Յօր. Իրէ:

2 Այս ինքն. առ միտս քո:

3 Ըստ ատենական ոճոյ հելլենաց ճախճէլ ասի ամբաստանել, և հալածել՝ 'ի դատ ձգել զոք, ամբաստանել. այսպէս միշտ թարգմանի և աստ:

4 Յօր. Թռուչեալ:

5 Յն. Բազում ինչ պէտք են թռչելոյ այնմ՝ որ մանաւանդ ծեր իսկ իցէ:

6 Այս է. Քանզի ոչ կարծեմ եթէ և գտցէ ոք ուղղապէս...

7 Յօր. Երդնուլով՝ 'ի Զես:

8 Յօր: համդինի էիր. — այս է՝ Ոչ երբէք վասն օտարի դատաստան առնէիր ընդ սմա վասն սպանման:

զանազանել ինչ՝ եթէ օտար էր և եթէ ընտանի մեռեալն. այլ ոչ զայս միայն պարտ գոլ պահել[1], եթէ իրաւամբք[2] եսպան սպանօղն, և եթէ ոչ. և եթէ իրաւամբք իսկ՝ թողուլ տալ, և եթէ ոչ՝ հալածել. եթէ սպանողն իսկ տան և սեղանոյ հաղորդ է քո: Հաւասար լինի պղծութիւնն եթէ պատահիս գիտելով զայսպիսի ինչ և ոչ արդարացուցանես զանձն քո և զայնմիկ՝ որ գործէ հանդիսով 'ի վերայ սորա հասանելով[3]: Քանզի որ մեռաւն իսկ՝ մերձաւոր իմ էր, և իբրու մշակէաք 'ի կղզոջն՝[4] հուպ մեր և սա անդանօր վաստակէր. մոլեգնեալ արդ բարկութեամբ 'ի վերայ ումեմն մերոց ծառայիցն՝ սպանանէ զնա. արդ հայրն կապեալ զոտս նորա և զձեռսն՝ արկանէ ներքոյ գբի ուրուք, և առաքէ աստանօր այր՝ հարցանելով զպատմողն[5] թէ զինչ պարտ է առնել, և առ այսմիկ ժամանակիս՝ կապելոյն փոյթ ոչ արարեալ, այլ ծուլացեալ[6] յաղագս սորա իբրու այրասպանի. և ոչ ինչ համարեալ իր գոլ եթէ մեռանիցի, որպէս և կրեաց արդ: Քանզի 'ի ձեռն սովոյ և ցրտոյ և կապանացն մեռանի՝ նախ քան զհրեշտակին առ 'ի պատմողէն հասանել: Արդ զայսոսիկ ահածէ[7] հայրն իսկ և այլ ընտանիքն, զի ես վասն սպանման ամբաստանեմ[8] զհօրէն. ոչ սպանանելով, իբրու ասեն նոքա, և ոչ թէ և սպան իսկ՝ պարտապան է այրասպան գոլով մեռելոյն, և ոչ պարտ գոլ փոյթ առնել վասն այսպիսոյն. զի անսուրբ գոյ որդւոյն՝ սպանմամբ զհօրէն ամբաստանել. չարաչար գիտելով[9] ով Սոկրատէս, զաստուածայինն իրս՝ որպէս ունի իսկ յաղագս սրբոյն և անսրբոյն:

Սոկր. Արդ, ըստ Արամազդայ, ով Եւթիփռոն, այսպէս ստուգաբար կարծես գիտել յաղագս աստուածայնոյն, որպէս ունի, և սրբոցն իսկ և անսրբոցն.

1 Քննել, դիտել:  2 Յոր. Երեւնամբ:
3 Յն. Իրաւամբք կամ դատաստանաւ դատելով զնա:
4 Յն. Մշակէաք 'ի Նաքսոս:
5 Պատմող. յն. ἐξηγήτης. պատմիչ օրինացն և հրեշտակ:
6 Յոր. Ծուլացեալ:
7 Ահածել թուի՝ երկնչել, զչարիլ, զայրանալ:
8 Յոր. Ամբաստանեմ զհօրէն:  9 Յոր. Գիտելով:

իբրու զի սոցունց այսպէս գործելով, իբրու դուդ ասես, ոչ երկնչիս հանդիսանալով[1] ընդ հօրդ՝ որպէս զի ոչ իսկ դու անսուրբ իր հանդիպիցիս գործեալ։

Եւթ. Քանզի ինձ ոչ ինչ օգուտ իցէ, ով Սոկրատէս, և ոչ սմա՝ եթէ զանազանի Եւթիփրոն բազմաց 'ի մարդկանէ, եթէ ոչ զայսպիսիս ամենայն ստուգապէս գիտիցեմ։

Ե. Սոկր. Արդ՝ ինձ թերևս, ով սքանչելի Եւթիփրոն, ցանկալի է աշակերտ քո[2] լինել, և նախագոյն[3] որ առ Մելէտոն, զնոյնս զայսոսիկ ամբաստանել զմանէ, ասելով՝ զի ես իսկ յառաջագոյն ժամանակաւն զաստուածայինսն գիտել յոյժ փոյթ առնէի, և այժմիկ՝ զի և նա ընքնագրով ասէ և նորաձևելով[4] յաղագս աստուածայնոցն մեղանչել՝ աշակերտ եղեայ քո։ Եւ ասացից եթէ, ով Մելիտէ, եթէ զԵւթիփրոն խոստովանիս իմաստուն գոլ առ այսպիսիս և ուղղապէս կարծել, և զիս վարկցիս, և մի հանդիսիր. ապ'եթէ ոչ՝ նմա վարդապետի[5] հատ հանդէս յառաջագոյն քան եթէ ինձ, իբրու ծերոցս ապականողի՝ իմ իսկ և հօրն իւրոյ. զայս իսկ ուսուցանելով, և զնա խրատելով իսկ և տանջելով[6]. և եթէ ոչ հաւանեսցի ինձ, և ոչ թողլ տացէ ամբաստանելով կամ փոխան իմ գրեսցէ զքեն, զնոյնս զայսոսիկ ասել 'ի հանդիսարանին զոր ինչ յառաջագոյն ամբաստանէի զմանէ։

Եւթ. Այո՛ երդնլով յԱրամազդ[7], ով Սոկրատէս, եթէ ձեռս տարածեսցէ արդեւք գրել զինէն, գտից արդեւք՝ որպէս թուի ինձ՝ զի մնոտի է. և յոյժ թերևս առ 'ի մէնջ յառաջագոյն յաղագս նորա բան լինիցի 'ի հանդիսարանին՝ քան եթէ նորա յաղագս իմ։

Սոկր. Եւ ես իսկ, ով ընկեր սիրելի, զայսոսիկ

1 Հանդիսանալ. դատել, դատ դնել։ 2 Յոր. Աշակերտել։

3 Յն. Յառաջ քան զդիրն որ առ Մելիտոս՝ զնոյն զայս յորդորել զնա ասել, զի ես իսկ...

4 Յն. Զի նա զիս ինքնագլուխ լեալ և նորաձևեալ յաղագս աստուածայնոյն՝ մեղանչել ասէ, աշակերտ եղեայ քո։

5 Յոր. Վարդապետ. յն. Նմա իբրև վարդապետի նախ արա փութսից և ապա ինձ։

6 Յն. Զիս՝ իբրև ուսուցիչ, և զնա՝ խրատիչ և տանջիչ։

7 Յոր. Երդնուլով յԱրամազդ։

Digitized by Google

գիտելով՝ աշակերտ քո ցանկամ լինել. գիտելով զի և այլ ոք երբէք և սա Մելետոս՝ զքեզ իսկ ոչ տեսանել կարծէ. բայց զիս այսպէս երագ և դիւրաւ տեսաւ՝ իբրու ամբարշտութիւն զինէն գրեաց։

Զ. Արդ այժմիկ, ըստ Արամազդայ, ասա ինձ զոր ինչ այժմիկ իսկ հաւաստի գիտել պնդէիր [1], թէ որպիսի՞ ասես դու զբարեպաշտոն իսկ և զամբարիշտն [2], և յաղագս սպանման և յաղագս այլոյն. կամ եթէ ո՞չ նոյն է առ ամենայն գործոյ [3] սուրբն նոյն ընքեան. և անսուրբ իսկ՝ սրբոյն ամենայնի ներհակն, և նոյն՝ ընքեան իսկ նման, և ունելով մի ինչ տեսակ ըստ ոչ սրբութեանն՝ զամենայն զոր ինչ և հանդերձեալ են սուրբ դոլ [4]։

Եւթ. Ամենայն իրօք իրաւացի, Սոկրատէ։

Սոկր. Ասա արդ՝ զի՞նչ ասես դու զսուրբն և զի՞նչ զանսուրբն։

Եւթ. Ասեմ այժմիկ, զի սուրբն իսկ է, որպէս այժմիկ առնեմ անիրաւելոյն՝ կամ սպանմամբ կամ զտաձարս կողոպտելով կամ այլ ինչ յայսպիսեացս մեղանչելով ամբաստանելով 'ի վերայ հասանել, եթէ հայր [5] դոլով հանդիպի, և եթէ մայր և եթէ այլ ոք ո՛ր և իցէ. և ոչ ամբաստանելն [6] անսուրբ։ Քանզի տես [7], ով Սոկրատէս, որպիսի ասեմ մեծ նշան զօրինացն՝ զի այսպէս ունի, զոր և այլոց ասացի իսկ, զի այսոքիկ ուղղապէս թերևս իցէ այսպէս լինելով՝ ոչ յորդորելն զամբարիշտոն ոչ ո՛ր և իցէ հանդիպիցի դոլով. քանզի ինքեանք մարդիկ հանդիպլին կարծելով զՋևս՝ աստուածոցն արիագոյն և արդարագոյն. և սա խոստովանին [8] զհայրն իւր կապել, զի զուստերսն կլանէր ոչ իրաւամբք. և զնա իսկ զհօրն իւր զերկաւորիսն [9] հատանել, սպանանել։

1 Յոյն. ուփիղէր. այս է. պնդէիր, յամառէիր.

2 Այս է. Զբարեպաշտութիւնն և զամբարշտութիւն. այսպէս բազում ուրեք իմանալի է զչէզոքս 'ի յոյն.

3 Յն. Կամ ո՞չ նոյն իցէ յամենայն գործս սուրբն՝ ինքն ինքեան։

4 Այս է. ամենայն՝ որ ինչ անսուրբն իցէ, ունի մի ինչ տեսակ զանսրբութեանն։

5 Յոյն. այր։

6 Յոյն. ամբաոփանէլի։

7 Յոյն. փան էս։

8 Յն. զամանէ խոստովանին՝ զհայրն իւր կապել։

9 Յոյն. պէրճնաորխոն. զերկաւորիս հատանել. յոյնն ասէ լով՝ հատանել, սպանանել։



Digitized by Google

տուցանել վասն այլոց այսպիսեացս. բայց ինձ դժուարանան զի զհօրէ իմմէ ամբաստանեմ անիրաւելով [1]. և այսպէս սոքա ընքեանց զներհակն ասեն 'ի սակս աստուածոցն և 'ի սակս իմ։

Սոկր. Արդ ուրեմն, ով Եւթիփռոն, այս ինչ է յաղագս որոյ ես գրեալ հալածիմ։ զի զայսպիսիս յորժամ յաղագս աստուածոցն ասէ ոք՝ իբրու դժուարապէս ընդունիմ [2]. վասն որոյ, որպէս Թուի, ասիցէ ոք զիս մեղուցեալ։ Արդ այժմիկ եթէ և քեզ այսոքիկ համդերձ իմով [3] Թուի՝ բարեւք գիտողիդ յաղագս այսպիսեաց, հարկ է արդ, իբրու Թուի, և մեզ ներել. քանզի և զինչ ասասցուք, որք և մեք իսկ խոստովանիմք յաղագս այսոցիկ ոչ ինչ գիտել. այլ ասա ինձ, ըստ հիւրընկալ աստուածոյն [4], որպէս դու ճշմարտապէ՞ս վարկանիս զայսոքիկ այսպէս եղեալ։

Եւթ. Տակաւին սոցունց սքանչելի, ով Սոկրատէս, զորս բազումք ոչ գիտեն։

Սոկր. Եւ պատերազմ արդեւք վարկանիս դու գոլ ճշմարտապէս աստուածոցն առ միմեանս, և Թշնամութիւն իսկ և չարաչար մարտք և այլ այսպիսիս բազումս՝ որպէս ասի 'ի ձեռն քերթողացն և 'ի բարւոք գրողացն, և զայլսն՝ որովք տաճարքն [5] մեր պաճուճեալ են, և արդ ամենամեծ Աթենացւոց ծայրաքաղաքն լի է այսպիսի պաճուճմամբ [6]. զայսոսիկ ճշմարի՞տ ասասցուք գոլ, ով Եւթիփռոն։

Եւթ. Ոչ միայն զայս, ով Սոկրատէս, այլ որպէս այժմիկ ասացի, և այլ բազում քեզ՝ եթէ կամիցիս՝ յաղագս աստուածոցն ես պատմեցից, զորս դու լսելով բարեւք գիտեմ զի սխրասցիս։

է. Սոկր. Ոչ սքանչացայց, այլ ինձ զայսոքիկ դարձեալ ըստ պարապութեան պատմիցես. բայց այժմիկ,

1 Յն. զանիրաւելոյն։ 2 Յօր. ընդունի։
3 Այս է՝ եթէ և քեզ նոյնպէս Թուի։
4 Յն. πρὸς Φιλίου. այս ինքն երդուեալ 'ի սիրելին, 'ի խաղաղարարն։ 5 Յօր. [illegible]
6 Յն. և զի մանաւանդ համդերձքն լի այսպիսի պաճուճմամբք որ բացեալ լինին 'ի մեծ Համաթենականն 'ի ծայրաքաղաքին։ (Այս ակնարկէ 'ի սքանչելի շղաշաւեռն Աթենասայ որ հրապարակեալ լինէր յԱթէնս 'ի տօնի Համաթենականացն)։

Digitized by Google

*որպէս արդ հարցանէի զքեզ, փութա ասել հաւաստի. քանզի ոչ զիս, ով ընկեր, յառաջագոյնն բաւականապէս ուսուցեր՝ հարցեալ եթէ սուրբ զինչ իցէ. այլ ասացեր ինձ՝ զի զայս ինչ հանդիպի սուրբ գոլով՝ զոր դու այժմիկ առնես, զսպանմանէ ամբաստանելով զհօրէն:*

*Եւթ. Ճշմարտապէս իսկ ասէի, ով Սոկրատէս:*

*Սոկր. Թերևս. այլ, ով Եւթիփռոն, և այլ բազում ինչ ասիցես գոլ, քանզի և են սրբագոյնք. յիշես արդ՝[1] զի ոչ զայս ինչ քեզ հրամայէի, մի ինչ կամ երկու ուսուցանել 'ի բազմաց սրբոցն, այլ զնոյն իսկ զտեսակն, ըստ որում ամենայն սուրբքն՝ սուրբք են. քանզի գիտես ուրուք միով տեսակաւ զանսուրբն սուրբ[2] գոլով, և զսուրբն սուրբ, կամ ո՞չ յիշես:*

*Եւթ. Ես իսկ:*

*Սոկր. Զայս ինչ այժմիկ զնոյնս ուսո[3] ինձ տեսակ, թէ զինչ երբէք է. զի առ նա 'ի բաց հայելով և վարելով սովաւ յարացուցիւ, զոր ինչ և այնպիսի իցէ՝ յորոց եթէ կամ դու կամ այլ ոք գործիցէ՝ ասացից սուրբ գոլ. և զոր ինչ ոչ այնպիսի՝[4] ոչ ասացից:*

*Եւթ. Եւ եթէ այդպէս կամիս, ով Սոկրատէս, և այդպէս քեզ ասացից:*

*Սոկր. Այլ կամիմ իսկ ամենևին:*

*Եւթ. Է արդ այն ինչ որ աստուածոցն սիրելի է՝ իցէ սուրբ, և ոչ սիրելին՝ անսուրբ:*

*Սոկր. Գեղեցկապէս, ով Եւթիփռոն, և որպէս խնդրէի տալ քեզ պատասխանի՝ այնպէս այժմիկ ասացեր: Սակայն եթէ Ճշմարտապէս՝ ոչ ևս զայս ինչ գիտեմ, այլ դու յայտ է զի ուսուցանես իբրու Ճշմարիտ է զոր ինչ ասեսդ:*

*Եւթ. Ամենևին արդար:*

*Սոկր. Բեր արդ խնդրեսցուք զոր ինչ ասեմք. իսկ աստուածասէր իրն և աստուածասէր մարդն՝ սուրբ, և աստուածատեաց իրն և աստուածատեաց մարդն՝ անսուրբ:*

1 Յն. և այլ բազում ինչ ասիցես լինել սուրբք: Եւթիփ. Զի են իսկ: Սոկր. Յիշեա արդ զի ոչ....

2 Յն. զանսուրբն անսուրբ գոլով: 3 Յօր. ուսոյց:

4 Յօր. և զոր ինչ այնպիսի:

Եւթ. Արդ ոչ է նոյնպէս, և ներհակագոյն սուրբն անսրբոյն։

Սոկր. Այսպէս իսկ և բարեւք Թուի ասացեալդ։

Եւթ. Երևի ինձ, ով Սոկրատէս, քանզի ասացաւ։

Սոկր. Ո՞չ ապաքէն՝ զի հակառակլին աստուածքն, ով Եւթիփռոն, և տարբերլին ընդ միմեանս, և Թըշնամութիւն է սոցա [1] առ միմեանս. և այս ասացաւ։

Եւթ. Ասացաւ իսկ։

Սոկր. Բայց զԹշնամութիւն և զբարկութիւն, ով արիագոյն, յաղագս ոմանց [2] զանազանիլն՝ գործէ. այլ աստանօր դիտեսցուք. եԹէ զանազանէաք ես իսկ և դու յաղագս Թուոյ՝ Թէ որ է յոլովագոյն, յաղագս սոցա զանազանիլն՝ Թշնամիք Թերևս զմեզ գործիցէ, և բարկանալ ապա միմեանց. բայց համարով 'ի խորհուրդս հասանելով յաղագս այնպիսեացն իսկ՝ վաղվաղակի Թերևս 'ի բաց փոխիցո՞ւք [3]։

Եւթ. Ամենևին իսկ արդարագոյն։

Սոկր. Ո՞չ ապաքէն և յաղագս մեծագունի և փոքու եԹէ զանազանիցիմք, առ 'ի չափելն հասանելով վաղվաղակի դադարեսցուք 'ի տարբերութենէն։

Եւթ. Է այս ինչ այսպէս։

Սոկր. Եւ 'ի կշռելն [4] հասանելով, իբրու ինձ Թուի, յաղագս ծանրագունին և ԹեԹևագունին՝ ընտրիցուք իսկ։

Եւթ. Եւ ո՞րպէս ոչ։

Սոկր. Եւ յաղագս այսր ուրուք զանազանելով և առ ընտրութիւն ինչ ոչ կարելով հասանել՝ Թշնամիք իսկ միմեանց լիցեմք և բարկասցո՞ւք. Թերևս քեզ ոչ է առ ձեռն. այլ ինձ լուր ասելով և դիտեա Թէ այս ինչ է զարդարն իսկ և զանիրաւն, և զբարին և զգարշելին, և զազնիւն և զչարն. այսոքիկ են արդեւք, յաղագս որոց զանազանելով և ոչ կարելով 'ի բաւական ընտրութիւն սոցա հասանել՝ Թշնամիք իսկ միմեանց լինիցիմք՝ յորժամ լինիցիմք, և ես և դու և այլք մարդիկ ամենայն։

1 Յօր. սոսա։

2 Յն. յաղագս որո՞ց զանազանիլն գործէ։

3 Յն. բայց 'ի բանս եկեալ ընդ միմեանս վասն այսպիսեաց՝ կարիցեմք վաղվաղակի հաշտել։

4 Յօր. ՚ի կշռէն։

Եւթ. Այսպէս է զանազանութիւն, ով Սոկրատէս, և յաղագս այսոցիկ։

Սոկր. Եւ զինչ, ով Եւթիփրոն՝ աստուածքն եթէ ոչ ինչ զանազանեալք [1] են, վասն այսոցիկ տարբերիցին արդեւք։

Եւթ. Բազում հարկ է։

Սոկր. Եւ յաստուածոցն արդեւք, ով արիագոյն Եւթիփրոն, այլք զայլ ինչ իրաւացի վարկանիցին՝ ըստ քոյոյ բանիդ, և գեղեցիկ և գարշելի և բարի և չար. քանզի ոչ երբէք հակառակէին ընդ միմեանս՝ եթէ ոչ յաղագս այնոցիկ զանազանէին։

Եւթ. Ճշմարտապէս ասես։

Սոկր. Ապա ուրեմն զոր ինչ բարի վարկանիցին իւրաքանչիւրք և ազնիւք և իրաւացիք, զայսոքիկ և սիրեն, և զներհակն սոցունց ատեն [2]։

Եւթ. Ամենևին իսկ։

Սոկր. Այսոքիկ [3] արդեւք, որպէս թուի ինձ, ատեալ են առ 'ի յաստուածոցն և սիրեալ. և աստուածատեաց իսկ և աստուածասէր այսոքիկ նոյնս իցեն թերևս։

Եւթ. Թուեցեալ իսկ է։

Սոկր. Եւ սուրբ արդեւք և անսուրբ այսոքիկ նոյնս իցեն թերևս, ով Եւթիփրոն, յայսմիկ բանիւս։

Եւթ. Տագնապի իսկ [4]։

Թ. Սոկր. Ոչ արդեւք զոր ինչ հարցանէի՝ ետուր պատասխանի, ով սքանչելի. քանզի ոչ զայս ինչ հարցանէի՝ զոր ինչ հանդիպի նոյն ինչ գոլով, սուրբ ինչ և անսուրբ. և զոր ինչ աստուածասէր իցէ և աստուածատեաց, որպէս թուեցեալ է։ Վասն որոյ, ով Եւթիփրոն, զոր ինչ դու այժմիկ առնես զհայրն տանջելով ոչ և մի ինչ է սքանչելի, թէ զայս ինչ առնելով Արամազդայ սիրելի ինչ գործես, և Կռոնոսի և Երկնի թշնամի. և Հեփեստոսի իսկ սիրելի, և Հերայ թըշնամի. և եթէ յայլ ոք յաստուածոցն յայլմէ յումեքէ

1 Ցն. Աստուածքն՝ եթէ երկփեղկիցին ինչ, ոչ վասն նոցին իրաց հերձնուցուն։

2 Ցոր. ատէն։

3 Ցոր. այսորիկ։

4 Տագնապի իսկ. թուի, կարծի, երևի։

տարբերեալ է յաղագս նորին իրի և այնոցիկ [1] նոյնպէս։

Եւթ. Այլ կարծեմ, ով Սոկրատէս, յաղագս այսորիկ ոչ ոք յաստուածոցն այլ 'ի յայլմէ տարբերի, իբր ոչ է պարտ պատուհաս կրել այնմիկ՝ որ և անիրաւապէս զոմն սպանանիցէ։

Սոկր. Եւ զի՞նչ, ով Եւթիփռոն, 'ի մարդկանէ՞ արդեւք ումեմնէ լուար երկբայելով սորա՝ իբրու անիրաւապէս սպանողին կամ այլ ինչ զոր ինչ և իցէ անիրաւապէս գործողին ոչ է պարտ հատուցանել պատուհաս։

Եւթ. Ոչ իսկ դադարին զայսոսիկ երկբայելով, և այլ ուրեք [2] և առ հանդիսարանս, զի ամենևին բազում ինչ անիրաւելով՝ զամենայն ինչ գործեն և ասեն փախչելով 'ի պատուհասէն։

Սոկր. Եւ ճշմարտապէս խոստովանի՞ն, Եւթիփռոն [3], անիրաւել. և խոստովանել ո՞չ պարտ գոլ ասեն հատուցանել նոցա զպատուհաս։ Զայս ինչ ոչ և միով իւիք [4]։ Ապա ոչ զամենայն իսկ առնեն [5] և ասեն. քանզի զայս ինչ ոչ համարձակին ասել, որպէս թուի ինձ, և ոչ երկբայելով, իբրու թէ անիրաւք իցեն ոչ է պարտ հատուցանել զպատուհաս, այլ կարծեմ՝ ասեն ոչ անիրաւել. Ճշմարտապէս ասացաւ։

Եւթ. Ճշմարտապէս ասես։

Սոկր. Ապա ուրեմն ոչ առ այս ինչ երկբային՝ իբրու անիրաւելին ոչ է պարտ հատուցանել զպատուհաս, այլ առ այն ինչ թերևս երկբայիցեն՝ թէ ոք է անիրաւող և զի՞նչ գործելով և երբ։

Եւթ. Ճշմարտապէս ասես։

Սոկր. Ո՞չ ապաքէն զայսոսիկ զնոյնս և աստուածքն կրեսցեն, եթէ հակառակին յաղագս իրաւանցն և անիրաւութեանց՝ իբրու քոյդ է բան. և ոմանք ասեն զմիմեանց անիրաւել, և ոմանք ոչ ասեն. քանզի զայն իսկ ինչ, ով սքանչելի [6], ոչ և մի ոք՝ ոչ յաստուածոցն

1 Յօր. այնոսիկ։ 2 Յօր. այլ ուրուք։
3 Յօր. անիրաւելով Եւթիփռոն անիրաւել։
4 Յն. Եւթ. Զայս ինչ ոչ և միով իւիք։ Սոկր. Ապա ոչ...
5 Յօր. ոչ ամենեքեան իսկ առնեն և ասեն. եդաք ըստ յունին։
6 Յօր. ով սքանչելի։

Digitized by Google

և ոչ 'ի մարդկանէ համարձակի ասել, իբրու անիրաւողին իսկ ոչ է պարտ հատուցանել պատուհաս:

Եւթ. Այդ զգլուխս զայսմիկ, ով Սոկրատէս, ասես իսկ ճշմարտապէս. երկբայեն [1] այնոքիկ որք երկբայեալք իցեն և մարդիկ և աստուածք. եթէ երկբայեսցին իսկ աստուածքն 'ի սակս գործոց ինչ տարբերելով, ոմանք արդարապէս ասեն սմա գործել և միւսք անիրաւապէս:

Եւթ. Ամենևին իսկ:

Ժ. Սոկր. Ե՛կ այժմիկ, ով սիրելի Եւթիփռոն, ուսո և զիս, զի իմաստնագոյն լինիցիմ. զի՞նչ նշանակ է քեզ [2] իբրու ամենեքեան աստուածքն վարկանիցին սմա անիրաւապէս մեռանիլ, այսմիկ՝ որ այրասպան լինելով, և կապեալ 'ի ձեռն տեառն մեռանելոյն՝ հասանի վախճանել վասն կապանացն, նախ քան զկապողին առ 'ի պատմողացն յաղագս սորա իմանալ՝ թէ զի՞նչ պարտ է առնել. և վասն այսպիսի արդ ուղղապէս ունի՝ [3] ամբաստանելով 'ի վերայ հասանել և սպանման վկայութիւն առնուլ որդւոյն զհօրէ իւրմէ: Ե՛կ, յաղագս այսոցիկ փութանալով, և ցոյց ինձ հաւաստի՝ իբրու ամենայնի մանաւանդ՝ ամենեքեան աստուածք վարկանիցին ուղղապէս ունել գործոյս այսմիկ: Եւ եթէ բաւականապէս ինձ ցուցցես [4], առ իմաստութիւն աղէ ներբողելով զքեզ ոչ երբէք դադարեցից:

Եւթ. Այլ թերևս ոչ սուղ ինչ գործ է, ով Սոկրատէս. քանզի ամենևին իսկ հաւաստաբար ունիցիմ քեզ ցուցանել. իմանամ [5] զի թուիմ քեզ քան զդատաւորսն դժուարին գոլ առ ուսումն. քանզի նոցա իսկ ցուցանես՝ յայտ է՝ թէ իբրու անիրաւ իսկ է, և աստուածքն ամենեքեան ատեն զայսոսիկ:

Եւթ. Ամենևին հաւաստի, ով Սոկրատէս, եթէ լուիցեն ինձ ասելով:

ԺԱ. Սոկր. Այլ լուիցեն՝ եթէ բարւոք իսկ թուիցիս ասել. բայց զայս ինչ զմտաւ ածի համան-

1 Յն. ճշմարտապէս: Սոկր. Այլ զիւրաքանչիւր իսկ գործոց երկբայեն որք երկբայինն, և մարդիկ և աստուածք:

2 Յոր. զի՞ ինչ նշանակէ քեզ:

3 Այս է. վասն այսորիկ ուղիղ է կամ 'ի դէպ է:

4 Յոր. ցուցես:

5 Յն. Սոկր. Իմանամ զի....

Digitized by Google

*զամայն ասելով, և առանձին դիտեմ[1], զի մանաւանդ ուսուսցէ ինձ Եւթիփռոն, իբրու աստուածքն ամենեքեան զայսպիսի մահս վարկանին անիրաւ գոլ. զի՞նչ յաւէտ ես ուսայ առ 'ի յԵւթիփռոնոսէ, եթէ զի՞նչ երբէք է սուրբն իսկ և անսուրբն. քանզի աստուածատեաց իսկ՝ գործս այս[2], իբրու նմանեցաւ[3], թուեսցի թերևս. այլ ոչ այսպէս երևեցան սահմանեալք սուրբն իսկ և ոչն. քանզի այն իսկ որ աստուածատեացն է՝ և աստուածասէր երևեցաւ: Բայց յայսմանէ թողուցում զքեզ, ով Եւթիփռոն. եթէ ախորժես ամենեքեան զսա աստուածք՝ վարկցին անիրաւ, և ամենեքեան ատելով զսա: Այլ ուրեմն զայս ինչ զոր այժմիկ բանիւս վերստին ուղղեմք. իբրու թերևս զոր ինչ ամենեքեան աստուածքն ատիցեն՝ անսուրբ է, և զոր ինչ սիրեսցեն՝ սուրբ. և զոր ինչ ոմանք սիրեսցեն և ոմանք ատեսցեն՝ չէզոք, կամ զերկաքանչիւրսն. ուրեմն[4] այսպէս կամիս մեզ սահմանել այժմիկ յաղագս սրբոյն և անսրբոյն:*

*Եւթ. Եւ զի՞նչ արգելու, ով Սոկրատէս:*

*Սոկր. Չիս ոչ ինչ[5], ով Եւթիփռոն. այլ դու զքոյդ դիտեա, եթէ զայս ինչ ենթադրելով՝ ուսուսցես ինձ զոր ինչ խոստացար:*

*Եւթ. Արդ ասացից թերևս զայս ինչ գոլ սուրբ՝ զոր ամենեքեան աստուածքն սիրեն, և զներհակն՝ զոր ինչ ամենեքեան աստուածքն ատեն՝ անսուրբ:*

*Սոկր. Ո՞չ ապաքէն վերադիտեսցուք իսկ զայս ինչ, ով Եւթիփռոն, եթէ բարւոք ասացաւ՝ և կամ թողուցո՞ւմք[6], և այսպէս զմեզ իսկ ինքեանս ընդունեսցուք և զայլս,[7] եթէ միայն ասիցէ ոք ունել ինչ այսպէս՝ ներելով ունել, և կամ խնդրե՞լ թէ զինչ ասէ որ ասէնն:*

*Եւթ. Խնդրել պարտ է, բայց կարծեմ իսկ ես զայս ինչ բարւոք ասիլ այժմիկ:*

*Սոկր. Թերևս, այր բարի, լաւագոյն գիտասցուք.*

1 Յոր. գիտեմ:
2 Յոր. յայսմիկ:
3 Իբրու նմանեցաւ. որպէս կարծի, որպէս 'ի դէպ է՝ նման է:
4 Յոր. ասեմ:
5 Յոր. Չէ ոչ ինչ:
6 Յոր. թողացումն:
7 Ցն. և այսպէս մեզ և այլոց հաւանեսցուք:

Digitized by Google

քանզի զմտաւ ած զայսպիսի ինչ. սուրբն արդեւք զի սո՞ւրբ է՝ սիրի յաստուածոցն, եթէ զի սիրի՝ սուրբ է։

Եւթ. Ոչ գիտեմ զինչ ասես, ով Սոկրատէս։

Սոկր. Այլ ես ջանամ ասել քեզ հաւաստի. ասեմք, ինչ որ լինի՝ բերեալ, և զայլ ինչ բերել. և ածեալ լինի, և զայլ ինչ ածել, և տեսեալ՝ և զայլ ինչ տեսանել. և զամենայն զայսպիսիս իմանաս՝ զի այլ ինչ են 'ի միմեանց. և ըստ որում այլքն։

Եւթ. Թուի ինձ՝ զի ուսանիմ։

Սոկր. Ո՞չ ապաքէն և սիրեալ՝ ինչ է. և այլ ինչ քան զայս՝ այն որ սիրէն։

Եւթ. Եւ ո՞րպէս ոչ։

Սոկր. Արդ ասա ինձ, ո՞րպէս, բերելին վասն զի բերի՝ բերելի՞ է, և եթէ վասն այլոյ իրիք [1]։

Եւթ. Ոչ, այլ վասն այսորիկ։

Սոկր. Եւ ածելին վասն զի ածի՞, և տեսանելին վասն զի տեսանի՞։

Եւթ. Ամենեւին իսկ։

Սոկր. Ո՞չ ապաքէն վասն զի տեսանելի է՝ վասն այսորիկ տեսանի. այլ վասն զի տեսանի՝ վասն այսորիկ է տեսանելի. և ո՛չ վասն զի ածելի է՝ վասն այսորիկ ածի, վասն այսորիկ է ածելի [2]. և ոչ վասն զի բերելի է՝ բերի, այլ վասն զի բերի՝ բերելի է։ Ապա ուրեմն յայտ է, ով Եւթիփռոն, զոր ինչ կամիմ ասել. և կամիմ զայս ինչ, զոր ինչ լինի և կամ կրէ՝ ոչ վասն զի լինելի է՝ լինի, այլ վասն զի լինելի է՝ լինելին [3]. և ոչ վասն զի կրելի է՝ կրի, այլ վասն զի կրէ՝ կրելի է, ո՞չ ներես [4] այսպէս։

Եւթ. Ես իսկ։

Սոկր. Ո՞չ ապաքէն և սիրելին կամ եղեալ ինչ է և կամ կրեալ ինչ 'ի ձեռն ուրուք։

Եւթ. Ամենեւին իսկ։

Սոկր. Ապա ուրեմն և այս այսպէս ունի որպէս և

1 Յոյն. վասն որոյ [illegible]։

2 Յոյն. պակասէր. ո՛չ վասն զի ածելի է՝ վասն այսորիկ ածի, այլ զի ածի՝ վասն այսորիկ ածելի է։

3 Այս է. այլ վասն զի լինի՝ լինելի է։

4 Յոյն. ոչ Նէր այսպէս։

յառաջագոյնսն. ոչ վասն զի սիրելի է՝ սիրի 'ի ձեռն որոց սիրի, այլ վասն զի սիրի՝ սիրելի է։

Եւթ. Հարկաւ իսկ։

Սոկր. Զի՞նչ արդ ասեմք յաղագս սրբոյն, ով Եւթիփռոն, այլ որ ինչ սիրի 'ի ձեռն աստուածոցն ամենեցուն. իբրու քոյդ է բան։

Եւթ. Այո։

Սոկր. Արդ՝ վասն այսորիկ՝ վասն զի սուրբ է, եթէ վասն այլոյ ուրուք։

Եւթ. Ոչ. այլ վասն այսորիկ։

Սոկր. Վասն զի սուրբ է՝ ուրեմն սիրի, այլ ոչ վասն զի սիրի՝ վասն այսորիկ սուրբ է։

Եւթ. Այսպէս թուի։

Սոկր. Այլ սակայն վասն զի սիրի իսկ 'ի ձեռն աստուածոցն՝ սիրեալ իսկ է և աստուածասէր։

Եւթ. Եւ ո՞րպէս ոչ։

Սոկր. Ոչ արդեւք աստուածասէրն սուրբ է, ով Եւթիփռոն, և ոչ սուրբն աստուածասէր՝ իբրու դուդ ասես. այլ այս ինչ այլ է քան զայն։

Եւթ. Ո՞րպէս արդ, ով Սոկրատէս։

Սոկր. Զի խոստովանիմք, սրբոյն իսկ վասն այսորիկ սիրիլ՝ զի սուրբ է, այլ ոչ վասն զի սիրի՝ սուրբ գոլ. ճշմարիտ է բանս։

Եւթ. Այո։

Սոկր. Եւ զաստուածասէրն իսկ՝ վասն զի սիրի յաստուածոցն, նովիմբ այսուիկ սիրելովս՝ աստուածասէր գոլ, այլ ոչ՝ զի աստուածասէր՝ վասն այսորիկ սիրիլ։

Եւթ. Ճշմարտապէս։

Սոկր. Այլ եթէ նոյն և սուրբն իսկ էր, ով սիրելի Եւթիփռոն, աստուածասէրն, եթէ վասն սուրբ գոլոյն՝ սիրիլ սուրբն, և աստուածասէր գոլոյն՝ սիրիլ թերևս աստուածասէրն. և եթէ վասն սիրելոյն յաստուածոցն աստուածասէրն՝ աստուածասէր էր, և սուրբն թերևս վասն սիրելոյն՝ սուրբ էր. բայց այժմիկ տեսանես՝ զի ներհակապէս ունի, իբրու ամենևին այլք գոլով 'ի միմեանց. քանզի ոմն՝ զի սիրէ իբրու սիրեալ, և միւսն վասն զի իբրու սիրեալ է՝ վասն այսորիկ սիրի. և տագնապիս, ով Եւթիփռոն, հարցանելով զսուրբն՝

Digitized by Google

եթէ զինչ երբէք է. զգոյացութիւնն իսկ սորա ոչ կամիլ յայտնել ինձ, այլ կիրս ինչ յաղագս սորա ասել զոր ինչ կրեալ է. այս ինչ սուրբն՝ սիրեցեալ յամենեցունց աստուածոցն. այլ եթէ զոյ՝ ոչ ևս ասացեր. արդ՝ եթէ քեզ սիրելի է՝ մի՛ յինէն 'ի բաց թաքուցաներ, այլ դարձեալ ասա 'ի սկզբանէ, թէ զինչ երբէք գոլով սուրբն, կամ սիրի յաստուածոցն, և կամ այլ զոր և ինչ իցէ՝ կրէ, զի ոչ յաղագս այսորիկ զանազանեսցուք. այլ ասա յօժարապէս, թէ զինչ է սուրբն և անսուրբն։

Եւթ. Այլ, ով Սոկրատէս, ես իսկ ոչ ունիմ թէ որպէս քեզ ասացից զոր ինչ իմանամ. քանզի իբրու շրջաբերի մեզ՝ զոր ինչ և յօժարիմք, և ոչ կամի կալ և մնալ՝ ուր և հաստատեմք զսա։

Սոկր. Մերոյն նախածնին [1], ով Եւթիփռոն, թուեցեալ է գոլ Դեդալոսի՝ 'ի ձեռն քո ասացեալքս [2]. և եթէ ես իսկ զայսոքիկ ասէի և կամ առնէի, բամբասէիր զիս թերևս, իբրու և յինէն արդեւք՝ ըստ նորին բաղազանութեան՝ որ ինչ առ բանիցս են գործք 'ի բաց փախչին. և ոչ կամին կալ և մնալ ուր և դիցէ ոք զսոսա։ Բայց այժմիկ, — քո են ենթադրութիւնքս —, և առ 'ի յայլմէ ուրուք կարօտանան բամբասանաց, քանզի ոչ կամին քեզ կալ և մնալ, իբրու և նորին քեզ իսկ թուի։

Եւթ. Ինձ գրեթէ թուի ինչ այդմիկ բամբասանացդ կարօտանալ ասացելոցս, քանզի այսոցիկ շրջաբերելոյ սոցա և ոչ մնալոյ նովիմբ՝ [3] ոչ ես եմ պատճառին եդող. այլ դու ինձ թուիս Դեդաղոսս, քանզի 'ի սակս իմ մնայր թերևս այսոքիկ այդպէս։

Սոկր. Տագնապիմ արդեւք [4], ով ընկեր սիրելի, քան [5] զայրն այն ճարտարագոյն գոլ արհեստի այսչափ, որչափ նա իսկ իւրոյն միայն գործէր զոչ կալն և

1 Յօր. նախանձնլէր։ 2 Յօր. ասացեալ քո։
3 Յօր. քանզի այսոցիկ շրջաբերելոյ սոցա, և ունմա լոյս նովիմբ։
4 Յն. Սոկր. կարծեմ արդարև, ով սիրելիդ, գոլ այնչափ հզօրագոյն քան զայրդ զայդ յարուեստս, որ զի նա զիւրսն ևեթ առնէ չմնայունս, այլ ես, առ իմովքս և զայլսն։
5 Յօր. քանզի զայրն այն։

մնալն, բայց ես իսկ առ իմօքն, իբրու Թուի, և յստա-
րացն. և ինձ արդ այս ինչ է արհեստիս պաձուձեալ [1],
զի ակամայ եմ իմաստուն. քանզի կամէի Թերևս՝ զի
մնասցեն [2] ինձ բանքս, և անշարժաբար հաստատիցին
մնաւանդ՝ քան եԹէ առ Դեդաղոս իմաստուԹեանն
և Տանտաղոսի իրողուԹեանցն կիրսն լինել. բայց սո-
ցունց իսկ դժոխսն է [3]:

ԺԳ. Այլ քանզի դու Թուիս ինձ խորախանալ և
ես հանդերձ քև [4] յօժարացայց ցուցանել, իբրու զի
ուսուցանես զիս յաղագս սրբոյն, և ոչ յառաջագոյն
այսորիկ 'ի բաց կացցես յաշխատանացս. զի տես եԹէ
ոչ քեզ հարկաւոր Թուեսցի արդար գոլ ամենայն
սուրբն և կամ սուրբն ամենայն արդար, բայց ար-
դարն՝ ոչ ամենայն սուրբ, այլ ոմն սորա՝ սուրբ. և
միւսն՝ այլ ինչ:

ԵւԹ. Ո՛չ հետևիմ, ով Սոկրատէս, ասացելոցդ:

Սոկր. Սակայն և կրսերագոյն ես քան զիս, ոչ
նուազ քան եԹէ որչափ իմաստնագոյն. այլ զոր ինչ
ասեմն՝ խորախանաս 'ի ձեռն փարԹամուԹեան որ ի-
մաստուԹեանն է. այլ, ով երանելի, 'ի միասին ձըգ-
տեցո [5] զանձն քո. քանզի ոչ է դժուարին իմանալ
զոր ինչ ասեմս. քանզի ասեմ իսկ զներհակն քան ե-
Թէ զոր ինչ քերԹողն քերԹեաց՝ ասացեալ [6]. զի եր-
կիւղ իցէ անդամնօր ուր և պատկառանս է. քանզի բա-
զումք ինձ Թուին [7] և 'ի հիւանդուԹեանց և 'ի տնան-
կուԹեանց և յայլոց բազմաց յայսպիսեաց երկու-
ցեալք. երկնչել իսկ, բայց պատկառել և ոչ ինչ յայն-
ցանէ՝ յորոց երկնչինն. ո՞չ Թուի և քեզ:

Եւթ. Ամենևին իսկ:

1 Այս է. պանծագոյն մասն:   2 Յօր. [illegible]:
3 Յն. բայց այսոքիկ այսչափ շատ են:
4 Յօր. [illegible]:   5 Յօր [illegible]:
6 Յօր. պակասէ բան քերԹողին զոր լրացուցանեմք 'ի յունէն.
Զարամազդ՝ որ ածն 'ի գոյ, և որ զենաւ տընկեաց ըզբոյսս,
Ոչ են քեզ կամք նըւագել. Զի ուր երկիւղ, անդ պատկառանք:
Այլ ես հակառակիմ քերԹողիս այսմիկ. ասացից քեզ՝ յո՞ ուրեք:
ԵւԹիփռոն. Ամենևին իսկ: Սոկր. Ոչ Թուի ինձ այդպէս գոլ,
Զի ուր երկիւղ՝ անդ և պատկառանք: Քանզի բազումք Թուին ինձ
և 'ի հիւանդուԹեանց....   7 Յօր. [illegible]:

Սոկր. Այլ զի պատկառանս անդամնօր [1] և երկիւղ գոյ, քանզի է և պատկառելով ինչ յիրէ և ամաչելով՝ ոչ երկուցեալ իսկ է և զարհուրեալ 'ի չարութեան կարծեաց։

Եւթ. Սակայն երկուցեալ իսկ է։

Սոկր. Ոչ ունի ուղղապէս ասելն, զի երկիւղ իցէ անդամնօր ուր և պատկառանս, այլ ուր պատկառանս անդամնօր և երկիւղ [2]։ Սակայն ոչ ուր երկիւղ՝ ամենայն ուրեք և պատկառանս [3]. քանզի յաճախագոյն թուի ինձ երկիւղ պատկառանաց [4]. զի մասն է պատկառանն՝ երկիւղի, որպէս և թուոյ՝ կոճատն. իբրու ոչ զի թիւ իսկ է՝ անդամնօր և կոճատն, այլ զի զի կոճատն անդամնօր ուր և թիւ [5]. հետևեիս իսկ ինձ այժմիկ։

Եւթ. Ամենևին իսկ։

Սոկր. Զայսպիսի ինչ այժմիկ հարցանէի ուրեմն. զի [6] արդար իցէ՝ անդամնօր և սուրբ, և կամ զի սուրբ իսկ՝ ուր և արդար, և զի արդարն՝ ոչ ամենայնի սուրբ, զի մասն է արդարոյն՝ սուրբն, այսպէս ասեմք, եթէ այլաբա՞ր քեզ թուի։

Եւթ. Ո՛չ, այլ այդպէս։ Քանզի երևի ինձ ուղղապէս ասացեալ։

Սոկր. Տես արդ զոր ինչ յետ այսորիկ. քանզի եթէ մասն է սուրբն արդարոյն, պարտ է մեզ՝ իբրու թուի՝ գտանել թէ որպիսի մասն իցէ թերևս արդարոյն՝ սուրբն։ Արդ՝ եթէ դու զիս հարցանէիր ինչ այժմիկ ասացելոցն, իբրու թէ՝ որպիսի մասն է դարն՝ թուոյ, և զի՞նչ գոլով հանդիպի յայսպիսի թիւս, ասէի թերևս թէ որ ոչ սանդղատեսակ իցէ, այլ հաւասարասրուն [7]. և եթէ ո՞չ թուի և քեզ այսպէս։

Եւթ. Ինձ իսկ։

Սոկր. Փութա արդ և դու զիս այսպէս ուսուցա-

1 Յոր. անդամնոր։

2 Յոր. այլ 'ի պատկառանս իսկ անդամնոր ուր երկիւղ։

3 Յոր. յամենայն 'ի պատկառանս։ Զայլադիրսն նորոգ եդաք 'ի յաւնէն, քանզի յօրինակին պակասէր։

4 Այս է. մեծ համարիմ զերկիւղ քան զպատկառանս։

5 Յն. իբրու ոչ՝ ուր թիւ է՝ անդամնօր և կոճատ, այլ ուր կոճատ՝ անդամնօր և թիւ։

6 Այս է. ուր արդար իցէ, ըստ յն. ոճոյ։

7 Յոր. հաւասարայարան։

Digitized by Google

նել՝ թէ որպիսի՛ մասն արդարոյն սուրբն է, զի և ցՄելիտոս ասասցուք ոչ ևս անիրաւել զմեզ, և ոչ ամբարշտութիւն զմեօք գրել. իբրու բաւականապէս արդ առ 'ի քէն ուսեալք՝ զոր ինչ բարեպաշտ են և սուրբ, և զոր ինչ ոչ:

Եւթ. Այս ինձ այժմիկ ինձ իսկ թուի, ով Սոկրատէս, մասն արդարոյն գոլ զոր ինչ բարեպաշտ է և սուրբ, որ առ աստուածոցն է հաճութիւն. և որ ինչ առ 'ի մարդկանէ՝[1] զմիւսն գոլ մասն արդարոյն:

Սոկր. Եւ բարւոք իսկ ինձ թուիս ասելով, Եւթիփրոն, այլ փոքումն ուրեմն ևս կարօտացեալ եմ, քանզի զհաճութիւն ոչ ևս խորհիմ թէ զո՛ ոք անուանես. քանզի ոչ ուրուք ասես թէ որպիսի՛ իսկ են, և առ այլսն հաճութիւնք. և եթէ այսպիսի է, և այն՝ որ առ աստուածսն է[2]. քանզի ասեմք երբէք, իբրու ասեմք, զձիս ոչ ամենայն ոք գիտէ[3] հաճեցուցանել, բայց յայնմանէ՝ որ մակացուն է ձիոց. Չհամարի՞տ է:

Եւթ. Ամենևին իսկ:

Սոկր. Ապա ուրեմն մակացողութիւնն ձիոց՝ ձիոյն հաճութիւնն է[4]:

Եւթ. Այո՛:

Սոկր. Եւ ոչ զշունս ոք գիտէ հաճեցուցանել, այլ ամենայն որսորդն:

Եւթ. Այդպէս:

Սոկր. Ապա և որսորդութիւն՝ շանց հաճութիւն է:

Եւթ. Այո՛:

Սոկր. Եւ մշակութիւնն՝ է եզանց:

Եւթ. Ամենևին իսկ:

Սոկր. Արդ և զսրբութիւնն և զբարեպաշտութիւնն՝ աստուածոցն, Եւթիփրոն. ա՞յսպէս ասես:

Եւթ. Ես իսկ:

Սոկր. Ապա ուրեմն հաճութիւն իսկ ամենայն՝

1 Յօր. և ոչ առ ինչ մարդկանէ:

2 Յն. այլ փոքու ինչք կարօտացեալ եմ, քանզի պաշտօն՝ ոչ գիտեմ զո՞ր ինչ կոչես. քանզի չասես իսկ եթէ արդեւք որ ինչ պաշտօն առ այլ իրս իցեն, նո՞յնք և առ դիսն իցեն:

3 Յօր. զձիս ամենայն ոչ գիտէ...

4 Հաճութիւն, խնամք հաճեցելոյ. դնէ աստ միշտ իբր պաշտօն, դարքման:

զնոյնն գործէ, իբրու այսպիսիս ինչ, առ բարութեան և օգտակարութեան հաճեցելոյն. որպէս տեսանես արդ, իբրու ձիքն 'ի ձեռն ձիաւորութեանն հաճեցեալք՝ վեհագոյնք լինիցին. ա՞յսպէս քեզ թուի:

Եւթ. Ինձ իսկ:

Սոկր. Եւ շունքն իսկ երբէք 'ի ձեռն որսորդութեան, և եզինքն 'ի ձեռն մշակութեանն, և այլքն ամենայն այսպէս. եթէ առ վնա՞ս ինչ կարծես [1] հաճեցելոյն գոլ զհաճութիւնն:

Եւթ. Երդնլով յԱրամազդ, ես ոչ իսկ:

Սոկր. Այլ վասն օգտակարութեա՞ն:

Եւթ. Եւ ո՞րպէս ոչ:

Սոկր. Արդ ճշմարտապէս և սրբութիւն հաճութիւն [2] գոլով յաստուածոցն՝ օգուտք է իսկ աստուածոցն, և լաւագոյնս զաստուածսն առնէ, և դու զայս ինչ ներիցես թերևս. իբրու քանզի յորժամ սուրբ ինչ գո՛րծես՝ լաւագոյն զոմն յաստուածոցն գործիցես:

Եւթ. Երդնլով 'ի Զևս, ես ոչ իսկ:

Սոկր. Ոչ և ոչ ես, ո՛վ Եւթիփռոն, կարծեմ զայս ինչ քեզ ասել. քանզի բազում ուրուք [3] կարօտանայ. այլ 'ի սակս այսորիկ վերստին հարցանէի, թէ զի՞նչ երբէք ասես զաստուածոցն հաճութիւն՝ ոչ վարկանելով զքեզ այսպիսի ինչ ասել:

Եւթ. Եւ ուղղապէս իսկ, ո՛վ Սոկրատէս. քանզի ոչ այսպէս ասեմ:

Սոկր. Իցէ. այլ զի՞նչ արդ, աստուածոցն հաճոյութիւն իցէ թերևս սրբութիւն:

Եւթ. Ո՛վ Սոկրատէս, որպէս ծառայքն զտէրն հաճեցուցանեն:

Սոկր. Իմանամ, զի պաշտօն ինչ թերևս, իբրու թուի, իցէ [4] աստուածոցն:

Եւթ. Ամենևին իսկ:

ԺԶ. Սոկր. Ունիցիս. արդեւք ասել. բժշկացն պաշտօնն զի՞նչ գործոյ գործակից հանդիպիցի գոլով պաշտօնական, ո՞չ կարծես զի յառողջութեան:

Եւթ. Ես իսկ:

1 Յոր. գործիս:  2 Յոր. և սրբութիւն և հաճութիւն գոլով:
3 Այս է. բազում ինչ կարօտանայ:  4 Յոր. Թուիցէ:

Սոկր. Եւ զի՞նչ. նաւակառուցացն պաշտօնն զի՞նչ գործոյ գործակից պաշտօնական իցէ։

Եւթ. Յայտ է, ո՛վ Սոկրատէս, թէ ՚ի նաւու ոք։

Սոկր. Եւ շինողացն իսկ ծուր յայտ է, ՚ի տա՞ն։

Եւթ. Այո՛։

Սոկր. Ասա՛ արդ, ո՛վ արիագոյն. և աստուածոցն պաշտօնական զի՞նչ գործ ՚ի բաց գործէ [1] պաշտօնական գոլով. զի յայտ է թէ դու գիտես. քանզի աստուածային իրս քան զմարդիկ գեղեցկագոյն գիտել ասես։

Եւթ. Եւ ճշմարտապէս իսկ ասեմ, ո՛վ Սոկրատէս։

Սոկր. Ասա արդ վասն Արամազդայ, թէ զի՞նչ է այն ամենագեղեցիկ գործն՝ զոր աստուածքն ՚ի բաց գործեն, մեւք պաշտօնէիւք վարելով։

Եւթ. Զբազումս և զգեղեցիկս, ո՛վ Սոկրատէս։

Սոկր. Այլ սակայն զգլուխն սոցունց թերևս ասասցես դիւրապէս. զի և զօրավարքն, ո՛վ սիրելի, զյաղթութիւնն ՚ի պատերազմի ՚ի բաց գործեն՝ եթէ ո՞չ։

Եւթ. Ո՞րպէս ոչ։

Սոկր. Եւ բազում իսկ թուի ինձ. զի բարիս և մշակք, այլ սակայն գլուխն սոցունց գործոյն, առ ՚ի յերկրէ կերակուրն։

Եւթ. Ամենևին իսկ։

Սոկր. Եւ զի՞նչ արդ, ՚ի բազմացն և գեղեցկագունիցն այնոցիկ, որ աստուածքն գործեն, զի՞նչ է գլուխն ՚ի բաց գործելոյն։

Եւթ. Ես սակաւ ինչ յառաջագոյն ասացի քեզ, ո՛վ Սոկրատէս, եթէ գործ ինչ քեզ պարզաբար ասեմ. զի եթէ շնորհելով գիտասցէ ոք՝ յաստուածոցն ասել իսկ և գործել ըղձալով իսկ և զոհելով, այսոքիկ [2] են սուրբք և աստուածայինք, և կեցուցանեն այսպիսիքս [3] զառանձին տունս և զհասարակացն. և ներհակն շնորհելոյ՝ ամբարիշտք են, որ և դարձուցանէ զամենայն տունս և կորուսանէ։

1 Ի բաց գործէ կամ բացագործէ է նիւթական թրգմ. յունին, որ է լոկ՝ գործել։

2 Յօր. զայսոսիկ։

3 Յօր. զայսպիսիքս։

ԺԷ. Սոկր. Ճշմարտապէս յոյժ՝ ինձ 'ի ձեռն սղագունից, ով Եւթիփռոն, եթէ կամէիր՝ ասէիր թերևս զգլուխն վասն որոյ հարցանէի [1], այլ ոչ յօժարագոյն ես՝ իբրու յայտ է ինձ՝ ուսուցանել զիս. և զի այժմիկ քանզի առ այս ինչ հասար՝ 'ի բաց դարձար, զոր եթէ տուեալ էիր ինձ պատասխանի՝ բաւականապէս թերևս առ 'ի քէն զսրբութիւնն ուսեալ էի. բայց այժմիկ, — հարկ է հարցողին հետևիլ հարցելոյն՝ ուր և նա գնասցէ, — զի՞նչ արդ իսկ ասես գոլ զսուրբն և զսրբութիւնն, ո՞չ մակացութիւն ինչ զոհելոյն իսկ և ըղձալոյն:

Եւթ. Ես իսկ:

Սոկր. Ապա ուրեմն զոհելն՝ պարգևս է աստուածոցն, և ըղձալն՝ հայցելն է առ 'ի յաստուածոցն:

Եւթ. Եւ մանաւանդ, ով Սոկրատէս, արդարագոյն:

Սոկր. Մակացութիւն արդեւք հայցուածոյ և տրոց աստուածոցն սրբութիւնն թերևս իցէ յայսմիկ բանէս:

Եւթ. Ամենևին բարեւք խորհեցար առ որ ինչ ասացի:

Սոկր. Զի ցանկացօղ եմ, ով սիրելի, իմաստութեանդ, և մտօքս նայիմ առ սա. իբրու ոչ 'ի ստորին գլորեսցի՝ զոր ինչ և ասիցես. այլ ասա ինձ, զի՞նչ է այդ իսկ պաշտօնդ աստուածոցն, զհայցե՞լն [2] ասես 'ի սոցանէ և զտալն սոցունց:

Եւթ. Ես իսկ:

ԺԸ. Սոկր. Ո՛չ արդեւք ուղղապէս հայցելն թերևս իցէ՝ որոց կարօտանամք առ 'ի սոցունց, զայսոքիկ 'ի սոցանէ հայցել:

Եւթ. Եւ զի՞նչ:

Սոկր. Եւ տալն իսկ ուղղապէս՝ որոց նոքա հանդիպին աղաչեցեալք առ 'ի մէնջ, զայդոքիկ նոցունց իսկ տալ փոխարէն. քանզի ոչ երբէք արհեստական իցէ ընծայելն՝ տալով ուրուք զայնոքիկ որոց ոչ կարօտանայ:

Եւթ. Ճշմարտապէս ասես, ով Սոկրատէս:

Սոկր. Վաճառական արհեստ ինչ իցէ, ո՛վ Եւթի-

1 Յօր. հարցանէ:

2 Յօր. զհայցելն:

փառն, սրբութիւն աստուածոց և մարդկան առ միմեանց։

Եւթ. Վաճառական արհեստ՝ եթէ այդպէս հեշտ է քեզ անուանել։

Սոկր. Այլ ոչ ինչ ինձ հեշտ է. իսկ եթէ ոչ համադիպի ճշմարիտ գոլ, ասա ինձ ո՛ր օգուտ աստուածոցն հանդիպի գոլ 'ի պարգևացն յայնցանէ՝ զորս առ 'ի մէնջ առնուն. զի զոր տանն ամենեցուն յայտ է, զի ոչ ինչ է բարի զոր ոչ նոքա տան մեզ, և զոր ինչ 'ի մէնջ առնուն զի՞նչ օգուտ իցէ. թէ այսչափ զօրքօք[1] յաղթահարեմք զվաճառականութեամն, իբրու և զամենայն բարութիւն առ 'ի նոցունց առնումք, և նոքա առ 'ի մէնջ ոչինչ։

Եւթ. Այլ կարծես, ով Սոկրատէս, զաստուածսն շահե՞լ առ 'ի մէնջ այնոքիւք[2] որ 'ի մէնջ ընդունին։

Սոկր. Եւ զի՞նչ երբէք իցէ այսոքիկ, ով Եւթիփրոն, առ 'ի մէնջ պարգևս աստուածոց։

Եւթ. Եւ զի՞նչ կարծես, այլ քան եթէ՝ զպատիւ և զշնորհս, որպէս այժմիկ ասէի։

Սոկր. Ապա ուրեմն շնորհիչք[3] է աստուածոցն սուրբն, ով Եւթիփրոն, և ոչ օգտակար և ոչ սիրելի աստուածոցն։

Եւթ. Եւ յաւէտ իսկ։

ԺԹ. Սոկր. Աքանչելի արդ թուիս զայսոքիկ ասելով, եթէ բանքս քեզ երևեսցին ոչ մնացեալք՝ այլ գնացեալք, և պատճառիցես զիս զԴեդալոս առնել զոտս[4] գնացողս, դու գոլով յոյժ իսկ արհեստականագոյն քան զԴեդալոս, շրջանակի պարագայութիւն տալով սոցա։ Եթէ ո՞չ զգաս, զի բանս մեզ պարագայելով՝ դարձեալ 'ի նոյնս հասանի. քանզի յիշեմ ուրուք[5] զի յառաջագոյնն՝ սուրբն իսկ և աստուածասէրն ոչ նոյն մեզ երևեցաւ, այլ այլք 'ի միմեանց, եթէ ո՞չ յիշես։

Եւթ. Ես իսկ։

Սոկր. Այժմիկ արդ ո՞չ իմանաս զի զաստուածոցն

1 Յոր. զօրք։
2 Յոր. այնոքիկ։
3 Շնորհիւք, հաճոյականք, շնորհալիք։
4 Յոր. զոտոյ։
5 Այս է. ուրեք։

Digitized by Google

սիրելին ասես սուրբ գոլ, և այս ինչ այլ զի՞նչ՝ քան ե-թէ աստուածասէր լինիցի. այսպէս՝ եթէ ո՞չ:

Եւթ. Ամենևին իսկ:

Սոկր. Ո՞չ ապաքէն կամ այժմիկ ո՛չ բարւոք խոստովանիմք, և կամ եթէ յայնժամ բարւոք, այժմիկ ոչ ուղղապէս առնեմք:

Եւթ. Թուի իսկ:

Սոկր. Իսկզբանէ [1] արդ մեզ դարձեալ խնդրելի է՝ թէ զի՞նչ է սուրբն. քանզի ես նախ քան զուսանելն կամաւ գոլ ո՛չ զանգիտեցից, այլ մի՛ զիս անարգիցես, այլ ամենայն եղանակաւ նայելով միտք՝ իբրու յաւե-տագոյն ասա զճշմարիտն. քանզի գիտես քան եթէ այլ ոք 'ի մարդկանէ, և ոչ ևս թողացուցանելի, որ-պէս Պռոտեւսն նախ քան եթէ ասիցես. քանզի եթէ ոչ գիտիցես հաւաստի զսուրբն իսկ և զանսուրբն, ոչ երբէք ձեռն արկեալ յաղագս առն ումեմն վարձաւորի զայր ծերունի և զհայր հալածել 'ի սակս սպանմանն, այլ և յաստուածոցն արդ տագնապելով՝ գուցէ ոչ ուղղա-պէս զայս ինչ արասցես և 'ի մարդկանէ ամաչել. բայց այժմիկ քաջ գիտեմ, զի հաւաստի [2] կարծիս գիտել զսուրբն և զոչն. ասա՛ արդ, ո՛վ լաւագոյն Եւթիփրոն. և մի՛ ծածկեսցես զոր ինչ վարկանիս զսա:

Եւթ. Այլ յայլում ժամու, քանզի այժմիկ փութամ և ժամն յինէն հեռանայ:

Սոկր. Ո՞րպէս առնես, ո՛վ ընկեր, մեծի յուսոյ արկեալ զիս գնաս. զոր ունէի իբրու առ 'ի քէն ու-սեալ զսուրբն և զոչն. և գրոյն որ առ Մելիտոս՝ 'ի բաց փոխեցայց, ցուցեալ նմա՝ զի իմաստունս առ աստուա-ծայինն իրս աւասիկ յԵւթիփրոնէ եղէ. և զի ոչ ևս 'ի ձեռն անգիտութեան ընքնագիր լինիցիմ, և ոչ նորա-ձևեմ զայսոսիկ [3]. այլ և զմնացեալ կենցաղն իբրու լաւագոյն կենցաղավարեցայց:

1 Յոր. Եւս քանէ:　　2 Յոր. հաւատքո:
3 Յոր. այսոքիկ:

Digitized by Google

# ՊՂԱՏՈՆԻ

## ՍՈԿՐԱՏԱՅ ՊԱՏԱՍԽԱՆԻ

---

Զոր ինչ դուք իսկ, ով արք Աթենացիք, ախտա֊ ցայք 'ի ձեռն իմոյ չարադատողացն՝ ոչ գիտեմ[1]. բայց ես արդ 'ի ձեռն սոցա փոքր ինչ և մոռացայ զանձն իմ. այսպէս հաւանապէս ասէին. և մանաւանդ ճշմարիտ իսկ, իբրու տաղ ասելով[2], ոչ ինչ ասէին, այլ մանա֊ ւանդ 'ի սոցունց բազմաց իրաց՝ յորոց ստեցին զմի[3] ինչ ապշեցայ, զայս ինչ յորում ասէին իբրու պարտ է ձեզ զգուշանալ՝ զի մի յինէն պատրեսջիք, իբրու յասելն երագագոյն իմ գոլով: Քանզի ոչ ամաչեցին՝ զի վաղվաղակի յինէն յանդիմանեսցին գործով, յորժամ իբրու ոչ և միով իւիք երևեսցիմ երագ առ 'ի յասել, զայս ինչ ինձ թուեցաւ սոցունց անամօթագոյն գոլ. եթէ ոչ արդեւք երագ[4] կոչեսցեն սոքա ասել զայն֊ միկ՝ որ զճշմարիտն ասէ: Իսկ զի եթէ զայս ինչ ասեն՝ խոստովանեցայց թերևս և ես իսկ ոչ զսոսա հռետոր գոլ. քանզի սոքա, որպէս ես ասեմ, կամ զմի ինչ կամ ոչ ինչ ճշմարիտ ասացին: Արդ դուք լուարուք իմոյ ա֊ մենայն ճշմարտութեան: Ոչ իսկ, երդնլով յԱրամազդ, ով արք Աթենացիք, գեղեցկապաճոյճ իսկ բանք՝ որ֊ պէս նոցայն՝ են, բայլիւք[5] իսկ և անուանբք, և ոչ զար֊ դարեալք. այլ լուիցէք անպաճոյճ ասացեալք զինչ և հանդիպեսցի անուանբք: Քանզի հաւատամ արդար գոլ՝ զոր ինչ ասեմ, և ոչ մի ոք 'ի ձէնջ ակն կալցի այլ֊ պէս. զի և ոչ երբէք վայել է, ով արք, այսմիկ հա֊

1 Յոյն. գիտէս. չարագոյն և աստ եղեալ է փոխանակ դատախազի:
2 Իբրու թող ասելով. ըստ յն. կամի ասել՝ միով բանիւ, ճանգամայն ասել:
3 Յոյն. ըն մի:
4 Յոյն. որդեակ էի երագ. կոչեցեն զորա ասել:
5 Յոյն. բայց իսկ:

սակի իբրու պատանւոյ ստեղծելով ինչ բանք՝ առ ձեզ մտանել. և սակայն ամենևին, ով արք Աթենացիք, զձեզ պաղատիմ և աղերսեմ եթէ 'ի ձեռն նոյն բանիցս լուիցէք ինձ որ առնեմս պատասխանի, 'ի ձեռն որոյ իսկ սովորեալ եմ ասել 'ի հրապարակի և 'ի սեղանսն, որպէս և 'ի ձէնջ բազումք լուեալ են և այլուր, մի' զարմանալ և մի' զարհուրիլ 'ի սակս այսորիկ, քանզի այսպէս ունի: Արդ ես յառաջ հանդիսարանեալ հասի [1] ամաց աւելի քան զեօթանասուն, անարհեստաբար [2] արդ օտարապէս ունիմ այսմ բանիցս որ անդանօր է. որպէս զի թէ ամենևին օտար հանդիպէի գոլով՝ ճանաչէիք երբէք զիս, թէ այնու ձայնիւ և յեղանակաւն ասէի, որով և սնեալ լինէի: Եւ արդ այժմիկ վասն այսորիկ աղաչեմ զձեզ, — իրաւապէս իբրու ինձ իսկ թուի, — բառիցս եղանակիս թոյլ տալ. (զի թերևս վատթար իսկ և կամ լաւագոյն իցէ արդեւք). այլ զայս ինչ զնոյնս դիտել, և զմիտս առ այս ինչ ունել, եթէ իրաւ ասեմ և եթէ ոչ. քանզի դատաւորի իսկ առաքինութիւն՝ այս ինչ, հռետորի՝ ասելն զճշմարիտն:

Բ. Նախ իսկ արդ իրաւ եմ 'ի պատասխանիսն, ով արք Աթենացիք, ըստ առաջին սուտ ջատագովութեանն և առաջին ջատագովս, և ապա առ վերջինսն: Քանզի իմ բազում ջատագովք եղեն առ ձեզ, և երբեմն և աւասիկ ևս բազումք [3], բայց ոչ ինչ ճշմարիտ ասելով. յորոց ես մանաւանդ երկնչիմ, քան եթէ յԱնիւտոսեանց, և մանաւանդ և սոցա գոլով չարաչար. բայց նոքա երագագոյնք էին 'ի չարն, ով Աթենացիք, որք 'ի ձէնջ զբազումս 'ի մանկութենէ ընկալեալք՝ հաւանեցուցանէին իսկ, և զիս ջատագովէին մանաւանդ ոչ ինչ ճշմարիտ: Իբրու և Սոկրատէս՝ այր ոմն իմաստուն, բարձրագունիցն իսկ քննող, և այնոցիկ որ ներքոյ երկրի ամենայնի խնդրող, և նուազ բանին՝ վեհագոյն արարող: Սոքա, ով արք Աթենացիք, զհամբաւս զայս զինէն արծարծեալ են իմ երագագոյնք

1 Յոր. հասու:
3 Անարհեստաբար. արդարև, յիրաւի:
2 Ցն. երբեմն և ամս բազումս:

Digitized by Google

ստորոգողքն [1]. քանզի որք լսեմն՝ վարկանեն զայնոսիկ որք խնդրեմն զայնոքիկ, ո՛չ աստուածք կարծել. և ապա են այսոքիկ ստորոգողք բազում ժամանակաւ իսկ ստորոգեալք. և տակաւին առ այսուիկ հաստակաւս ասելով ցձեզ, յորում և մանաւանդ հաւատացիք մանկունք գոլով ոմանք 'ի ձէնջ և պատանիք՝ անարհեստաբար միայն ջատագովելով. պատասխանի տալով ոչ ուրուք: Եւ որ ամենեցուն [2] անբանագոյն է՝ զոր ոչ և զանուանքն իւրեանց թէ որպիսի են՝ գիտեն ասել, սակայն եթէ ոչ՝ ոք [3] քերթող կատակերգութեան հանդիպելով: Բայց որչափ [4] մախանօք և դաւաճանութեամբ վարելով՝ մերստին հաւանեցուցանէին զձեզ, և ոմանք՝ ինքեանք հաւանեալք էին, և զայլս հաւանեցուցանէին, սոքա ամենեցուն դժնդակք են. քանզի՝ ոչ ելուցանել զոր'դ իցէ [5] 'ի սոցանէ աստանօր և ոչ յանդիմանել ոչ և մի ոք, այլ արդարև հարկ է որպէս ստուերամարտ լինել ընդ ջատագովելոյն և յանդիմանել, ոչ ուրուք պատասխանի տալով: Արժանացուցէք արդ և դուք, որպէս ես ասեմ, կրկին դատախազս ինձ լեալք. զմին՝ [6] այժմ ստորոգողս, այլք՝ որ երբեմն — ստորոգեցին՝ և զմիւսք զայնոսիկ զոր ես ասեմ. և կարծիցէք պարտ գոլ առ նոսա նախ առնել պատասխանի, քանզի և դուք նոցուն նախ լուայրուք ստորոգելով, և յոյժ մանաւանդ՝ քան եթէ այսոցիկ վերջնոցս: Իցէ. պատասխանիդ արդ տալ պարտ է, ով արք Աթենացիք, և ձեռնարկելի է 'ի բաց խլել զդաւաճանութիւնդ ձեր, զոր դուք բազում ժամանակաւ ունիք, զայնպիսի և սակաւ ժամանակաւ [7]: Արդ կամիմ իսկ զի այս ինչ այսպէս լինիցի, եթէ լաւագոյն է ձեզ և ինձ, և առաւել ինչ առնել ինձ՝ տալով պատասխանի. բայց կարծեմ զայս ինչ

1 Այս է. հզօր դատախազքն իմ:
2 Յօր. փոխ. ոչ ուր և զինչ ամենեցուն:
3 Այս ինքն՝ բայց եթէ ոք քերթող..: Ակնարկէ յԱրիստոփանէս:
4 Այս է. բայց որք մախանօք...
5 Յն. քանզի յատեան ելանել ոչ է հնար աստանօր և ոչ միում 'ի սոցանէ, և ոչ...
6 Յօր. զի ժ:
7 Յն. զայն՝ յայսպիսի սակաւ ժամանակի.

դժուարին գոլ, և ո՛չ ամենևին զանխլի յինէն՝ թէ որպիսի է. սակայն այս իսկ ինչ գնասցէ՝ ուր և յաստուծոյ սիրելի է, բայց յօրինացս հաւանել պարտ է և տալ պատասխանի։

Գ. Վերստին արդ առցուք խնդրանս, թէ զի՞նչ է ստորոգութիւն[1] յորմէ իմն եղև դաւաճանութիւն, որոյ և հաւատալով Մելիտոս՝ գրեաց զինէն զգիրդ զայդ։ Իցէ. արդ զի՞նչ ասելով դաւաճանեսցեն զիս՝ որք դաւաճանողք իմ էին։

Արդ՝ որպէս ստորոգողացն զգիր երդման սոցունց վերծանել պարտ է. ՍՈԿՐԱՏԷՍ ԱՆԻՐԱՒԷ ԵՒ ԶԱՐԻՍ ԳՈՐԾԷ ԽՆԴՐԵԼՈՎ ԶԱՅՆ ԻՍԿ ՈՐ ԸՆԴ ԵՐԿՐԱՒ ԵՆ ԵՒ ԶԵՐԿՆԱՅԻՆՍ, ԵՒ ԶՆՈՒԱԶ ԲԱՆՆ ՎԵՀԱԳՈՅՆ ԱՌՆԵԼՈՎ, ԵՒ ԶԱՅԼՍ՝ ԶՆՈՅՆՍ ԶԱՅՍՈՍԻԿ ՈՒՍՈՒՑԱՆԵԼՈՎ։ Այսպիսի ինչ է. քանզի զայսոսիկ տեսեալ էք և դուք յԱրիստոփանոսի կատակերգութեանն, զՍոկրատէս ոմն անդ շրջաբերելով, և ասելով իսկ՝ զօդս կոխել, և զայլ ինչ շաղփաղփութիւն լեզուագարելով, յաղագս որոց ես ոչ ինչ ոչ մեծ և ոչ փոքր ասացեալ եմ։ Եւ ոչ իբրու անարգելով զայսպիսի մակացութիւնս ասեմ զայս ինչ՝ եթէ ոք յաղագս այնպիսեացն իմաստուն իցէ, զի ոչ ես տակաւին 'ի ձեռն Մելիտեի այսչափ հանդիսօք փախչիմ[2]. այլ զի ինձ 'ի սոցունց, ո՛վ արք Աթենացիք, ոչ ինչ նիւթ գոյ. և վկայս առաւել 'ի ձէնջ զբազումս, և աղաչեմ զձեզ՝ զմիմեանս ուսուցանել իսկ և ասել և որչափ երբէք լուայք յինէն տրամաբանելով։ Եւ բազում 'ի ձէնջ են այդպիսիքդ. ասացէք արդ միմեանց՝ եթէ երբէք և փոքր ինչ և կամ մեծ լուաւ ոք 'ի ձէնջ՝ իմ յաղագս այսոցիկ տրամաբանելով, և յայսցանէ ծանուցուք՝ զի այսպիսիք են և յայլս յաղագս իմ, զորս ասեմս բազումս [3]։

Այլ քանզի և ոչ յայսցանէ ոչինչ է, և ոչ իսկ եթէ յումեքէ լուայք՝ իբրու ես խրատել զմարդիկ ձեռնարկեմ, և ինչս պահանջեմ, և ոչ այս ինչ է ճըշ-

1 Ամբաստանութիւնն։
2 Այս է. 'ի ձեռն Մելիտեայ յայսչափ դատաստանս մտանէի։
3 Յն. զի այսպիսիք են և այլքն յաղագս իմ, զորս ասեն բազումք։

Digitized by Google

մարիտ․ քանզի և այս իսկ ինձ թուի բարի գոլ՝ եթէ ոք ոպլիսի և իցէ խրատէ զմարդիկ [1], որպէս Գորգիաս իսկ լեոնդինաս [2], և Պրոդիկոս կիացին, և Իպպիաս ելիացին․ քանզի 'ի սոցունց իւրաքանչիւր ոք, ով արք, որպիսի իսկ և է՝ համանելով առ իւրաքանչիւրսն 'ի քաղաքացն, զհամբակսն՝ յորոց և պարտ իցէ յիւրեանց քաղաքակցացն յանկին 'ի միասին գոլ՝ որոց և կամեսցին, սոքա հաւանեցուցանեն՝ զնոցունց զուգաւորութիւնն 'ի բաց թողուլ և ինքեանց հետևիլ, և ինչս տալով և շնորհս խոստանալով։ Քանզի այլ ոմն այր պարիացի աստանօր իմաստուն, զոր ես իմացայ եկեալ․ քանզի հանդիպեցայ առ այր մատուցեալ՝ որ տուեալ է ինչս ճարտասանաց յոլովագոյնս, քան եթէ ամենեքեան 'ի միասին այլքն, Կալիայի Իպպաւնիկոսի որդւոյն․ զսա արդ հարցանէի, — զի էին սորա երկու որդի —․ և ասացի ես, ով Կալիա, եթէ որդւոց քոց յաւանակ և երինջք հանդիպեալ էր՝ [3] ունէաք թերևս նոցա [4] մակացողս ընկալուլ և վարձել, զոր և հանդերձեալ էր սոցունց ազնիւ իսկ և բարի առնել առ պատշաճաւոր առաքինութիւնն․ և էր [5] այնպիսին կամ 'ի յերկրավարականացն ոք կամ 'ի մշակացն․ բայց այժմիկ քանզի մարդիկ գոլով զո՞ ոք սոցա [6] 'ի մտի քո ունիս առնուլ մակացող, ո՞ ոք այդպիսի առաքինութեանդ՝ մարդկայնոյդ իսկ և քաղաքականիդ՝ մակացող է․ քանզի կարծեմ իբրու խնդիր է քո արարեալ վասն ուստերացն ստացմանն․ է՞ ոք, ասացի ես, եթէ ոչ։ Ամենևին իսկ, նա այսպէս ասաց։ Ո՞ ոք, ես ասացի, և որպիսի՛ ոք և առ որչափ ուսուցանէ [7]։ Եւինոս, ասէ, ով Սոկրատէս, պարիացի՝ հնկից մնասից․ և ես զԵւինոս երանեցի՝ եթէ իբրու ճշմարտապէս ունիցի զարհեստս զայս, և այս ներդաշնակապէս ուսուցանէ, և ես արդ ինքեամբ գեղեցկանայի իսկ և

1 Ըստ յն․ եթէ ոք կարող իցէ խրատել զմարդիկ։
2 Յօր․ որպէս Գորգիաս իսկ և Լեոնտինոս։
3 Յօր․ եթէ որդւոց քո Պօղոսի և Մօսքոսի հանդիպեալ էր ունէաք․ (զայսն յաւանակ և երինջ բառսն իբրև անուն համարի որդւոց)։
4 Յօր․ զնոսա։ 5 Յօր․ և ասէ այնպիսին։
6 Յօր․ 'ի սոցանէ։
7 Յօր․ որչափ ուսուցանէ . . . և Էնոս։

Digitized by Google

պանծանայի Թերևս՝ եթէ զայսոսիկ գիտէի. այլ զի ոչ գիտեմ, ով արք Աթենացիք, զմտաւ արդ 'ի ձէնջ Թերևս ածէ ոմն. Հարցանիցէ զիս արդ 'ի ձէնջ ոք Թերևս ասելով. այլ, ով Սոկրատէս [1], քոյդ զինչ էր. ուստի՞ եղեն քեզ դաւաճանութիւնդ այդ. ոչինչ երբէք քան զայլս աւելի իրողութիւն գործելով, ընդէ՞ր իսկ այսպիսի համբաւ և բան եղև, և եթէ ոչ ինչ գործէիր այլ այսպիսի քան եթէ այլք: Ասա արդ մեզ զինչ է. զի մեք ոչ յաղագս քո լիցուք ընքնագիրք: Զայս՝ ինձ որ ասեն յիրաւի Թուեսցի ասացեալն, և ես ձեզ փութացայց 'ի բաց ցուցանել, Թէ զինչ երբէք է այս ինչ՝ որ արար ինձ զանունս և զդաւաճանութիւնս, լուարուք. և Թերևս Թուեսցայց ևս ոմանց [2] 'ի ձէնջ խաղալ խառնել [3]. սակայն քաջ գիտացիք, զի զամենայն Ճշմարտութիւնն ասացից: Ես, ով արք Աթենացիք, վասն այլոյ ոչ իրիք՝ բայց վասն իմաստութէ ումեմն զանունս զայս ընկալայ. և որպիսի՞ իմաստութեան, վասն այսմիկ՝ որ է մարդկայինն իմաստութիւն. քանզի յայսմիկ արդարև կարծիմ գոլ իմաստուն: Այնոքիկ արդեւք, վասն որոց այժմ ասեմ [4], զմարդկայինն իմաստութիւն իմաստունք իցեն, ոչ ունիմ ասել ինչ յաղագս սոցա. զի ես իսկ ոչ գիտեմ զայդ, այլ որպէս ասէ՝ ստիցէ իսկ, և ըստ իմոյ դաւաճանութե ասէ զայն ինչ: Արդ զիս, ով Աթենացիք, մի՛ զարհուրեցուցանէք՝ եթէ Թուիցիմ ձեզ զինչ ասել մեծագոյն. զի զոր ինչ ասեմ՝ ոչ զիմ իսկ ասեմ զբան, այլ առ ոմն արժանապատ [5] վերաբերեմ ձեզ զբանս. քանզի իմոյս՝ եթէ իցէ ինչ՝ իմաստութեան վկայ առտուիցեմ ձեզ զաստուածն՝ որ 'ի Դեղփիս է. քանզի զՔերեփոն գիտէք ուրեք [6]. սա իմ իսկ ընկեր 'ի համբակութեան և ձեզ բազմաց իսկ ընկեր, և փախեաւ զփախուստ զայս և հանդերձ ձեօք [7] 'ի վայր իջաւ. և գիտէք իսկ Թէ որպիսի՛ էր Քերեփոն ուժգին՝ առ որ ինչ ընԹանայր [8]. և արդ՝ 'ի Դելփիս եկեալ յանդգնե-

1 Յոր. այլ ով Սոկրատէս ... զինչ էիր:
2 Յոր. և ոմանց:
3 Թուի՝ խաղ առնել:
4 Յոր. ասէ:
5 Յոր. արժանապատ:
6 Յոր. ուրեմն:
7 Յոր. հանդերձն ... Քերեփոն:
8 Յոր. յուժգին առ ոչ ինչ ընԹանայր:

ցաւ զայս ինչ դիւթել։ Եւ որպէս ասացի՝ մի՛ զարհուրիք, ո՛վ արք. քանզի հարցանէր իսկ թէ ո՛վ է քան զիս իմաստնագոյն. նշանակեաց իսկ Պիւթիա՝ ոչ և զմի ոք իմաստնագոյն գոլ. և յաղագս այսոցիկ եղբայրն նորա՝ այս ոմն՝ վկայեսցէ ձեզ, քանզի նա վախճանեալ է։

Է. Նայեցարուք արդ 'ի սակս որոյ ասեմք զայսոքիկ, զի հանդերձեալ եմ ուսուցանել զձեզ՝ ուստի եղև ինձ դաւաճանութիւն. քանզի զայս ոք ես լուեալ՝ զմտաւ ածէի այսպէս թէ զի՞նչ երբէք ասէ աստուած և զի՞նչ երբէք նշանակէ. զի ես արդ ոչ մեծ և ոչ փոքր ինչ գիտեմ առ անձն իմ գոլ իմաստութիւն. զի՞նչ արդ երբէք ասէ՝ ասելով զիմաստուն գոլս, քանզի սուտ երբէք ոչ իցէ, զի ոչ սմա վայել է. և բազում իսկ ժամանակ տարակուսեալ էի՝ թէ զի՞նչ երբէք ասէ. ապա հազիւ ամենևին 'ի խնդիր այսորիկ դառնայի [1] այսպիսի ինչ. չոգայ առ ոմն 'ի թուեցելոցն իմաստուն գոլ, իբրու աստանօր իսկ՝ քան եթէ այլ ուրեք՝ [2] յանդիմանելով զդիւթարանն, և բացերևեցուցանելով տեսլեանն, զի այս ոմն իցէ քան զիս իմաստնագոյն։ Եւ դու զիս գիտացիր. դիտելով արդ յաղագս այսորիկ, — քանզի անուամբ ոչ ինչ կարօտանամ ասել, բայց էր ոմն 'ի քաղաքականացս, առ որոյ ես դիտելով՝ այսպիսի ինչ կրեցի, ո՛վ արք Աթենացիք —, և տրամաբանելով ընդ սմա՝ թուեցաւ ինձ այրս այսպիսի թուեցեալ իսկ գոլ իմաստուն այլոց բազմաց 'ի մարդկանէ և մանաւանդ անձին իւրում, գոլով ոչ [3]. աստուստ արդ սմա թշնամի եղէ և բազմաց որ մերձ պատահեցան։ Առ անձն իմ արդ գնացեալ խորհէի թէ առնս այսմիկ ես [4] իմաստնագոյն եմ. քանզի տագնապի 'ի մէնջ [5] ոչ ոք ոչ և մի ազնիւ կամ բարի գիտել, այլ սա իսկ կարծէ գիտել՝ ոչ գիտելով. բայց ես որպէս արդ ոչ գիտեմ և ոչ կարծեմ գիտել [6]։ Աս-

1 Յօր. դառնա 'ի այսպիսի։ 2 Յօր. ուրեօք։

3 Յն. մանաւանդ անձին իւրում, ոչ գոլով իմաստուն. և ապա ջանացայ ցուցանել նմա, եթէ կարծի գոլ իմաստուն, այլ ոչ է. աստուստ արդ....։ 4 Այս է. քան զայրս զայս։

5 Այս է. կարծի 'ի մէնջ և ոչ ոք. յօր. 'ի մէջ։

6 Յոյնն յաւելու՝ կարծեմ արդ քան զնա գոլ իմաստնագոյն, զի զոր ոչն գիտեմ՝ և ոչ համարիմ գիտել։ Աստուստ...

Digitized by Google

տուսա առ այլ ումն գնացի յայնցանէ որ քան զնա թուեցեալ էին իմաստնագոյն գոլ. և ինձ նոյնս այսուքիկ թուեցաւ. և աստանօր և սմա և այլոց [1] բազմաց լինէի թշնամի։

Է. Արդ յետ այսորիկ աւասիկ ըստ կարգի գնացի՝ զգալով իսկ և տրտմելով, և երկնչելով զի՛ի բաց երևէի խստագոյն։ Բայց սակայն հարկաւոր գոլ ինձ թուէր՝ աստուծոյ իրին յոյժ փոյթ առնել, հասանել արդ պարտ է՝ դիտելով [2] զտեսիլն թէ զինչ ասէ՝ առ ամենեսեան թուեցեալսն գիտել։ Եւ երդնլով 'ի Շունն, ով արք Աթենացիք, — քանզի պարտ է առ ձեզ ասել զճշմարիտն, — այսպիսի ինչ ախտացայ ես ճշմարտապէս։

Իսկ այնոքիկ որ յաւետագոյն ընտրեալք էին՝ թուեցան ինձ սակաւ ինչ կարօտանալ յոլովին կարօտացեալք գոլ խնդրելով իմ ըստ աստուծոյն. [3] և այլք յոռիք [4] թուեցեալք հեզագոյնք գոլ արք ըստ խոհեմապէս ունելոյն։ Պարտ է ձեզ արդ զիմս մոլորութիւն [5] ցուցանել՝ որպէս զցաւս ոմանս ախտացելոյ, զի ոչ ինձ առ յանձն յանդիմանութիւն լինիցին դիւթութիւն. քանզի յետ քաղաքականացն գնացի առ քերթողսն՝ ողբերգութեանցն իսկ և երկդունն մեծավերջացն, և առ այլսն իբրու աստանօր յայտնապէս հասու լինիցիմ անձին իմոյ՝ սոցունց գոլով անուսումնագոյն։ Վերստին արդ առեալ զսոցունց քերդուածսն զայնոսիկ՝ որ թուէրն ինձ յաւետագոյնն իրաւորութեամբ առ 'ի սոցունց գործեալ, հարցանէի զսոսա թէ զինչ արդեւք ասիցեն, զի համանգամայն ինչ և ուսանիմ առ 'ի սոցանէ։ Ամաչեմ արդ ձեզ ասելով զճըշմարիտն, բայց սակայն ասել պարտ է. զի իբրու տաղ ասէ [6], սակաւ ինչ ամենեքեան որ մերձ էին լաւագոյն Թերևս ասէին յաղագս այնոցիկ՝ որ սոքա քերթեալ էին։

Ծանեա արդ և յաղագս քերթողացն այսուիկ

1 Յօր. և սմա այլոց։ 2 Յօր. Խօսէիր ... գիտելով։

3 Յն. Իսկ այնոքիկ որ ընտիրքն թուեցան ինձ՝ որ խնդրեմն զաստուծոյն՝ փոքր մի ևս և չքաւորէին. և այլ յոռիքն...

4 Յօր. յոռինք։ 5 Յօր. մոլորութիւն։

6 Չէ իբրու թող ասէ. զի այսպէս ասել։

Digitized by Google

սակաւ, զի ոչ իմաստութեամբ քերթէին՝ զոր ինչ քեր-
թեցին, այլ բնութեամբ ոմամբ արտաքոյ զգայու-
թեան [1] լինելով, որպէս դիւթքն և տեսողքն տես-
լեանն, քանզի և սոքա իսկ ասեն զբազումս և զգեղե-
ցիկս. բայց գիտեն ոչ ինչ յայնոցիկ՝ որ ասեն: Այսպիսի
ինչ երևեցան ախտ ինչ և քերթողքն ախտացեալք,
և համանգամայն իմանայի զնոսա վասն քերթուածոյն
կարծեցեալք և այլ իրս իմաստնագոյն գոլ մարդկան՝
զոր լեալ ոչ էին: Գնացի արդ և աստուստ այսպէս,
կարծեցեալ յաղթիլ յումեմնէ 'ի քաղաքականացն:
Կատարեալ արդ զայսոսիկ՝ առ այն որ ձեռօք են ար-
հեստաւորքն՝ գնացի, քանզի զանձն իմ գիտէի ոչ և
միոյ ուրուք գոլ մակացող՝ իբրու տալ ասել: Բայց
զնոսա իսկ գիտէի՝ թէ գտանիցեմ բազում և գեղե-
ցիկ իրաց մակացողս. և առ այս ինչ իսկ՝ ոչ ստեցայ,
քանզի գիտէի՝ զոր ինչ ես ոչ գիտէի, և այսուիկ քան
զիս իմաստնագոյնք էին: Արդ, ով արք Աթենացիք,
զնոյն ինչ թուեցան ունել սխալանս, որպէս և քեր-
թողքն և բարի շինողքն. վասն զարհեստն բարւոք
գործելոյն՝ [2] իւրաքանչիւր ոք արժանանայր և առ այլ
մեծագոյնսն իմաստնագոյն գոլ: Եւ զսոցունց զիմաս-
տութիւն այնմիկ՝ այսպէս յածիլն թագուցանէր. իբ-
րու վերստին հարցանել ինձ զանձն իմ վասն տես-
լեանն՝ թէ որպէս ընդունեցայց, այսպէս թերևս ու-
նել որպէս և ունիմ, ոչ իմաստուն ինչ գոլով ըստ նո-
ցունց իմաստութեանն, և ոչ անուսումն ըստ անուսու-
մնութեանն, եթէ ունել զերկաքանչիւրսն՝ զոր ինչ
նոքա ունէին: Պատասխանի արդ տայի յանձին և տես-
լեանն՝ թէ զինչ լաւագոյն է ունել՝ որպէս և ունիմ:
Արդ 'ի քննութենէս այսմիկ, ով Աթենացիք, բա-
զում ինչ թշնամութիւնք եղեն և իբրու դժուարինք
իսկ և ծանրագոյնք. իբրու բազում դաւաճանութիւնք
յայտ է լինել, և անուն զայս ինչ ասել՝ իմաստուն գոլ.
քանզի կարծեն զիս հանապազ պատահեալքն այսո-
քիւք իմաստուն՝ որով զայլ ոք յանդիմանեմ: Բայց
ճշմարտութեամբ տագնապի աստուածն, ով արք,
գոլ իմաստուն, և տեսլեամբս այսմիկ զայս ինչ ասել՝

1 Յօր. ոգայութեամբ:

2 Յօր. գործելոյն:

Digitized by Google

զի մարդկային իմաստութիւնս սուղ ինչ և ոչ զմի ինչ արժէ. և երևի ասելն զսա Սոկրատէս իմով անուամբս վարիլ պիտակապէս, զիս առնելով յարացոյց [1] իբրու եթէ ասիցէ, եթէ սա քան զձեզ, ով մարդիկ, իմաստանագոյն է, որ՝ իբրու Սոկրատէս՝ իմացեալ է, զի ոչ և միոյ ուրուք արժան է ճշմարտութեամբ ըստ իմաստութեան: Այսոքիկ արդ ես իսկ տակաւին և այժմիկ շրջելով խնդրեմ և քննեմ ըստ աստուծոյն՝ 'ի քաղաքացեայն և յօտարացն եթէ զոմն կարծեմ իմաստուն գոլ. և յորժամ ինձ թուիցի՝ աստուծոյն օգնելով 'ի բաց ցուցանեմ, թէ իմաստուն ոչ է: Եւ 'ի ձեռն այսմիկ անպարապութեանս, ոչ ինչ 'ի քաղաքիս իրաց գործել բանի արժանի եղև ինձ պարապումն, և ոչ ընտանեացն, այլ 'ի բիւր տնանկութեան [2] եմ վասն պաշտամանն աստուծոյ:

Եւ առ այսոցիկ՝ համբակքն հետևելով ինձ, 'ի փարթամագունիցն՝ ինքնակամս, որոց մանաւանդ պարապումն գոյ, խնդան լսելով զքննութիւնս մարդկան. և սոքա բազում անգամ յիս նմանեն, ապա ձեռնարկութիւն առնեն զայլս քննել. և ապա կարծեմ, գտանեն բազում առատութիւն մարդկան կարծեցելոց [3] գիտել ինչ, և գիտողացս սակաւուց կամ ոչ և միոյ իրի: Աստուստ արդ այնոքիկ՝ որ 'ի ձեռն սոցա քննեալք լինին՝ ինձ բարկանան, և ոչ սոցա. և ասեն՝ իբրու Սոկրատէս պղծագոյն ոմն է և ապականէ զհամբակսն: Եւ ապա յորժամ ոք զսոսա հարցանիցէ՝ թէ զինչ առնելով և կամ զինչ ուսուցանելով, ունին իսկ ոչ ինչ ասել, քանզի չգիտեն [4]: Բայց զի մի թուիցին իբրու տարակուսեալք, զոր ինչ առ ձեզ եւ ամենայն իմաստասիրողաց, զայնոսիկ ասեն՝ եթէ զոր ինչ 'ի բարձունս են և զոր ինչ ընդ երկրաւ [5] և աստուածս ոչ կարծել, և զնուազագոյն բանն՝ վեհագոյն առնել. քանզի զճշմարիտն, կարծեմ, ոչ կամեսցին ասել, զի

1 Յոր. յորոց:  
2 Յոր. այս բիւրին տնանկութեանն եմ:  
3 Յոր. գործեցելոց:  
4 Յոր. քանզի գիտեն:  
5 Յն. Բայց զի մի թուեսցին իբրու տարակուսեալք, զայսոսիկ ասեն գոլ առ ձեռն ամենայն իմաստասիրողաց. եթէ զոր ինչ 'ի բարձունս և զոր ինչ ընդ երկրաւ են՝ քննէ, և աստուածս ինչ չհամարի....:

յայտնիք լինիցին փութալով գիտել ինչ՝ ոչ ինչ գի-
տելով: Արդ, կարծեմ, իբրու պատուասէրք գոլով և
յուժգնագոյն և բազումք և շարակարգելով զբանս
հաւանականս 'ի սակս իմ ասելով՝ լցուցին զականջս
ձեր. և երբեմն յոյժ դաւաճանելով[1]: Ի սոցունց և
Մելէտոս յարեաւ 'ի վերայ իմ, և Անիւտոս և Լիւկոն:
Մելետոս իսկ վասն քերդողացն տրտմեալ. Անիւտոս
իսկ վասն շինողաց և քաղաքականաց, և Լիւկոն՝ վասն
հռետորացն: Իբրու սկսեալ ես ասէի, սքանչանամ
թերևս թէ որպէս ես կարէի զձեր զայս իսկ զդաւա-
ճանութիւնս 'ի բաց լուծել առ այսպիսի սակաւ ժամա-
նակաւ եղեալ այսպէս բազում:

Այսոքիկ են ձեզ, ով արք Աթենացիք, ճշմարիտ
բանքս. և ոչ ինչ 'ի ձէնջ՝ ոչ մեծ և ոչ փոքր՝ թաքու-
ցանելով ես ասեմ և ոչ ամփոփելով. և մանաւանդ
գիտեմ զի գրե եթէ սոքօք այսոքիւք 'ի բաց լինիմ
թշնամի. որ և նշանակ է՝ զի ասեմ ճշմարիտ, և զի այս
են բամբասանք. և պատճառքն այսոքիկ են: Եւ եթէ
այժմիկ իսկ և եթէ յապա խնդրիցէք զայսոքիկ՝ այս-
պէս գտանիցէք: Արդ յաղագս այնոցիկ՝ որ առաջին
ջատագովքն իմ ստորոգէին՝ այս իցէ բաւական առ
ձեզ պատասխանի:

ԺԱ. Իսկ առ բարին Մելիտոս և քաղաքասէրն,
իբրու ասէ, և առ վերջինսն՝ յետ այսոցիկ փութացայց
տալ պատասխանի. քանզի դարձեալ որպէս այսց ե-
լով[2] ստորոգողաց՝ ընկալցուք իսկ զսոցայն հակառա-
կութիւն, իբրու է այդպէս. զՍոկրատէս ասէ անիրա-
ւել՝ զհամբակսն ապականելով, և զաստուածսն՝ զորս
քաղաքս կարծէ՝ ոչ կարծելով, այլ այլ ինչ դիք նո-
րագոյնք. իսկ արդ ամբաստանութիւն այսպիսի ինչ: Բայց
զայսմիկ ամբաստանութեանս զմի իւրաքանչիւր ոք
քննեսցուք: Զի ասէ զհամբակսն անիրաւել ինչ[3] ա-
պականելով:

Բայց ես, ով արք Աթենացիք, անիրաւել ասեմ
զՄելիտոս, զի փութով խնդայ, դիւրաւ 'ի հանդէսս

1 Յօր. դաւաճնելով:
2 Յօր. այլելով. այս է՝ այսոցիկ գոլով դատախազեցս:
3 Յն. ինձ:

Digitized by Google

կացուցանելով զմարդիկ՝ յաղագս խրողութեանց ջա-նալով փութալ և մատակարարել, այնոցիկ՝ յորոց և մի ինչ սմա ևս երբէք փոյթ լեալ է[1]. և իբրու այս ինչ այսպէս ունի՝ փութացայց և ձեզ ցուցանել։

ԺԲ. Եկ արդ, ով Մելիտէ, ասա ինձ. այլ ինչ եթէ փոյթ առնես, որպէս զի լաւագոյնք համբաւքն լինիցին։ Եւ Մելիտոս ասէ. Ես իսկ։ Արդ այժմիկ ա-սա ցսոսա. ո՞վ ոք զսոսա լաւագոյնս առնէ. զի եթէ գիտես, քանզի քեզ փոյթ է այն։ Ապականողն իսկ գտեալ, իբրու ասեն, զիս՝ ’ի ներքս մուծանես առ սոսա և ստորոգես. արդ զլաւագոյն արարողն եկ ասա և ազդեա[2] սոցունց՝ թէ ո ոք է։ Տեսանես, ով Մելի-տէ, զի լռես և ոչ ինչ ունիս ասել. և մանաւանդ ո՞չ թուի քեզ գարշելի գոլ և բաւական նշան այնմիկ՝ զոր ես ասեմ թէ քեզ ոչ ինչ է լեալ փոյթ վասն սոցա. այլ ասա, ով այր բարի, թէ ո՞ ոք զսոսա լաւագոյնս առնէ։

Մելիտ. Օրէնքն։

Սոկր. Այլ ոչ ինչ զայս հարցանեմ, ով վեհա-գոյն, այլ ո՞ ոք մարդ որ և նախ իսկ և զոյն[3] զայս գիտէ զօրէնսն։

Մելիտ. Սոքա, ով Սոկրատէս, դատաւորքս։

Սոկր։ Ո՞րպէս ասես, ով Մելիտէս, սոքա՞ զհամ-բակսն խրատեն և իբրու լաւագոյնք առնեն։

Մելիտ. Զայդ յաւետագոյն[4] իսկ։

Սոկր. Ո՞րպէս, ամենեքեա՞ն. եթէ ոմանք ’ի սո-ցանէ, և միւսք՝ ոչ։

Մելիտ. Ամենեքեան։

Սոկր. Երդումն ’ի Հերա[5], զի բարւոք ասես, և բա-զում առատութիւն օգտողացս[6]. և լուղքս այսոքիկ՝ զի լաւագո՞յնք առնեն եթէ ոչ։

Մելիտ. Եւ սոքա։

Սոկր. Եւ խորհրդածուքն զի՞նչ։

Մելիտ. Եւ խորհրդածուքն։

1 Յն. յորոց և ոչ մի ինչ փոյթ լեալ է սմա։
2 Յոր. յազդէմ։ 3 Յոր. զնոյս։
4 Յոր. յաւէտագոյն։ 5 Թերևս՝ Երդնումս ’ի Հերա։
6 Յոր. առ գտողացս։

Digitized by Google

Սոկր. Ապա ուրեմն, ով Մելիտէ, այնոքիկ որ յեկեղեցւոջն են եկեղեցացուցիչքն ապականեն զհամբակսն, եթէ և նոքա լաւագոյնս առնեն։

Մելիտ. Եւ նոքա։

Սոկր. Ապա ուրեմն ամենեքին, որպէս թուի, Աթենացիք՝ ազնիւքս և բարիքս առնեն, բաց յինէն. և ես միայն ապականեմ, որպէս ասես։

Մելիտ. Ամենեւին յոյժ զայդոսիկ ասեմ։

Սոկր. Բազում իսկ ծանեար զինէն թշուառականութիւն՝ բայց տուր ինձ պատասխանի, եթէ և յաղագս ձիոց այսպէս թուի քեզ առնել. և լաւագոյն արարողքս սոցա զամենայն մարդիկ գոլ, և զմի ոմն ապականող. եթէ ներհակ այսոցիկ, զամենայն զմի ոմն զոր և իցէ՝ լաւագոյնս առնել, թէ և ամենեւին սակաւք իցեն ձիաւորքն. բազումքն եթէ համձարաւորք իցեն և վարին ձիօք՝ ապականեն. ոչ այսպէս ունի, ով Մելիտէ, և յաղագս ձիոց և այլոց ամենայն կենդանեաց. ամենեւին արդ իսկ և դու Անիւտոս ոչ ասացէք իսկ[1], և եթէ ասիցէք։ Քանզի բազում ինչ բարեբաստութիւն իցէ զհամբակօքն, եթէ մի ոմն իսկ միայն զոսա ապականէ, և այլքն շահեցուցանեն։ Այլ, ով Մելիտէ, բաւականապէս 'ի բաց ցուցար՝ զի ոչ ևս երբէք համբակաց արարեալ ես փոյթ, և բացերեւեցուցանես հաւաստի զանձին քո ծուլութիւն, զի ոչ ինչ երբէք քեզ փոյթ է լեալ յաղագս որոց մուծանես դու զիս։

ԺԳ. Եւ տակաւին ասա ինձ, ով Մելիտէ, երդնըլով 'ի Զևս. ո՞ր է լաւագոյն՝ բնակիլ առ քաղցունս քաղաքացիս, եթէ առ չարս. ով դու, տուր այդր պատասխանի. քանզի ոչ ինչ դժուարինս հարցանեմ զձեզ. ո՞չ իսկ չարքն չար գործ ինչ գործեն այնոցիկ՝ որ հանապազ սոցունց հպագոյն իցեն, բարիքն՝ զբարի ինչ։

Մելիտ. Ամենեւին իսկ։

Սոկր. Իցէ՞ ոք արդ որ կամիցի առ 'ի մերձաւորացն վնասել, քան եթէ շահիլ. տուր պատասխանի, ով այր բարի. քանզի օրէնքն հրամայէ տալ պատասխանի, իցէ՞ ոք երբէք՝ որ կամիցի վնասիլ։

1 Յն. եթէ և դու և Անիւտոս ոչ ինչ ասիցէք. — յոր. Անփոփոփ։

Մելիտ. Ոչ և միով իւիք։

Սոկր. Բե՛ր արդ, ո՛րպէս զիս մուծանես աստանօր, իբրու ապականելով զհամբակսն չարագոյնս առնելով, կամա՞ւ եթէ ակամայ։

Մելիտ. Կամաւ իսկ։

Սոկր. Եւ զի՞նչ արդ, ով Մելիտէ, այսչափ դու քան զիս որ 'ի հասակիս այսմիկ իմաստնագոյն եմք այդպիսի դու գոլով [1]. իբրու դու իսկ ծանեար, զի չարքն իսկ զչար ինչ գործեսցեն հանապազ մերձաւորաց իւրեանց մանաւանդ, և բարիքն՝ զբարի ինչ. և ես յայսչափ յանուսումնութիւն վարեցայ, իբրու և զայսմիկ ոչ գիտեմ, զի եթէ զոմն փութամ չար առնել 'ի մերձաւորացն՝ տագնապիմ զչար ինչ ընկալուլ 'ի նմանէ. իբրու զի զայս ինչ այսչափ՝ կամա՞ւ առնեմ, իբրու զոր դուդ ասես. զայսոսիկ ես քեզ ոչ հաւանիմ, ով Մելիտէ, բայց կարծեմ՝ զի ոչ և մի այլ ոք 'ի մարդկանէ. այլ կամ ոչ ապականեմ, և եթէ ապականեմ՝ ոչ կամաւ. վասն որոյ և դու իսկ իւրաքանչիւրս ստես։ Ապա եթէ ակամայ ապականեմ, վասն այսպիսի ակամայ մեղացս՝ ոչ է օրէն աստանօր մուծանել, այլ անձին [2] ընկալուլ, ուսուցանել և խրատել. քանզի յայտ է որ եթէ ուսանիմ՝ դադարեմ յոր ինչ գործեմ իսկ չարէն ակամայ։ Բայց դու պահել ինչ և ուսուցանել փախեար և ոչ կամեցար. և աստանօր մուծանես զիս, ուր օրէն է [3] մուծանել զտանջանաց կարօտեալսն, այլ ոչ ուսմանն։ Այլ, արք Աթենացիք, այս ինչ արդ յայտ է՝ զոր ես ասեմ, զի սմա Մելիտոսի ոչ մեծ և ոչ փոքր ևս երբէք փոյթ է լեալ։

ԺԴ. Բայց սակայն մեզ [4], ո՛րպէս ասես զինէն ապականելով, Մելիտէ, զհամբակագոյնսն. կամ յայտ իսկ է, զի ըստ գրոյն՝ զոր գրեցեր, աստուածք՝ ուսուցանելով՝ ոչ կարծել զոր քաղաքս [5] իսկ օրինադրէ, այլ զայլս դևք [6] նորագոյնք. ո՞չ զայսոսիկ ասես՝ զի ուսուցանելով ապականեմ։

1 Յն. այսչափ դու քան զիս իմաստնագոյն իցես. դու այր այնպիսի՝ քան զիս՝ որ իցեմս այդպիսի ոք։

2 Յն. Այլ առանձին։

3 Յօր. ուր օրէնն մուծանել։

4 Յն. Բայց ասա մեզ։

5 Յօր. դփաղափս։

6 Յօր. դաս. — ապաջանէն։

Մելիտ. Ամենևին արդ յոյժ զայսոսիկ ասեմ։

Սոկր. Վասն Նոցունց այժմիկ, ով Մելիտէ, այսոցիկ աստուածոցս, յաղագս որոց այժմիկ բանս է՝ ասել ևս հաւաստիւ և ինձ և արանցս այսոցիկ, զի ես ոչ կարեմ իմանալ՝ որպէս ասես զինէն ուսուցանել կարծել գոլ զոմանս աստուածս.— և ես արդեւք կարծեմ գոլ աստուածս, և ոչ եմ ամենևին անաստուած, և ոչ այսուիկ անիրաւեմ —. սակայն ոչ զայնոսիկ՝ զորս քաղաքս կարծէ, այլ զայլս. և այս ինչ է՝ զոր ամբաստանես զինէն, վասն զի զայլս կարծեմ. եթէ ամենևին ասես զինէն զի ոչ կարծեմ աստուածս, և այլոց այսպէս ուսուցանեմ։

Մելիտ. Զայսոսիկ ասեմ, իբրու ամենևին աստուածս ոչ կարծես։

Սոկր. Ո՛վ սքանչելի Մելիտէ, ընդէ՞ր զայսոսիկ ասես. ո՞չ[1] զարեգակն և ո՞չ զլուսին կարծեմ ես արդեւք աստուած գոլ՝ որպէս այլ մարդիկս։

Մելիտ. Երդնում 'ի Զևս, ով արք դատաւորք՝ քանզի զարեգակն քար գոլ ասէ, և զլուսինն՝ հող։

Սոկր. ԶԱնաքսագորասէ թուիս ստորոգել, ով սիրելի Մելիտէ. և այսպէս արհամարհես զսոսա, և կարծես զսոսա անհմուտս գրոց գոլ, իբրու ոչ գիտել թէ մատեանքն Անաքսագորասի Կղազոմենիացւոյն լի են բանիւքս այսոքիւք. և համբակքս[2] արդ՝ զայսոսիկ առ յինէն ուսանին՝ զորս պա՛րտ է, և յորժամ թէ ամենևին բազում՝ դրամաւ[3] 'ի կաքաւարանէն գնելով, զՍոկրատեսաւ ծիծաղել. եթէ փութայ զսոսա գոլ անձին իւրոյ, այլաբար իսկ և այսպէս գոլով անտեղի։

Այլ ով դու՝ վասն Արամազդայ, ասա՝ այսպէս քեզ թուիմ իբրու ոչ և զմի ոք կարծեմ գոլ աստուած։

Մելիտ. Ոչ իսկ, երդնում յԱրամազդ, իբր ոչ և մի ոք։

Սոկր. Անհաւատ իսկ ես, ով Մելիտէ, որպէս թուիս ինձ, և անձին քո. քանզի թուի ինձ սա, ով

1 Յօր. ո՞չ։ 2 Յօր. համբակս։
3 Յն. Առ յինէն ուսանին, զորս արժան է երբեմն, եթէ և բազում, միով դրամով...

Digitized by Google

արք Աթենացիք, ամենեւին գոլ թշնամանող իսկ և զեխ, և համբակութեամբ գրել։ Քանզի թուի իբրու նշան ինչ դնել և փորձ առնել եթէ՝ «Ծանիցէ՞ արդեւք իմաստունն Սոկրատէս՝ անձին իմոյ շնորհիչք առնելով[1]. և ներհականս ինքեան ասելով, թէ 'ի բաց պատրեմ զսա և զայլս իսկ լսողս»։ Զի այսպէս ինձ երեւի զներհականսն ասելով սա անձին իւրոյ՝ գրովս, իբրու եթէ ասիցէ. Անիրաւէ Սոկրատէս՝ աստուածս ոչ կարծելով, այլ աստուածս կարծելով. և մանաւանդ այս ինչ է խաղալիս ուրուք։

ԺԵ. Ի միասին արդ՝ խնդրեցէք, ով արք Աթենացիք, ըստ որում երեւի ինձ զայսոսիկ ասելով. բայց դու մեզ տուր պատասխանի, ով Մելիտէ. և դուք՝ որպէս իսկզբանն առ 'ի ձէնջ հայցեցի՝ յիշեք ոչ զիս զարհուրեցուցանել, եթէ ըստ սովորեալ յեղանակին առնեմ զբանքս։ Է՞ ոք 'ի մարդկանէ, ով Մելիտէ, որ մարդկային իրողութիւնք կարծէ գոլ և մարդիկ ոչ կարծէ. պատասխանի տացէ, ով արք, և մի առ այլ ինչ և առ այլ զբաղեսցի. Է՞ ոք որ ձիք իսկ ոչ կարծէ, և ձիոց իրողութիւնս կարծէ. կամ փողահարս իսկ ոչ գոլ կարծիցէ, և փողահարական իրողութիւնս կարծէ. ո՞չ իցէ այս ինչ, ով արիագոյնդ արանց։ Եթէ դու ոչ կամիցիս տալ պատասխանի, ես ասեմ քեզ՝ և այլոցս այսոցիկ։ Բայց դու այսմիկ՝ որ յետ այսորիկ են՝ պատասխանի տուր, է՞ ոք որ դիւցական իրութիւնս գոլ կարծիցէ, և դիս ոչ։

Մելիտ. Ոչ գոյ։

Սոկր. Իբրու շահեցուցեր զիս[2]. զի հազիւ ետուր պատասխանի 'ի ձեռն այսոցիկ հարկելով. ապա ուրեմն զդիս ասես զլինէն[3] և կարծել և ուսուցանել, եթէ զնո՞րս և եթէ զհի՞նս. սակայն դիս կարծեմ[4] ըստ քոյոյ բանիդ. և երդուար զայսոքիկ 'ի քում գրին։ Ապա եթէ դիս կարծեմ, և դևս իսկ երբէք կարծել բազում հարկ է ինձ. ո՞չ այսպէս ունի։ Ունի իսկ։

1 Թերեւս՝ շնորհ ինչ առնելով. Յն. Ծանիցէ՞ արդեօք Սոկրատէս իմաստունն 'ի շողոմելն իմում, և ներհակս ասելով անձամբ անձին։

2 Յն. որպէս աշխատ արարեր զիս.

3 Յօր. զինէ։

4 Յօր. ոչ կարծեմ։

Քանզի դնեմ զքեզ խոստովանեալ, զի ոչ տաս պատասխանի. և զդևսն իսկ աստուա՞ծք վարկանիմք, կամ աստուածոցն մանկունք. ասե՞ս՝ եթէ ոչ։

Մելիտ. Ասեմ իսկ։

Սոկր. Ապա ուրեմն եթէ դևս վարկանիմ իբրու դու ասես, եթէ աստուածք ոմանք են դևքն. այս ինչ արդեւք իցէ՝ զոր ես ասեմ նշանակել քեզ, և երկրել զանձն քո. զինչն ասելով աստուածս ոչ վարկանիլ, և աստուածս դարձեալ կարծել. քանզի եթէ դևս վարկանիմ, և դևքն աստուծոց մանկունք են՝ եթէ խորթք ոմանք և եթէ 'ի հարսանց[1] և եթէ յայլոց ոմանց՝ որոց և ասեն իսկ, ո՞ ոք 'ի մարդկանէ աստուածոց մանկունս վարկանի գոլ, և աստուածս ո՛չ։ Քանզի նմանապէս թերևս իցէ անտեղի, որպէս թէ ոմն ձիոց իսկ մանկունս վարկանիցի և կամ իշոց՝ զջորիս, և ձիս և էշս ոչ վարկանիցի գոլ։ Այլ, ո՛վ Մելիտէ, ոչ գո՞յ՝ իբրու դու ոչ զայսոքիկ առանց քննութեան զմէնջ գրեցեր զգիրս զայս, և կամ տարակուսելով թէ զի՛նչ ամբաստանեսցես զինէն ճշմարիտ անիրաւութիւն. բայց զի հաւանեցուցանես զումն թերևս զայն՝ որ փոքր ինչ միտս ունիցիս 'ի մարդկանէ, իբրու ոչ նոյն ինչ է զդևս և զաստուածայինս վարկանիլ, և դարձեալ նոյն ինչ՝ ոչ զդևս և ոչ զաստուածս և ոչ զդիւցազինս, ոչ և մի իցէ հնար։ Այլ, ո՛վ արք Աթենացիք, իբրու ես ոչ իսկ անիրաւեմ ըստ գրելոյդ Մելիտոսի, ոչ բազում պատասխանւոյ թուի ինձ կարօտանալ, այլ և այսոքիկ բաւական է։

ԺԶ. Բայց զոր ինչ յառաջագոյնսն ասէի[2] թէ բազում թշնամութիւն եղև ինձ և առ բազումս, քաջ գիտէք՝ զի է ճշմարիտ. և այս ինչ որ և սպանանիցէ զիս. թէ սպանանիցէ իսկ, ոչ Մելիտոս և ոչ Անիւտոս, այլ բազմաց դաւաճանութիւնն իսկ և նախանձն. որք և զայլս բազումս և զբարի արս սպանեալք, թուի ինձ թէ և սպանանիցեն. ոչ և մի չար ինչ յիս գտանիցի։ Բայց թերևս ասիցէ ոք, ապա ոչ ամաչես, ո՛վ Սոկրատէս, այսպիսի խոկումն խոկացեալ՝ յորմէ այժ-

1 Այս է. յաւերժհարսանց։ Յոր. հարսնց։
2 Յոր. առէ։

մինչ տագնապիս մեռանել։ Բայց ես այսմիկ թերեւս իրաւացի բան փոխանակ ասացից թէ՝ ոչ բարւոք ասես, ով մարդ, եթէ կարծես պարտ գոլ՝ վիշտ խորհել զկեանս և կամ զմեռանելն առն՝ որոյ և փոքր ինչ օգուտ իցէ. այլ ոչ զայն միայն դիտել, յորժամ գործիցէ ինչ, թէ զինչ՝ իրաւացի կամ անիրաւ գործիցէ, և զգործս առն բարւոյ կամ չարի։ Զի վատթարքն [1] արդեւք իցեն քոյով բանիւդ 'ի կիսաստուածոցն՝ որչափ 'ի Տրովադայ վախճանեցան, այլքն իսկ և որդին Թետիդայ. որ այսչափ զվիշտս արհամարհեաց, քան թէ զգարշելի ինչ 'ի յանձն առնուլ, որչափ զի ասէր ցնա մայրն իւր աստուածուհի գոլով յօժարացեալ զնորա զԵքտորոս [2] սպանանել, այսպէս՝ իբրու ես կարծեմ. Ո՛վ որդի, եթէ վրիժախնդիր լինիցիս Պատրոկղոսի ընկերի քո սպանմանն, և սպանցես զԵքտորոս, և դու մեռանիցես. — քանզի վաղվաղակի, ասէ, յետ Եքտորոսի՝ աղճատին քեզ հուպ է —։ Բայց նա զայս ինչ լուեալ՝ զմահն ինչ և զվիշտն արհամարհեաց, բա՛ զայս ինչ մանաւանդ երկուցեալ 'ի կելոյն [3] չար գոլով, և բարեկամացն վրէժխնդիր ոչ լինել. Վաղվաղակի, ասէ, մեռայց՝ պատուհաս 'ի վերայ հասուցեալ անիրաւողին, զի մի՛ աստանօր մնացից ծիծաղելի առ նաւսն մնոտի՝ իբրու կոշտ ինչ հողոյ։ Ասես արդ զմանէ՝ թէ երկնչէր 'ի վշտացն [4] կամ 'ի մահուանէ. քանզի այսպէս ունի, ով արք Աթենացիք, ճշմարտութիւն. ուր և դասիցէ ոմն զանձն իւր՝ վարկանելով լաւագոյն գոլ, և կամ առ 'ի յիշխանէ դասիցէ աստանօր՝ պարտ է, իբրու ինձ թուի, մնալով վշտագնիլ՝ ոչ ինչ համարելով ոչ զմահ և ոչ այլ ինչ նախ քան զայն որ ամօթալին է։

ԺԷ. Ես արդ՝ թերեւս չար ինչ իցեմ գործեալ, ով արք Աթենացիք, թէ յորժամ իշխանքն դասէին [5] զիս, յորս դուք հաճեցայք իշխել ինձ, և Պօտիդի [6] և յԱմփիպօլիս և առ Դելիա. յայնժամ ուր նոքա դա-

1 Յօր. Զիարդ առ ինքն։
2 Յն. յօժարեցուցեալ զնա՝ զՀեկտոր սպանանել.
3 Յօր. էկէլոյն։
4 Յօր. 'ի Վշտացն։
5 Յօր. դասէին։
6 Պոտիդէա ... Դելիոս։

ուխտին՝ [1] անսայի մնալով որպէս և այլ ոք, և տագնապէի մեռանել։ Եւ աստուծոյն դասելով, իբր ես կարծեցայ և 'ի վերայ հասայ՝ իմաստասիրելով ինձ պարտ գոլ կեալ և քննելով զանձն իմ և զայլս, աստանօր իսկ երկուցեալ կամ 'ի մահուանէ կամ յայլոց յոր և իցէ իրէ, թողից զդասութիւն։ Զար թերևս իցէ, և իբրու ճշմարտապէս յայնժամ մուծցէ ոք զիս 'ի հանդիսարանն, զի ոչ կարծեմ աստուածք գոլ՝ անհաւանելով դիւթութեանն և երկուցեալ 'ի մահուանէ, և կարծեցեալ իմաստուն գոլ՝ ոչ գիտելով։ Քանզի 'ի մահուանէ երկնչելն, ով արք, ոչ այլ ինչ է՝ քան եթէ թուելն իմաստուն քոլ՝ ոչ գոլով. քանզի թուի գիտել՝ զոր ինչ ոչ գիտէ. զի ոչ ոք զմահն, [2] ոչ՝ եթէ հանդիպի մարդոյ, ամենեցուն մեծագոյն գոլ 'ի բարութեանց. բայց երկնչին իբրու բարեւք գիտելով զի մեծագոյնն իսկ է 'ի չարեաց. և այս ինչ ո՞րպէս ոչ է անուսումնութիւն նախատելի իսկ՝ կարծելն գիտել զոր ինչ ոչ գիտէ։ Բայց ես, ով արք, այսուիկ և աստանօր թերևս զանազանիմ 'ի բազմաց մարդկանէ. և այսուիկ իմաստնագոյն ուրուք [3] ասացից գոլ. զի ոչ գիտելով բաւականապէս յաղագս այնոցիկ՝ որ 'ի դժոխս են, այսպէս և կարծեմ ոչ գիտել. բայց անիրաւելն և անհաւանիլն լաւագունի աստուծոյ իսկ և մարդոյ, զի չար է և գարշելի՝ գիտեմ։ Արդ նախ քան զչարիսն զորս ոչ գիտեմ՝ եթէ չարք են, յայնոցիկ՝ որ ոչ գիտեմ եթէ բարութիւն գոլով հանդիպին՝ [4] ոչ երբէք երկնչիմ և ոչ փախչիմ։ Վասն որոյ և եթէ զիս այժմիկ դուք թողուցուք՝ Անիւտոսի ոչ հաւատալով, որ ասէ կամ իսկզբանէ ոչ գոլ զի ոչ մեռանիցիմ. ասելն [5] զձեզ իբրու թողցուք զիս, աւասիկ թերևս ուստերքն ձեր խոկալ զայն ինչ զոր ուսուցանէ Սոկրատէս՝ ամենեքեան ամենևին ապականեցին. եթէ զայս ինչ առ այսոքիկ ասիցէք ցիս, թէ, ով Սոկրատէս, այժմիկ իսկ Անիւտոսի ոչ հաւանիմք, այլ թողուցումք զքեզ.

1 Յոր. տափէին։
2 Յն. զի ոչ ոք գիտէ զմահն, և ոչ յորժամ հանդիպի....։
3 Իմաստնագոյն քան զոք։ 4 Յոր. հանդիպին։
5 Յն. ասելով ցձեզ... ուստերքն ձեր խոկալով։

Digitized by Google

առ այս ինչ սակայն՝ [1] զի ոչ ևս այժմիկ խնդրուածովդ շրջեցիս, և ոչ իմաստասիրեցես, և եթէ կայցիս տակաւին զայս ինչ գործելով՝ մեռանիցիմ[2]։ Արդ եթէ զիս, որպէս ասացի, առ այս ինչ թողուցուք, ասացից ցձեզ թէ՝ Ես, ով արք Աթենացիք, համբուրելով սիրեմ զձեզ, բայց հաւանիմ աստուծոյ մանաւանդ՝ քան եթէ ձեզ. և մինչև կենդանի իցեմ, որպէս և իցեմ, ոչ դադարիմ իմաստասիրելով, և ձեզ հրամայելով իսկ և ցուցանելով, որոյ և հանապազ հանդիպիմ 'ի ձէնջ ասելով՝ որպէս սովորեալ եմ՝ թէ ով արիագոյնդ արանց, Աթենացի գոլով 'ի մեծագոյն քաղաքէն և 'ի քաջ ընտրեալ ըստ իմաստութեան իսկ և զօրութեան, ընչից իսկ ոչ ամաչես փոյթ առնելով՝ իբրու զի իցէ քեզ յոլովագոյն, և փառաց և պատուոյ իսկ, խոհեմութեան և ճշմարտութեան, և հոգւոյ՝ իբրու վեհագոյն իցէ՝ փոյթ ոչ առնես և ոչ խոկաս [3] յաղագս սորա. և եթէ ոք 'ի ձէնջ ընդերկուիցի և ասասցէ փոյթ առնել՝ ոչ վաղվաղակի թողից զնա և ոչ գնացից. այլ հարցանիցեմ զնա և քննեմ և յանդիմանեմ, և եթէ ոչ ինձ թուեսցի ստացեալ առաքինութիւն, այլ ասել ստանալ՝ նախատիցեմ, զի զյոլովից արժանիսն՝ սակաւագունիւք դարմանես, և զյոռիքն [4] յոլովագունիւքն. զայսոսիկ և համբակի և ծերոյ, որում [5] և հանդիպիմ, և օտարի և քաղաքացւոյ, բայց մանաւանդ ձեզ քաղաքացեացդ՝ որչափ սեռիւք ինչ հուպ էք. քանզի զայսոսիկ հրամայէ աստուած, քաջ գիտասջէք։ Եւ ես կարծեմ, ոչ ևս մեծագոյն բարի լինել քաղաքիս՝ քան եթէ զիմոյ աստուծոյն պաշտօնս. քանզի ոչ զայլ ինչ գործելով ես շրջիմ՝ քան եթէ հաւանելով 'ի ձէնջ զհամբակագոյնսն իսկ և զերիցագոյնսն, ոչ մարմնոյ փոյթ առնել, և ոչ ընչից յառաջագոյն, և ոչ այսպէս յոյժ՝ որպէս հոգւոյ, զի իցէ այսպէս իբրու արիագոյն. ասելով զի ոչ յըն-

1 Այս է. այսու դաշամբ. յօր. առ այս ինչ. սակայն զի....։
2 Յն. մեռանիցիս։ 3 Յօր. խոկա։
4 Յօր. զտռիքն, ըստ յն. և եթէ ոչ թուիցի ինձ ստացեալ զառաքինութիւն, այլ ասել ևեթ, նախատեմ, զի զարժանաւորս մեծաց իրաց՝ փոքր իմն գրէ, և զնուաղագոյնս՝ մեծ ինչ։
5 Յօր. ծերոյ և հանդիպիմ. յն. որում և հանդիպիմ՝ առնեմ զայս։

Digitized by Google

չից առաքինութիւն լինիցի, այլ յառաքինութենէ՝ ինչս և այլ բարութիւն մարդկան ամենայն առանձին իսկ և ատենաբար։ Իսկ արդ՝ եթէ զայսոսիկ ասելով ապականեմ զհամբակսն՝ այսոքիկ արդեւք իցեն վնասակար։ Ապա եթէ ոք ասիցէ զինէն այլ ինչ ասել քան եթէ զայսոքիկ՝ ոչ ինչ ասէ։ Ըստ այսոցիկ արդ՝ ասացից, ով արք Աթենացիք, եթէ հաւանիք Անիւտոսի՝ և եթէ ոչ, և եթէ թողուցուք զիս՝ և եթէ ոչ. իբրու ես ոչ թերևս այլ ինչ արարից, ոչ՝ եթէ և հանդերձեալ եմ բազում անգամ մեռանել։

ԺԸ. Մի խռովիք, ով արք Աթենացիք, այլ անսացէք ինձ յաղագս այնոցիկ՝ որ աղաչեցի զձեզ. ոչ խռովիլ վասն որոյ և ասեմ, այլ լսել. քանզի, որպէս կարծեմ, շահեսջիք լսելով։ Զի հանդերձեալ եմ ասել և զայլ ինչ՝ առ որս թերևս աղաղակիցէք, այլ մի ոչ և միով իւիք առնիցէք զայս ինչ։ Քանզի քաջ գիտացէք, զի եթէ զիս սպանանիցէք այսպիսի գոլով իբրու ես ասեմ, ոչ ինչ ինձ զմեծագոյնն վնաս գործիցէք՝ քան եթէ անձանց ձերոց։ Զի ինձ իսկ ոչ ինչ վնաս արասցէ՝ ոչ Մելիտոս և ոչ Անիւտոս, զի և ոչ կարասցէ։ Քանզի ոչ կարծեմ[1] սպատշաճ գոլ առն լաւագունի՝ վնասիլ 'ի ձեռն վատթարագունից։ Սպանանիցէ իսկ թերևս և կամ հալածիցէ և կամ անարգիցէ, բայց զայսոսիկ՝ ասա իսկ՝ թերևս կարծէ և այլ ոմն երբեք մեծագոյն չարս, բայց ես ոչ կարծեմ. այլ մանաւանդ զառնելն զայս ինչ զոր սա այժմիկ առնէ, ձեռս արկանել՝ զայր անիրաւապէս սպանանել։ Այժմիկ, ով արք Աթենացիք, յոյժ հեռի է յինէն վասն անձին իմոյ տալ ինձ պատասխանի, իբրու կարծիցէ ոք. այլ վասն ձեր, գուցէ ինչ 'ի բաց սխալիցիք առ տուեալդ ձեզ յաստուծոյ՝ զինէն անիրաւ դատակնիք հատեալ. քանզի եթէ զիս սպանանիցէք՝ ոչ դիւրաւ զայսոսիկ այսպիսի[2] գտանիցէք. անարհեստաբար, կամ ծիծաղելի ինչ ասել, առկատարեալ[3] քաղաքիս 'ի ձեռն աստուծոյ, որպէս ձիոյ մեծագունի իսկ և ազ-

1 Յօր. կարէմ։
2 Յն. ոչ դիւրաւ զայլ ոք այսպիսի գտանիցէք։
3 Յն. առկայցեալ կամ առկայացեալ, առատուեալ. այս է շնորհեալ զիս։

նուի, և 'ի մեծութեան տարտամագունի և կարօտա-
ցելոյ՝ զարթչիլ 'ի ձեռն մտրակի ուրուք, որպէս զի արդ,
թուի ինձ, աստուծոյ զիս 'ի քաղաքիս յաւելուլ զայս-
պիսի ոմն՝ որ զձեզ զարթուցանելով և հաւանեցուցա-
նելով և նախատելով զմի մի իւրաքանչիւր ոք, և ոչ
դադարեմ զօրհանապազ առ ամենայն տեղիս նստելով։
Այսպիսի արդ այլ ոք ոչ դիւրաւ [1] ձեզ գտանիցի, ով
արք. այլ եթէ ինձ ունկնդիր լինիցիք՝ խնայէք յիս.
բայց դուք թերևս արդեւք ծանրացեալք, իբրու նիր-
հեալքն առ յանկարծակի զարթչիլն, թերևս բախե-
լով զինև, Անիւտոսի հաւանելով, դիւրապէս սպանա-
նիցէք զիս. ապա զամենայն կենցաղն կատարիցէք շը-
նորհելով [2] արդեւք, թէ ոչ զայլ ոք աստուած մատա-
կարարող առաքիցէ ձեզ։ Եւ զի ես այսպիսի հանդի-
պիմ գոլով իբրու յաստուծոյ քաղաքիս պարգևեալ,
աստուստ արդ խորհեսցուք. զի մարդկայնոյ իրին նման
ոչ է՝ ինձ իմոցն ամենայնի փոյթ ոչ առնել, այլ ներել
ընտանեացն ծուլութիւն առնելով ամս [3] այսչափ [4],
և զձերն գործել հանապազ՝ առանձին առ իւրաքան-
չիւր ոք հասանելով իբրու առ հայր կամ եղբայր երի-
ցագոյն, հաւանեցուցանելով առաքինութեան փոյթ
առնել. բայց սակայն, եթէ յայսցանէ ծախէի ինչ,
և վարձս առնլով զայսոսիկ հրամայէի, ունի թերևս
բամբասանս ինչ. [5] բայց այժմիկ տեսանէք արդ և
դուք ինքեանք. զի ջատագովքն իմ զայլ ամենայն ա-
ռանց ամօթոյ այսպէս ստորոգելով, զայս ինչ ոչ կարեն
ասել անամօթութեամբ, առատուելով վկայս՝ իբրու ճըշ-
մարիտ ասէ, զտնանկութիւն [6]։

ԺԹ. Թերևս արդեւք թուիցի անտեղի գոլ.

1 Յոր. դժուար։

2 Յն. նիրհելով արդեւք։ 3 Յոր. ամէն այսչափ։

4 Յն. զի ոչ է գործ մարդկային՝ զի ես զամենայն իմոց իրացս անփոյթ լեալ, և 'ի բաց կացեալ յընտանի իրաց այսչափ ամս, զձերն գործեցից...։

5 Յն. բայց սակայն եթէ վայելէի ինչ 'ի սոսա, և վասն վարձուց հրամայէի զայսոսիկ՝ թերևս լինէր ինչ տեղի բամբասանաց։ Յոր. ծախէ... հրամայէ։

6 Յն. զի ջատագովքն իմ զայլ ամենայն առանց ամօթոյ այսպէս ամբաստանեալ, ոչ ինչ պատկառեցին և վկայս 'ի մէջ ածել՝ եթէ ես երբեմն և վարձս պահանջեցի. այլ ես վկայ մեծ, որպէս կարծեմ, ածից 'ի մէջ զտնանկութիւնս իմ։

Digitized by Google

զի ես առանձինն իսկ զայսոքիկ խորհիմ շրջելով՝ և
քննեմ, և 'ի հանդիսի ոչ համարձակիմ 'ի վեր ելա-
նելով առ բազմութիւնս ձեր՝ խորհրդածու լինել
քաղաքիդ. բայց այսորիկ պատճառն է զոր ինչ
դուք բազում անգամ լուայք յինէն առ տեղիս [1] ա-
սելով իմ, զի աստուածային ինչ և դիւցային լինի
առ իս ձայն, զոր և գիրն կատակերգելով Մելիտոս՝
գրեաց զինէն. բայց այս ինչ է ինձ 'ի մանկութենէ
սկսեալ ձայն ինչ լինելով. որ և յորժամ լինիցի՝ 'ի
բաց կացուցանէ զիս յայնմանէ՝ զոր ինչ և գործել
հանդերձեալ եմ, և յորդորէ ոչ երբէք։ Այս ինչ է՝
որ ինձ հակակայի գործել զքաղաքականս, և ամե-
նևին գեղեցկապէս իսկ թուի ինձ հակակայիլ. քանզի
քաջ գիտէք, ով արք Աթենացիք, եթէ ես կանխաւ
ձեռնարկութիւն արարեալ էի գործել զքաղաքական
իրողութիւնն՝ կանխաւ արդեւք կորուսեալ էի, և
ոչ զձեզ թերևս շահեցուցեալ էի, և ոչ զանձն իմ. և
ինձ մի երևեսցիք ծանրագոյնք՝ զճշմարիտն ասելով.
քանզի ոչ ոք իցէ 'ի մարդկանէ՝ որ կեցցէ, ոչ ձեզ և
ոչ այլոյ ուրուք, ոչ և միոյ բազմութեան հարազատա-
պէս հակակայելով [2], և արգելլով բազում անիրաւու-
թիւնս և անօրէնութիւնս լինել 'ի քաղաքի։ Այլ հարկ
է այնմիկ՝ որ ճշմարտապէս մարտուցեալ [3] իցէ վասն
արդարութեան, և հանդերձեալ իցէ սակաւ ժամա-
նակ կեալ՝ առանձնանալ յատկապէս և ոչ հրապա-
րակել։

Ի. Եւ մեծագոյնս իսկ ես նշանս [4] այսոցիկ առատուեմ
ձեզ, ոչ բանս. այլ զոր ինչ դուք պատուէք իսկ՝ գործս [5]։
Լուարուք արդ զպատահումնս իմ, զի գիտասջիք եթէ
ոչ և միոյ ուրուք հնազանդիմ առանց իրաւանց՝ 'ի
մարդկանէ [6] երկուցեալ. և ոչ հնազանդելով համան-
գամայն արդեւք և կորիցեմ։ Ասեմ արդ ձեզ զծան-
րագոյնս ինչ և զհանդիսականս, սակայն զճշմարիտս։
Զի ես, ով Աթենացիք, զայլ ինչ իշխանութիւն ոչ և
զմի ևս երբէք 'ի քաղաքիս իշխեցի, սակայն խոր-
հրդածու եղէ։ Եւ հանդիպեցաւ ցեղն մեր Անտիո-

1 Այս է. 'ի բազում տեղիս.
2 Յօր. հակառակելով։
3 Յօր. մաքառեցեալ։
4 Յօր. նշանօք։
5 Յօր. գործէք։
6 Յն. 'ի մահուանէ երկուցեալ։

Digitized by Google

քացի [1] պաշտպան գոլով [2], յորժամ դուք զտասն զօ-
րավարսն զայնոսիկ՝ զոր ոչ սպանեալքն [3] 'ի նաւամար-
տութենէն՝ խորհէիք 'ի միասին դատել անօրինաբար,
որպէս 'ի վերջին ամին [4] ամենեցուն ձեզ թուեցաւ.
յայնժամ ես միայն 'ի պաշտանորդայն [5] հակակեցայ
ընդ ձեզ՝ ոչ ինչ առնել առանց օրինաց, և զներհակն
հատի դատակնիք. և պատրաստ գոլով ցուցանել զիս
հռետորացն, և 'ի բաց տանել, և ձեր հրամայելով և
աղաղակելով, համդերձ օրինօքն և իրաւամբքն թուէր
ինձ մանաւանդ պարտ գոլ վտանգնել, քան եթէ համ-
դերձ ձեւք լինել՝ ոչ զիրաւունս խորհելով ձեր, երկըն-
չելով իմ՝ 'ի կապանաց կամ՝ 'ի մահուանէ։ Եւ այսոքիկ
իսկ էր՝ մինչ դեռ տակաւին քաղաքս ընդ հրապարա-
կակալութեամբ [6] էր։ Իսկ յորժամ եղև սուղ իշխա-
նութիւնն, Երեսունքն իսկ բերեալք զիս հինգերորդ
'ի Թողլոյն՝ հրամեցին [7] ածել 'ի Սաղամինոյ զԼեոն
զսաղամինացին՝ զի մեռանիցի. որպէս և այլոց բազմաց
նոքա բազում անգամ հրամայէին, կամելով իբրու
զյոլովագոյնս լցուցանել [8] պատճառօք. յայնժամ ես
իսկ ոչ բանիւ, այլ գործով ցուցի. զի ինձ վասն մա-
հու իսկ փոյթ է, — եթէ ոչ վայրաբնակագոյն իցէ
ասել —, ոչ և միով իւիք. բայց ոչինչ անիրաւ և ոչ
անսուրբ գործել՝ ամենևին փոյթ է. զի այն իշխանու-
թիւն զիս [9] ոչ զարհուրեցոյց՝ այսպիսի հզօր գոլով,
իբրու անիրաւ ինչ գործել։ Այլ յորժամ 'ի Թողոնէ
ելաք, չորսն իսկ գնացեալ լինէին 'ի Սաղամինա, և
ածին զԼեոն. բայց իսկ գնացեալ լինէի 'ի տուն իմ. և

1 Անտիոքացի, էր մին յԱտտիկեան ցեղիցն։
2 Պահապան գոլ, πρυτανεύω, վարել զպաշտօնն Պռիւտանիոնի Ա-
թենացւոց, որբազան տուն համարեալ առ նոսա։
3 Յոր. սպան — կալեալքն։
4 Յն. 'ի վերջին ժամանակին. — հակակեցայ այս է հակակայեցայ,
ընդդէմ կացի, հակառակեցայ։
5 Պաշտանորդ՝ πρυτανεύς, պաշտօնեայ 'ի Պռիւտանիոնի։
6 Հրապարակակալութիւն démocratie իշխանութիւն ժողովրդեան,
ռամկապետութիւն, ընկերհաշտութիւն։
7 Յոր. հինգերորդ 'ի Թողլոյն հրամեցի ածել... յն. Երեսունքն (իշ-
խանք) յետոյ կոչեալ զիս զհինգերորդ 'ի Թոլոս, հրամայեցին ա-
ծել...։ Թոլոս, ապարանք բոլորշի, ուր ճաշէին Պռիւտանքն։
8 Յոր. լցուցանէն։
9 Յոր. զի զայնմիկ զիշխանութիւն ոչ զարհուրեցոյց։

Digitized by Google

թերևս վասն այսորիկ մեռանէի, եթէ ոչ իշխանու-
թիւնն այն վաղվաղակի լուծանիւր. և այսոցիկ ձեզ
բազում վկայք իցեն։

ԻԱ. Արդ ուրեմն կարծէք զիս այսչափ ամս գոլ 'ի
կենդանութեան, եթէ պահանջէի զատենական իրս,
և գործելով զարժանիսն առն բարւոյ, օգնէի իրաւանցն.
և որպէս պարտ է՝ այսորիկ յոլովագոյն փոյթ առնէի,
բազում ինչ կարօտանայր, ով արք Աթենացիք, լինել
ինչ. քանզի այլ ոչ և մի ոք 'ի մարդկանէ։ Այլ ես յա-
մենայն կենցաղումս յատենի իսկ զոր ինչ գործեցի՝
այսպիսի երևեցիմ. և յատկապէս նոյն այս՝ ոչ և միոյ
ուրուք երբէք ես ներելով ոչ ինչ առանց իրաւանց,
ոչ այլոյ ուրուք, և ոչ 'ի սոցանէ ոչ և միոյ, զոր դաւա-
ճանողքս իմ ասեն՝ իմք գոլ աշակերտք։ Բայց ես վար-
դապետ ոչ և միոյ ուրուք եղեալ եմ ես երբէք։ Այլ
եթէ ասելով իմ և զիմսն գործելով՝ ցանկայ լսել, ե-
թէ համրակագոյն է և եթէ երիցագոյն՝ ոչ և միոյ
ուրուք ես արարեալ է մախանս. և ոչ ինչս իսկ առն-
լով տրամաբանեմ, և ոչ առնլով՝ ոչ տրամաբանել.
այլ նմանապէս փարթամի և տնանկի առատուեմ զանձն
իմ 'ի հարցմունս, եթէ կամիցի ոք պատասխանելով
լսել այնոցիկ՝ զոր ասեմ։ Եւ սոցունց ես՝ եթէ քաղցր
ոմն լինիցի, և եթէ ոչ, ոչ իրաւապէս պատճառի պար-
տապան եմ[1] այնոցիկ որ ոչ իսկ առատուեալ եմ, ոչ և
միոյ ուրուք ոչ և մի ինչ ուսումն երբէք եթէ ոչ ուս-
ցի[2]։ Եւ եթէ ոք ասէ առ 'ի յինէն երբէք ուսանել
ինչ և կամ լսել առանձնապէս՝ ոչ այլոց բազմաց մերձ
գոլով, քաջ գիտացէք զի ոչ ասէ ճշմարիտ։

ԻԲ. Այլ վասն զի ոմանք խնդան երբէք բազում
ժամանակ հանդերձ իմով[3] դեգերեալք, լուայք, ով արք
Աթենացիք. զամենայն ճշմարտութիւնն ես ասացի
ձեզ, զի լսելով խնդան քննելով զայնոսիկ՝ որ կարծին
իմաստուն գոլ, և են[4] ոչ. է արդ ոչինչ թախանձելի։
Զի զայս ինչ՝ իբրու ասեմ, հրաման յաստուծոյ ընկա-
լայ գործել՝ և 'ի դիւթութեանց և 'ի յերազոց, և ա-

1 Յօր. պարապանէմ։
2 Յն. ուսումն երբէք, և ոչ ուսուցի։
3 Այս է. հանդերձ ինև։
4 Յօր. և ես ոչ։

Digitized by Google

մենայն եղանակաւ՝ որով իսկ երբէք այլոյ ուրուք առն
աստուածային մասամբ զոր ինչ և իցէ հրամայեալ է
գործել։ Այսոքիկ, ով Աթենացիք, և ճշմարիտ է և
դիւրին առ 'ի յանդիմանութիւն. զի եթէ ես իսկ
'ի համքակացն զոմանս ապականեմ, և զմիւսս ապա-
կանեցի, պարտ է արդ ուրեմն եթէ ոմանք 'ի սոցունց
ծերք եղեալք՝ ծանեան եթէ համքակաց ելով սո-
ցունց՝ ես չար ինչ երբէք եղէ սոցունց խորհրդակից.
այժմիկ սոցա ելանելով և ստորոգելով զինէն՝ պատու-
հասեցայց։ Ապա եթէ սոքա ոչ կամեցան, յընտա-
նեացն սոցունց զոմանս զհարս և զեղբարս և զայլս 'ի
պատշաճաւորացն [1], եթէ յինէն չար ինչ կրեսցեն ըն-
տանիքն սոցունց, այժմիկ հարցանելով՝ զի սոքա յիշե-
լով պատուհասեսցեն զիս։ Քանզի և մերձ են 'ի սո-
ցանէ աստանօր բազումք, զորս և ես տեսանեմ. նախ
իսկ սա Կրիտոն ընկերս իմ և հրապարակակից՝ Կրի-
տոբուլոսի այսորիկ հայրս, և ապա Լիւսանիաս Փետ-
սիացին [2] սորա իսկ Եսքինոսի հայրն, և տակաւին սա
Անտիփոն Կեփեսիացին՝ հայրն Եպիգէնէսի. և այլք
այժմիկ այսոքիկ՝ [3] որոց եղբարքն ընդ իմ շրջեցեալ է,
Նիկոստրատոս իսկ Զոտիդոսի որդին՝ եղբայրն Թէո-
դոտոսի. — և Թէոդոտոս իսկ վախճանեալ էր, իբրու
զի ոչ արդեւք նա զսա աղաչեսցէ վասն իմ —, և սա
Պարալոս [4] Դեմոդոկոսի որդին, որոյ եղբայր Թէա-
գէս. և սա Ադիմանտոս իսկ Արիստոնոսի, որոյ եղ-
բայրն սա Պղատոն, և Էանտոդորոս, որոյ սա Ապողո-
դորոս եղբայր է, և զայլս բազումս ես ունիմ ասել,
յորոց զոմն պարտ էր մանաւանդ իսկ յուրում բանին
առատուել վկայ՝ Մելիտոսի։ Եւ եթէ յայնժամ մոռա-
ցաւ, այժմիկ առատուիցէ. ես ներեմ և տեղի տամ. և
ասիցէ՝ եթէ ունի ինչ այսպիսի։ Այլ զայսոցիկ [5] զա-
մենայն ներհակն գտանիցէք, ով արք, զամենեսեան
պատրաստեալք առ 'ի յօգնել ինձ ապականողին,
զչարս գործողին զընտիրքն սոցա. այսպէս ասէ Մելիտոս

1 Այս է. 'ի կարևոր մերձաւորացն։
2 Յն. Սփիտտացի։
3 Յոր. այսոցիկ։
4 Յոր. Պառալոս... Թէագէս... Ադիմանդիմանոս... Ապողոդորոս։
5 Յոր. զայսոսիկ։

իսկ և Անիւտոս [1]. քանզի սոքա իսկ ապականեալքս՝ թերևս լինիցին ինձ օգնական լինել։ Իսկ անապականքս, ծերք աւասիկ արք, սոցունց պատշաճաւորքս, զի՞նչ բան ունիցին օգնել ինձ, այլ քան եթէ զուղեղն և զիրաւացին. քանզի իմացան զստութիւնն Մելիտոսի, և զիմ զճշմարտութիւնն։ Իցէ արդ, ո՛վ արք. զոր ինչ ես ունիցիմ թերևս պատասխանել, գրեթէ են այսոքիկ, և այլք թերևս այսպիսիք։

ԻԳ. Բայց ոմն 'ի ձէնջ թերևս բարկասցի ինձ բամբասելով զիս. յիշելով զանձն իւր, զի թէ և նուազագոյն քան զայս հանդէսս հանդիսանայր հանդէս, թերևս աղաչէր և պաղատանս մատուցանէր առ դատաւորս՝ հանդերձ բազում արտասուօք զմանկունս իւր իսկ 'ի վեր ելուցանելով, զի մանաւանդ այսպէս գտցէ զողորմութիւն, և զայլ զընտանեացն և զսիրելեացն զբազումս. և ես ոչ ինչ ուրեմն յայսցանէ առնեմ, և մանաւանդ վտանգնելով՝ որպէս թուի ինձ՝ զվերջինն վիշտ։ Եւ թերևս զայսոսիկ ոմն զմտաւ ածել խստագոյն թերևս առ իս նայեսցի. և բարկացեալ 'ի վերայ նոցունց այսոցիկ՝ դիցէ բարկութեամբ զդատն։ Արդ եթէ 'ի ձէնջ ոք այսպէս ունի՝ ոչ աղաչեմ զնա ես իսկ. սակայն նեղութիւն ինձ համարիմ առ սմա ասել զայս ինչ եթէ, ո՛վ արիագոյն, են իսկ ուրուք և ընտանիք.[2] քանզի, որպէս ասէ Հոմերոս, Ոչ ես 'ի կաղնոյ և ո՛չ 'ի վիմէ 'ի բաց բնաւորեալ եմ, այլ 'ի մարդկանէ. իբրու են ինձ ընտանիք, և ուստերք, ո՛վ արք Աթենացիք, երիս. մի իսկ աւասիկ պատանի, և երկու մանկունք. այլ սակայն ոչ և զմի 'ի սոցանէ ելուցեալ աղաչեմ զձեզ 'ի բաց դարձուցանել զդատդ։ Եւ զի՞նչ արդ ոչ ինչ յայսցանէ առնեմ. ոչ իսկ խրոխտանալով, ո՛վ Աթենացիք [3], և ոչ զձեզ անարգելով. այլ եթէ համարձակութիւն ունիմ [4] առ մահ, կամ եթէ ոչ՝ այլ ինչ բան է, սակայն առ կարծիս՝ և ինձ և ձեզ և բոլոր քաղաքիս ոչ ինձ թուի բարի գոլ յայսցանէ ոչ ինչ առնել, և այսպիսի գոլով և զանունս զայս

1 Յօր. Անիտոս։

2 Յն. սակայն նեղութիւն ինձ համարիմ ասել իսկ առ այս եթէ և ինձ, ո՛վ արիագոյն, են արդարև մտերիմք. քանզի...

3 Յօր. ո՛չ Աթենացիք։

4 Յօր. ունիս։

Digitized by Google

ունելով՝ եթէ ճշմարիտ իսկ է, և եթէ սուտ. այլ սա-
կայն թուեցեալ է՝ զի զանազանեալ է Սոկրատէս 'ի
բազմաց 'ի մարդկանէ: Արդ եթէ 'ի ձէնջ թուեցեալքն
զանազանիլ, կամ իմաստութեամբ կամ արիութեամբ
կամ այլով զինչ և իցէ առաքինութեամբ՝ այսպիսիք
իցեն, թերևս ամօթալի իցէ. որպէս իսկ բազում ան-
գամ տեսեալ եմ զոմանս, յորժամ դատիցին [1], թուե-
ցեալք իսկ գոլ ինչ, բայց սքանչանս գործելով, իբրու
չար ինչ վարկանելով [2] կրել՝ եթէ մեռանիցին, իբրու
անմահ գոլով սոցունց՝ եթէ դուք զոսա ոչ սպանա-
նիցէք: Որք ինձ թուին զամօթ շարամերձել քաղա-
քիս. իբրու զիս կարծիցէ ոմն յօտարացն, զի զանա-
զանեալքն յԱթենացոց առաքինութեամբ, զոր և սո-
քա քան զինքեանս առ իշխանութիւնս և առ այլ
պատիւ նախադատեն, սոքա 'ի կանանց ոչ ինչ զանա-
զանին: Զայսոսիկ [3] արդ, ով արք Աթենացիք, ոչ մեզ
առնել պարտ է այսոցիկ՝ որ թուիցին զինչ և իցէ գոլ
երբէք. և ոչ եթէ մեք առնեմք՝ ձեզ ներել. այլ զայս
ինչ զնոյնս ցուցանել, եթէ մանաւանդ յողնապոյն հա-
տանէք զդատն առ այնմիկ՝ որ զայսպիսի ողորմելի իրս
առնէն 'ի ներքս [4] մուծանելով, և ծիծաղելի զքաղաքս
առնէ, քան եթէ յայնմիկ՝ որ զհանդարտութիւն իսկ
բերէ:

ԻԴ. Առանց փառաց, ով արք, ոչ իրաւացի
ինձ թուի գոլ՝ աղաչել զդատաւորն, և աղաչելովն
'ի բաց փախչել, այլ ուսուցանել և հաւանեցուցա-
նել. քանզի ոչ վասն այսորիկ նստի դատաւորն՝ զի
շնորհս արասցէ զիրաւունս, այլ զի ընտրեսցէ զոսա.
այլ և երդուեալ է՝ ոչ շնորհել որոց և թուիցի սմա,
այլ ըստ օրինաց դատել: Ապա ուրեմն պարտ է և մեզ
ոչ սովորեցուցանել զձեզ երդմնահար լինել, և ձեզ
իսկ ոչ սովորիլ. քանզի ոչ և միոյ ուրուք 'ի մէնջ իցէ
այս ինչ բարեպաշտութիւն: Մի արդ արժանացուցա-
նէք զիս, ով արք Աթենացիք, այսպիսի ինչ պարտ
գոլ գործել առ ձեզ, զոր ինչ ոչ վարկանիմ բարի գոլ
և ոչ իրաւացի, և ոչ սուրբ, և ոչ այլաբար իսկ. երդ-

1 Յօր. դատիցիմ:
2 Յօր. չար ու վարկանելով կրել:
3 Յօր. զայսոսիկ..., Թուիցիմք:
4 Յօր. 'ի ներքոյ:

Digitized by Google

նում յԱրամազդ, զի ամենևին վասն ամբարշտու֊
թեան փախչելով [1] 'ի Մելիտոսէ յայսմանէ։ Զի եթէ
հաւանեցուցից զձեզ աղաչանօքս բռնադատելով եր֊
դուեալք հաւատոյ ուսուցանեմ արդեւք զձեզ՝ աս֊
տուածս ոչ գոլ վարկանիլ. և անարհեստաբար պա֊
տասխանելով ստորագիցիմ թերևս զանձնէ իմմէ ի֊
բրու աստուածք ոչ կարծեմ, այլ բազում ինչ հեռա֊
գոյն է ունելն այսպէս. քանզի կարծեմ իսկ, ո՛վ արք
Աթենացիք, իբրու ոչ յիմոցս ստորոգողացս և զձեզ աս֊
տուածով յորդորեմ [2] դատել յաղագս իմ, որպէս
հանդերձեալ է ինձ իսկ և ձեզ գոլ արիագոյն։

**ԻԵ.** Եւ ոչ ինչ տրտնջեալ, ո՛վ արք Աթենացիք,
առ այժմիկ եղեալս. զի դատապարտիցէք զիս. և առ
այլ ինչ բազում յարմարի ինձ, և ոչ անյոյս ինձ [3] եղև
այս իսկ՝ որ ինչ եղև. այլ յոյժ մանաւանդ պքանչա֊
նամ զերկաքանչիւրոց համարացս զեղեալ զթիւ. քան֊
զի ոչ կարծէի այսպէս սակաւուք պակասեալ գոլ՝ այլ
բազմօք. բայց այժմիկ, որպէս թուի, եթէ երեք [4]
միայն փոփոխեալ էր համարոցս՝ թերևս 'ի բաց էի
փախուցեալ։ Բայց սակայն 'ի Մելիտոսէ արդ և այժ֊
միկ 'ի բաց փախեայ. և ոչ միայն 'ի բաց փախեայ, այլ
ամենայնի յայտ է այս ինչ իսկ, զի եթէ ոչ 'ի վեր ե֊
լեալ էր Լիւկոս [5] և Անիւտոս ստորոգելով զինէն, թէ
և պարտապան էր հազար դրամոց՝ ոչ հաղորդելով
հինգերորդ մասինն համարոց։

**ԻԶ.** Պատուհասէ արդ զիս այրն մահուամբ. իցէ
իսկ. բայց ես արդ զո՞ ոք 'ի ձէնջ փոխանակ իմ պա֊
տուհասիցեմ, ո՛վ արք Աթենացիք. յայտ է թէ զար֊
ժանս իմ. զինչ՞րդ, զի՞նչ եմ արժանի կրել կամ հա֊
տուցանել. ուսեալ 'ի կենցաղումս հանդարտութիւն
ոչ բերել, այլ ծուլացեալ առ այնոսիկ առ որս և բա֊
զումք՝ որ առ ինչս [6] իսկ և տնօրէնութիւնս, և զօրա֊
վարութիւնս և հրապարակաբանութիւնս, և առ այլոն
յիշխանութեանց և 'ի միաբանն երդմանց, և հակառա֊
կութեանց յայնցանէ՝ որ առ քաղաքաւս լինին, վար֊

1 Յոր. ձախչէլ ու։ 2 Յոր. յորդոր դատել։
3 Յոր. ինչ, — համար նշանակէ՝ քուէայ, վիճակ։
4 Յոր. էրէստն. այս է՝ եթէ երեք քուէայք միայն վիճակեալ էին։
5 Յոր. Լիկոս։ 6 Յոր. առ որս և բազումս ոչ առ ինչս...։

կանելով զանձն իմ ճշմարտապէս գոլ հեզագոյն՝ քան
եթէ կեալ առ այսուիկ հաստանելով։ Աստանօր իսկ ոչ
եկի, ուր եկեալ՝ ոչ ձեզ և ոչ անձին իմոյ հանդեր-
ձեալ էի շահ ոչ մի ինչ գոլ. բայց առանձնապէս առ
իւրաքանչիւր ոք հաստանելով՝ բարերարելով զմեծա-
գոյնն բարերարութիւն, իբրու ես ասեմ, աստանօր
եկի. ձեռնարկելով զիւրաքանչիւր ոք 'ի ձէնջ հաւա-
նեցուցանել [1], ոչ և միոյ ուրուք փոյթ առնել նախ
քան եթէ անձին իւրոյ, իբրու զի լաւագոյն և խոհե-
մականագոյն լիցէ. և ոչ յայնցանէ որ ինչ քաղաքին
են՝ նախ քան եթէ նորին քաղաքին, և այլոցն այսպէս
ըստ նոյն յեղանակիս՝ փոյթ առնել։ Զի՞նչ արդ ար-
ժանի եմ կրել՝ այսպիսի գոլով. բարի ինչ, ո՜վ արք Ա-
թենացիք, եթէ ըստ արժանեաց իմոց ճշմարտու-
թեամբ պատուհասել. և այս իսկ այսպէս բարի է՝
որպէս և ինձ վայել է։ Զի՞նչ արդ վայել է առն տը-
նանկի, երախտաւորի, կարօտացելոյ պարապութիւն [2]
բերել առ ձերոյ կազմութեանն պատրաստութիւն. ոչ
ինչ է՝ որ ինչ մանաւանդ վայել է, ո՜վ արք Աթենա-
ցիք՝ այսպէս զայսպիսի այրն 'ի Պահարանի [3] պատուով
կերակրել. յոյժ իսկ յաւէտ՝ քան եթէ 'ի ձէնջ ոք
ձիով կամ երիվարօք կամ կառօք յաղթեալ էր յՈլոմ-
պիադսն [4]. քանզի այնպիսին զձեզ առնէ բարեբաստս
թուեցեալ գոլ, և ես՝ բարեբաստ գոլ. և նա իսկ կե-
րակրոց ոչ ինչ կարօտանայ, բայց ես՝ կարօտացեալ
եմ։ Արդ եթէ պարտ է ինձ ըստ իրաւանց անարժա-
նութեանն պատուհասիլ, այսուիկ պատուհասեցայց,
զի պատուոյ հաղորդեցայց և Պահարանի։

ԻԷ։ Թերևս արդ ընդ ձեզ և զայնոսիկ ասելով
հուպ թուիցիմ ասել որպէս յաղագս խանդաղատա-
նացն և պաղատանացն, յանդգնելով. բայց ոչ է այս-
պիսի, ո՜վ արք Աթենացիք, այլ մանաւանդ այսպիսի
ինչ։ Հաւանեալ եմ ես՝ ոչ և զմիոյ անիրաւելն 'ի
մարդկանէ կամաւ գոլ, այլ զձեզ զայս ինչ ոչ հաւա-
նեցուցանեմ՝ զի սակաւ ժամանակ տրամաբանեցաք
ընդ միմեանս։ Քանզի, իբրու ինձ թուի, թէ օրէն էր

1 Յոր. հաւատացնել։ 2 Յոր. պարապութեամբ։
3 Պահարան. πρυτανεῖον. Պատուանիստ ապարանք յԱթէնս։
4 Յոր. յՈլիմպիա գրէ։

ձեր՝ ոլպէս և այլոց մարդկան, յաղագս մահուան ոչ օր մի միայն դատել՝ այլ բազում, հաւանէիք արդեւք. բայց այժմիկ ոչ է դիւրին սակաւ ժամանակաւ մեծագոյն դաւաճանութեանց լուծանել։ Հաւանելով արդ ես ոչ զոք [1] անիրաւել, բազում ինչ կարօտանամ անիրաւել զանձն իմ, և ասել զանձնէ իմմէ՝ ես իբրու արժանի եմ այսմիկ չարի, և պատուհասել զանձն իմ ուսմամբ այսպիսով [2]. զի՞նչ երկուցեալ, քան եթէ զի ոչ կրիցեմ զայս ինչ՝ որոյ Մելէտոս զիս համարի, — զոր ասեմ ոչ գիտել՝ ոչ եթէ բարի է և ոչ եթէ չար —. փոխանակ այսորիկ արդ ընտրեմ յայնցանէ՝ զորս քաջ գիտեմ զի չարք են՝ այնուիկ պատուհասելով. որո՞վ արդ կապանօք, և զի՞նչ պարտ է ինձ կեալ ՚ի բանդի, և ծառայել հանապազ կարգեալ իշխանութեանն Մետասանցն։ Կամ ընչի՞ւք. և կապիլ մինչև հատուցից. այլ նոյն է ինձ՝ որպէս ես այժմիկ իսկ խօսէի. քանզի ոչ գոյ ինձ ինչս՝ զորս հատուցից։ Այլ արդ փախստեամբ պատուհասեցայց. զի թերևս այսուիկ պատուհասիցէք զիս։ Բայց բազում անձնասիրութիւն զիս ունիցի, եթէ այսպէս անբանագոյն եմ՝ իբրու ոչ կարեմ զայս ինչ խորհել, զի դուք իսկ քաղաքացիք իմ գոլով՝ ոչ հնար եղև ձեզ բերել զդեգերմունս իմ և զբանս, այլ ձեզ ծանրագոյնք եղեն և մախալից՝ որպէս խնդրէք ՚ի սոցունց այժմիկ ՚ի բաց փոխիլ. և այլք ոմանք արդեւք զսոսա բերիցեն դիւրաւ՝ բազում ինչ կարօտանս [3], ով արք Աթենացիք։ Գեղեցիկ ինձ արդ իցէ թերևս կենցաղս՝ այսպիսի հասակաւ առն գոլով իմ, և ելանելով և փոփոխելով յայլմէ յայլ քաղաք՝ և հալածելով կեալ։ Քանզի բարւք գիտեմ, զի ուր և չոգամ ասելով՝ լուիցեն ինձ համբակքն, որպէս և աստանօր. և զսոսա [4] իսկ եթէ հեռւիմ, սոքա զիս ՚ի բաց փրկեսցեն՝ հաւանեցուցանելով զծերագոյնսն. ապ՝ եթէ ոչ հեռւիմ՝ սոցունց հարքն իսկ և ընտանիքն վասն նոցա իսկ սոցունց։

ԻԸ. Բայց արդ թերևս ասիցէ ոք. Լռելով իսկ և հանդարտութիւն բերելով, ով Սոկրատէս, ոչ այդ-

1 Յօր. Ես զոք անիրաւել:
2 Ուսմն այսպիսով. այսպիսի իրօք:
3 Յն. կարօտանայ:
4 Յօր. զսոյա:

պխտի մեզ լիցես՝ ելանելով և կելով. այս ինչ արդ ա-
մենեցունց դժուարագոյն է՝ հաւանեցուցանել զոմանս
'ի ձէնջ. քանզի եթէ ասեմ վասն այն անհաւան լի-
նել է այս ինչ, և վասն այսորիկ անհնար է համդար-
տութիւն բերել, ոչ հաւանեսջիք ինձ՝ իբրու հեգնո-
ղի: Եւ եթէ ասեմ իսկ մեծագոյն բարի գոլ մարդոյ
զայս ինչ, իւրաքանչիւրում աւուր յաղագս առաքինու-
թեան բանս առնել, և այլոցն՝ յաղագս որոց դուք
լսէք ինձ տրամաբանելով, և քննելով զանձն իմ և
զայլս, — բայց առանց քննութեան կենցաղն առն՝ ոչ
է կենցաղավարելի —, զայսոսիկ տակաւին ասելով
իմ՝ նուազ ինչ իմ հաւանիք: Այլ այսոքիկ ունին իսկ
այսպէս, իբրու ես ասեմ, ո՛վ արք. բայց հաւանեցու-
ցանելն ոչ է դիւրին: Եւ ես համանգամայն ոչ եմ սո-
վորեալ զանձն իմ արժանացուցանել ոչ և միոյ չարի:
Զի եթէ է ինձ ստացուածք՝ պատուհասէի թերևս
ընչիւք որչափ հանդերձեալ էի հատուցանել, քանզի
ոչ ինչ վնասէի. բայց այժմիկ զի ոչ գոյ, եթէ ոչ ար-
դեւք որչափ և ես կարող իցեմ հատուցանել՝ այսչափ
կամիցիք զիս հատուցանել. քանզի թերևս կարող ի-
ցեմ հատուցանել մի մնաս արծաթոյ. այսչափ արդ
պատուհասիմ: Բայց սա Պղատոն, ո՛վ արք Աթենա-
ցիք, և Կռիտոն և Կռիտովուղոս և Ապողոդորոս, հրա-
մայեն ինձ երեսուն մնասից պարտապան լինել՝ սոցա ե-
րաշխաւորելով. պատուհասեցայց արդ այսչափ. և երաշ-
խաւորք ձեզ իցեն արծաթոյն արժանապարտք սոքա:

ԻԹ. Եւ ոչ առ բազում ժամանակ, ո՛վ արք Ա-
թենացիք, անուն ունիցիք և պատճառ յայնցանէ՝ որ
կամիցին պարսաւել զքաղաքդ, իբրու զՍոկրատէս
սպանիք զայրն իմաստուն: Քանզի ասիցեն զիս իմաս-
տուն գոլ. թէպէտ և ոչ եմ, կամելով զձեզ նախա-
տել: Արդ եթէ մնացեալ էին սուղ ինչ ժամանակ՝
ինքեամբ նոյն այս ինձ լեալ էր. քանզի տեսանէք
արդ զհասակս, զի աւանիկ 'ի կենցաղոյս հեռացեալ
և 'ի մահն հպեալ: Այլ ասեմ զայս ինչ ոչ առ ամե-
նեսեան 'ի ձէնջ, այլ առ այսոսիկ՝ որ զմահն ինձ հա-
մարիցիք [1]: Այլ ասեմ և զայս ինչ առ այսոսիկ նոյնս.

1 Այս է. վճռիցէք:

Digitized by Google

Թերեւս կարծէք զիս, ով արք, անկարողութեամբ յայսպիսի բանից ըմբռնեալք որով Թերեւս հաւանեցուցանել զձեզ եթէ Թուէր ինձ պարտ գոլ զամենայն ինչ առնել և ասել, իբրու 'ի բաց փախչել. 'ի պատուհասել բազում ինչ հեռի է յինէն կարօտանալն բանից, այլ անկարողութեամբ իսկ ըմբռնեցայ, սակայն ոչ բանից, այլ յանդգնութեան իսկ և համարձակութեան և չասելոյ առ ձեզ զայսպիսիս՝ որպէս ձեզ[1] Թերեւս հեշտագոյն են առ 'ի լսել, լալով իմ և ողբալով, և զայլս ինչ բազում առնելով իսկ և ասելով՝ զորս ինձ արժան ոչ է առնել, իբրու ես ասեմ. որպէս և սովորեալ էք դուք առ 'ի յայլոցն լսել: Այլ ես ոչ յայնժամ պարտ գոլ կարծեցի "ի սակս հնարեալ[2] ինձ վշտացն գործել ինչ անազատագոյն, և ոչ այժմիկ զղջացեալ եմ ես վասն այնպիսի առնելոյն ինձ պատասխանի. այլ յոյժ մանաւանդ յօժարիմ այսպէս պատասխանելով մեռանել, քան եթէ այնպէս կեալ: Զի ոչ 'ի հանդիսի և ոչ 'ի պատերազմի, ոչ ինձ և ոչ այլ ուրուք, ոչ և միոյ՝ պարտ է զայս ինչ հնարել, իբրու զի զամենայն ինչ առնելով 'ի բաց փախչի 'ի մահուանէն: Քանզի առ մարտսն բազում անգամ յայտ լինի, զի 'ի մահուանէն Թերեւս դիւրաւ ոք ճողոպրիցի, զզէնս 'ի բաց եդեալ, և 'ի ծառայութիւն հալածողացն դարձեալ. և այլ հնարք են բազում առ իւրաքանչիւրսն վշտաց՝ իբրու զի ճողոպրեսցի իսկ 'ի մահուանէ, եթէ յանդգնի ոք զամենայն ինչ առնել և ասել: Այլ ոչ այս ինչ իցէ դժուարս, ով արք, ճողոպրելն 'ի մահուանէ, այլ յոյժ դժուարագոյն է չարութիւն. քանզի վաղվաղակի ընԹացեալ 'ի մահուանէն 'ի բաց գնասցէ[3]: Եւ այժմիկ ես իբրու հեղգ գոլով և ծերագոյն՝ 'ի ձեռն հեղգագունի ուրուք ըմբռնեալ էի. և ըստորոգողքն իմ՝ իբրու չարք և երագունք գոլով՝ 'ի ձեռն փուԹոյ, չարին[4]: Եւ այժմ ես իսկ 'ի ձէնջ 'ի բաց գնացեալ լինիմ՝ մահու պարտա-

1 Յոր. խօսելոյ առ ձեզ... որպէս զձեզ Բերիա: 2 Յոր. հնարեալ:

3 Յն. քանզի երագագոյն քան զմահն ընԹանայ (չարուԹիւն): Եւ այժմիկ:

4 Այս է. և դատախազքն իմ իբրև հզօրք և երագունք գոլով՝ յերագագունէն ըմբռնեցան, 'ի չարուԹենէ:

պան գոլով, և սոքա 'ի ձեռն ճշմարտութեանն պարտ
ելով չարութիւն և անիրաւութիւն. և ես արդ անսամ
պատուհասիս, և սոքա. այսոսիկ իսկ այսպէս ուրեմն
պարտ էր ունել. կարծեմ զսոքա չափաւորապէս գոլ:

Լ. Բայց որ ինչ յետ այսորիկ, է ցանկութիւն
իմ՝ զի նախասացութիւն արարից 'ի սակս ձեր, ով
իմքդ դատապարտողք. քանզի եմ աւասիկ աստանօր,
ուր և մանաւանդ հասանելով մարդիկ նախասել[1] յօ-
ժարին՝ յորժամ հանդերձեալ իցեն մեռանել: Քան-
զի ասեմ, ով արք, որք և զիս իսկ սպանիք, զի պատու-
հաս ձեզ հասցէ վաղվաղակի յետ իմոյ մահուանն,
յոյժ դժուարագոյն, երդումն յԱրամազդ[2], քան ե-
թէ մահս՝ որ սպանէք դուք զիս: Քանզի այսմիկ զայս
ինչ գործեցէք կարծեցեալք 'ի բաց փոխիլ 'ի հատու-
ցանելոյ կշտամբանք կենցաղոյն. բայց ձեզ յոյժ ներ-
հակն պատահեսցի, իբրու ես ասեմ: Յոլովագոյնք ի-
ցեն՝ որ յանդիմանեն զձեզ, զորս այժմիկ ես ունէի,
և դուք ոչ խորհէիք. և դժուարագոյնք իցեն որչափ և
համբակագոյնքն[3], և դուք յաւէտաբար տրտնջէք:
Քանզի եթէ թուի սպանանելով զմարդիկ արգելուլ
'ի նախատելոյ զոմն 'ի ձէնջ, զի ոչ ուղղապէս[4] կե-
ցեալ էք, ոչ խորհիք ուղղապէս. զի ոչ իցէ, փոխել
սոցա ոչ զօրաւոր իսկ է և ոչ գեղեցիկ. այն գեղեցիկ
և դիւրին, ոչ զայլս արգելուլն, այլ զանձն իւր պատ-
րաստելն՝ իբրու զի լիցի լաւագոյն. զայսոսիկ արդ իմոյ
դատապարտողացդ դիւթելով ասացեալ՝ 'ի բաց փո-
խիմ:

ԼԱ. Իսկ յիրաւացուցիչքդ իմ հեզաբար թերևս
տրամաբանեցայց՝ վասն եղելոյ այսմիկ իրողութեանս.
'ի ժամուս՝ յորում իշխանքն ոչ պարապեն, և ոչ ես
չոգամ՝[5] ուր հասանելով պարտ է ինձ մեռանել: Այլ
ինձ, ով արք, այսչափ ժամանակ մնացէք. քանզի ոչինչ
արգելու զրուցատրութիւն առնել ընդ միմեանս՝ որ-
չափ պատշաճ է. քանզի ձեզ բարեկամաց ելով՝ ցու-
ցանել կամիմ զոր ինչ այժմիկ ինձ պատահեցաւ թէ
որպիսի՞ ինձ միտք ունի: Զի ինձ, ով արք դատաւորք,

1 Յոր. նախատել:
2 Այս է. Երդնում յԱրամազդ:
3 Որչափ և համբակագոյնք են:
4 Յոր. զի ուղղապէս:
5 Յոր. իշխանն... և ոչ ես չոգամ:

Digitized by Google

— քանզի կոչելով զձեզ դատաւորս՝ ուղղապէս թե-
րեւս կոչեցից,—, սքանչելի ինչ եղեւ. քանզի սովորեալն
ինձ դիւթականն դիւին [1] առ ամենայն յառաջագոյն
ժամանակաւն հանապազ ամենեւին, եւ ամենեւին առ
փոքունս իսկ հակակայեալ. եւ եթէ հանդերձեալ
ինչ իցեմ գործել ոչ ուղղապէս. բայց այժմիկ պա-
տահեցան ինձ զոր ինչ տեսանէքդ [2] եւ դուք աւասիկ,
զոր թերեւս կարծիցէ ոք գոլ զվերջինսն չարեաց. եւ
ինձ՝ ոչ յելանելն ընդ առաւօտն 'ի տանէ՝ հակակայե-
ցաւ նշանն աստուծոյ, եւ ոչ յորժամ ելանէի աստանօր
'ի հանդիսարանս, եւ ոչ 'ի բանիս՝ հանդերձելով իմ ա-
սել ոչ եւ միով իւիք. եւ մանաւանդ առ այլս բանս հա-
մանգամայն ասելով իմ՝ արգելոյր զիս բազում ան-
գամ. բայց այժմիկ ոչ իւիք առ այժմիկ գործոյս, ոչ եւ
միոյ գործոյ եւ ոչ բանի եղեւ ինձ ներհակ: Զի՞նչ արդ
ձառ գոլ խորհիմ. ես ասացից ձեզ. քանզի տագնապի
ինձ [3] պատահումնս այս բարի լինել, եւ ոչ իցէ իբրու
մեք ուղղապէս զմտաւ ածեմք՝ որչափ կարծեմք չար
գոլ զմեռանելն. մեծ ինձ նշան այսմիկ [4] եղեւ. քանզի
ոչ իցէ՝ իբրու զի ոչ էր ինձ հակակայեալ սովորեալ
նշանն, եթէ ոչ ես հանդերձեալ էի բարի ինչ գոր-
ծել:

ԼԲ. Խորհեսցուք արդ եւ [5] այսպէս, իբրու զի
յոյս բազում է բարի սմա գոլ. քանզի յերկոցունց
յայսցանէ մի ինչ է՝ էմեռանելն. կամ իբրու որ ինչ
գոլ, եւ ոչ եւ միոյ ուրուք ոչ եւ մի ինչ զգայութիւն ու-
նել մեռելոյն, կամ ըստ ասացելոցն՝ փոփոխումն ինչ
հանդիպի գոլով եւ տարաբնակութիւն [6] հոգւոյն 'ի
տեղւոյս յայսմանէ յայլ տեղի: Եւ կամ ոչ եւ մի իցէ
զգայութիւն, այլ որպէս քուն՝ յորում եւ ննջեսցէ ոք
եւ ոչ եւ մի ինչ երազ տեսանի, սքանչելի շահ թերեւս
իցէ մահն: Քանզի է կարծեմ. զի թէ իցէ ընտրել
ուրուք զայնպիսի գիշերն՝ յորում այսպէս ննջեացէ զի
եւ ոչ անուրջս [7] տեսանել. եւ զայլ գիշերսն իսկ եւ ըզ-

1 Յոր. դիւթական դիւրին. այս է. սովորեալ ինձ դիւթականն դի-
ւին, դիւթութիւնն դիւին, ըղձութիւնն դիւական:
2 Յոր. այժմիկ պատահեցան ինձ զոր ինչ տեսանիք:
3 Տագնապի ինչ. Թուի ինձ:
4 Յն. նշան՝ այս ինձ եղեւ:
5 Յոր. էս:
6 Յոր. գնա բնակութիւն...
7 Յոր. յանուրջ:

տիւսն իւրոյ կենցաղոյն հակադրելով այնմիկ գիշե-
րոյն, պարտ իցէ քննելով ասել՝ թէ որչափ լաւագոյն
և հեշտագոյն տիւս և գիշերս քան զգիշերն զայն [1] որ
կեցեալ է յիւրում կենցաղին՝ կարծեմ արդեօք, զի
ոչ ռամիկ ումեմն, այլ և մեծ թագաւորի դիւրահա-
մարս թերևս գտանել զսոսա առ այլս տիւս և գիշերս:
Արդ եթէ այսպիսի է մահն՝ շահ զնա ես իսկ ասեմ.
զի ոչ ինչ յոլովագոյն ամենայն ժամանակն երևեսցի
այսպէս գոլ՝ քան եթէ մի գիշեր. ապ՝ եթէ իբրու 'ի
բաց գնալ է մահն աստուստ 'ի յայլ տեղի, և ճշմա-
րիտ են ասացեալքն՝ իբրու զի անդ են [2] արդեւք ամե-
նեքեան մեռեալքն, զի՞նչ մեծագոյն բարի իցէ այ-
սուիկ, ով արք դատաւորք: Քանզի եթէ հասանելով
ոք 'ի դժոխս՝ 'ի բաց փոխեալ յայսցանէ՝ որ ասեն դա-
տաւորք գոլ, գտանիցէ զճշմարտապէս դատաւորսն,
որք ասեն դատել անդանօր, Մինոս իսկ և Ռադա-
մանթիւս, և Էակոս և Տրիպտողեմոս, և այլք՝ որչափ
'ի կիսաստուածոցն արդարք [3] եղեն առ յիւրեանց կեն-
ցաղսն. ուրեմն սիրելի իցէ թերևս աստուստ 'ի բաց
գնալն. կամ Որփեւսայ հանդիպելն իսկ, և Մուսէոսի
և Իսիոդոսի, և Հոմերոսի, որչափո՞ւ փոխան ընդունի-
ցի արդեւք 'ի ձէնջ զայս ինչ [4]. զի ես իսկ բազում
անգամ կամիմ մեռանել՝ եթէ այսոքիկ ճշմարիտ են:
Քանզի ինձ իսկ սքանչելի թերևս իցէ դեգերիլն աս-
տանօր, յորժամ և հանդիպիցիմ Պալամեդէոյ և Էան-
տոսի՝ Տեղամոնոսի որդւոյն, և եթէ այլ ոք 'ի նախ-
նեացն 'ի ձեռն անիրաւին դատաստանին մեռեալ է.
հակադրելով զիմս կիրս առ նոցայն՝ կարծեմ իբրու ոչ
իցէ թախանձելի: Եւ զմեծագոյն իսկ, զայնոսիկ որ
անդ են՝ քննելով իսկ և խնդրելով, որպէս և զայսոսիկ
որ աստանօր են շրջել, թէ ո ոք 'ի նոցունց իմաստուն
իցէ, և ո ոք կարծէ իսկ և է ոչ, և որչափու արդեւք,
ով արք դատաւորք, ընդունեսցի քննելն զայն որ եած
զզօրսն 'ի վերայ քաղաքին Տրովադայ, կամ զՈդիւսևս,
և կամ զՍիսիփոս [5], և կամ զայլս բիւրինս եթէ ասի-
ցէ ոք՝ զարս և զկանայս ընդ որս անդանօր [6] տրամա-

1 Յօր. քան զգիշերն այնմիկ: 2 Յօր. անդէն:
3 Յօր. արդ որք եղեն: 4 Յն. ընդունիցի արդեւք 'ի ձէնջ ոք:
5 Յօր. զՏրէսիփոս: 6 Յօր. ընդ յանդանօր:

Digitized by Google

բանիւ և 'ի միասին գոլ և քննել, անմարթ թերևս [1] իցէ բարեբաստութիւն ճշմարտապէս. արդ սակս այսորիկ՝ այնոքիկ որ անդանօր են՝ ոչ սպանանեն. քանզի և այլօք իրօք բարեբաստագոյնք են՝ որ անդ, քան եթէ այսոքիկ՝ որ աստանօր, և զայլ ամենայն ժամանակս են անմահք. եթէ ասացեալքն իսկ ճշմարիտ են։

ԼԳ. Այլ՝ ով արք դատաւորք, առ մահն գոլ քաջայոյս, և զմի զայս խորհել ճշմարիտ զի ոչ իցէ առն բարւոյ չար և ոչ ինչ, ոչ կելով իսկ և ոչ վախճանելով, և ոչ ծուլացեալ լինին յաստուածոցն սորա իրողութիւնքն. և ոչ իմս այժմիկ ընքեամբ եղեն, այլ ինձ յայտ է այս ինչ՝ զի աւասիկ մեռանել և յիրողութեանց 'ի բաց փոխել՝ էր ինձ լաւագոյն։ Վասն այսորիկ և զիս [2] ոչ ուրեք 'ի բաց արգելու նշան [3], և ես իսկ առ դատապարտողսն իմ և ստորոգողսն ոչ ամենևին դժուարանամ. և մանաւանդ ոչ այսուիկ մտածութեամբ դատապարտէին զիս և ստորոգէին, այլ կարծեցեալք վնաս ինչ գործել. վասն այսորիկ արժան է բամբասել զսոսա։ Եւ այսչափ իսկ զսոսա աղաչեմ, զորդիքս իմ՝ յորժամ հասանիցեն 'ի հասակ՝ պատուհասեցէք, ով արք, այսպէս տրտմեցուցանել զսոսա՝ որպէս և ես զձեզ տրտմեցուցանէի. եթէ ձեզ թուիցին՝ կամ ընչից կամ այլոյ ուրուք յառաջագոյն փոյթ առնել, քան եթէ առաքինութեան. և եթէ կարծիցեն՝ ինչ գոլ ոչ և մի ինչ գոլով՝ նախատիցէք զսոսա այսպէս, որպէս և ես զձեզ. զի ոչ փոյթ առնեն այնոցիկ՝ որոց պարտն է, և կարծեն ինչ գոլ՝ գոլով և ոչ միոյ ուրուք արժանիք։ Եւ եթէ զայսոսիկ առնիցէք՝ յիրաւի ախտացեալ իցեմ առ 'ի ձէնջ ես իսկ և որդիքս իմ։ Նւ արդ քանզի ժամ է գնալոյ՝ ինձ իսկ մեռանելով և ձեզ կելով. բայց եթէ ո՛ր 'ի մէնջ հասցեն առ լաւագոյն իրողութիւնս, ամենայնի անյայտ է, բայց միայն յաստուծոյ։

1 Յօր... ուբնէր եա։ 2 Յօր. զէ։
3 Այս է՝ ընտանի Ոգին Սոկրատայ, որ միշտ նմին թելադրէր զարդարն և զպատշաճ։

Digitized by Google

# ՏԻՄԷՈՍ

## ՊԱՏՃԱՌՔ ՄԱԿԱԳՐՈՒԹԵԱՆ, ՆԱԽԱՍՈՒԹԻՒՆ ՏՐԱՄԱԲԱՆՈՒԹԵԱՆ ՏԻՄԷՈՍԻ ՊՂԱՏՈՎՆԻ

Քանզի երթեալ Սոկրատէս 'ի Պեռէա 'ի սակս Բենտիտեացն տօնի. և տրամաբանեաց անդր՝ յաղագս քաղաքավարութեան ընդ Պոլեմարքոսի՝ որդւոյն Կեփաղոսի և ընդ Գղաւկոնի և ընդ Ադիմանտոսի և ընդ Թրասիմաքոսի հռետորի. զկնի աւուր միոյ դարձեալ տրամաբանէր եկեալ 'ի քաղաքն ընդ Տիմէոսի և ընդ Եռմոկրատիսի, և ընդ Կրիտիաս, և առ սոքօք՝ ընդ միոյ այլ ումեմն Ճարտասանի. և պատմեաց սոցա զնախասացեալ տրամաբանութիւնն՝ զոր 'ի Պեռէական տրամաբանեաց, որպէս և գրեալ է յիւրում քաղաքավարութեան խօսս. և աղաչէր զսոսա զի 'ի վաղիւն փոխանակ տրամաբանութեանն տացէ ինչ 'ի նոցունց փոխարէնս՝ լսել ինչ նորագոյն: Եւ ժողովեալ սոցա 'ի միասին յաւուր երրորդի 'ի սկսմանէ վարդապետութեան նորա 'ի Պիւռիա: Վասն որոյ յայտ առնէ աստուստ՝ եթէ յերրորդում աւուրն էր. քանզի յասելն իւրում Սոկրատէս 'ի Ճառին քաղաքական՝ այսպէս. եթէ իջայ ես երէկ 'ի Պիւռիա. և ասէ դարձեալ ցնոսա. եթէ Որք երէկ հիւրքդ էիք՝ այսօր պարտիք խրախճանութիւն մեզ առնել: Իսկ սոքա ամենեքին ոչ պատահեցան աստ. քանզի 'ի չորիցն մի ոմն ոչ գոյր անդր, 'ի պատճառէ իմն տկարութեան պակասեալ:

Digitized by Google

# ՊՂԱՏՈՆԻ

## ԱՌ ՏԻՄԷՈՍ՝ ՍԱԿՍ ԲՆՈՒԹԵԱՆ [1]

---

Սոկր. Զորրորդ ելով ձեր արդեօք, որոց զտրա-
մաբանութիւնդ, իբրու հիւրք եղելոյ երէկ, իսկ այսօր
կոչնատերք. ով սիրելի Տիմէոս, մինն պակասեալ՝ ուր
արդեօք իցէ։

Տիմէոս. Տկարութիւն եհաս 'ի վերայ նորա, ով
Սոկրատէս, որակութիւն իմն ախտի. եթէ ոչ՝ զկարդ-
կամաւ պակասէր յայսպիսի տրամաբանութենէ։

Սոկր. Ապա ուրեմն քեզ և դոցա է լնուլ զպակա-
սելոյն մասն։

Տիմէոս. Այո, ըստ զօրութեան մերում ոչ ինչ
պակասեսցուք. քանզի և ոչ է իրաւացի, երէկ վայե-
լեալք 'ի քումն խրախճանութեան. և այսօր ոչ յօժա-
րութեամբ առնել քեզ պատուասիրաբար զխրախճա-
նութիւնս։

Սոկր. Յիշէ՞ք արդեօք. ո՞րչափ և յաղագս որո՛յ ա-
սել ձեզ կամեցայ։

Տիմէոս. Յիշեմք զոմանս. և զոր ոչն՝ մերձ ելոյ քո
վերստին դարձեալ ծանուսցես մեզ. մանաւանդ՝ ե-
թէ ոչ դժուարեսցիս, 'ի սկզբանէ դարձեալ համա-
ռօտեսցես մեզ զնոյնս. զի յաւէտ առ մեզ հաստա-
տեսցի։

Սոկր. Այսպէս և արարից. երէկ առ 'ի յինէն ա-
սացեալ յաղագս քաղաքավարութեան բանիցն՝ այս
ինչ էր սկիզբն, թէ ո՛րպէս կամ ո՛րպիսի արանց առա-
քինեացն պարտ է լինել զքաղաքս։

[1] Անձինք Տրամախօսութեանս են Սոկրատէս, Կրիտիաս, Տիմէոս և Երմոկրատէս։

Տիմէոս. Եւ զայսոսիկ յոյժ, ով Սոկրատէս, զասացեալն 'ի քէն 'ի մտածութեան մերում պարփակեալ ունիմք:

Սոկր. Ապաքէն ո՞չ զմշակաց, և որչափ այլ արհեստք են, յառաջագոյն 'ի յայնմ' բաժանեցաք 'ի պատերազմողացն սեռէն:

Տիմէոս. Այո՛:

Սոկր. Եւ ըստ բնութեանն հատուցեալք իւրաքանչիւր զպատշաճն արհեստին, մի միայն արհեստ զայսոսիկ ասասացուք' որոց առաջի ամենեցուն պարտ է կալ և պատերազմել. իբրու զի կարօտանայ քաղաքն սոցա պահպանութեանն. եթէ յարտաքնոց ոմն և կամ 'ի ներքնոց հասցէ առ 'ի գործել սմա չար և դատել իսկ հեզաբար զայնոսիկ' որ ընդ ձեռամբ սոցա են. իբրև զբարեկամք իւրեանց. և մանաւանդ դժուարիլ 'ի մարտս այսոցիկ' որ թշնամիք սոցա են:

Տիմէոս. Եւ հասարակաց լիցի այդոքիկ:

Սոկր. Զի և բնութիւն հոգւոյն պահպանողացն թուի ինձ գոլ այսպէս, համանգամայն ցասմնատեսակ, և իմաստասէր զանազանապէս. զի առ երկաքանչիւրսն հնար իցէ սոցա' ուղղաբար լինել հեզք և դժուարինք:

Տիմէոս. Այո:

Սոկր. Եւ սնունդ որպիսի՞. ո՞չ ապաքէն կրթականաւ և երաժշտականաւ, և ամենայն ուսմամբք պատշաճ է սոցա սնանիլ:

Տիմէոս. Եւ քաջ իսկ արդեօք:

Սոկր. Եւ այսպիսի սնուցելոցս' ասացաւ 'ի մէնջ, ոչ արծաթ և ոչ ոսկի և ոչ այլ ինչ ստացուածս յատուկ իւրեանց համարիլ գոլ պարտ, այլ իբրու օգնականս վարձ առնուլ պահպանութեանն' առ 'ի ձեռն սոցա կեցելոցն, և զայն' որչափ ողջախոհիցն չափաւոր է. և թոշակս լիցի սոցա հասարակաբար 'ի միասին բնակելոց, և առ միմեանս հաղորդելոց, և արութեան փոյթ առնել յամենայն ժամ' յայլոց յամենայն արհեստից պարապեալք:

Տիմէոս. Ասացաւ և այդ իսկ:

Սոկր. Եւ յաղագս կանանց յիշեցաք, իբրու թէ արանցն բնութեամբ մերձ իցեն' որոց շարայարին,

Digitized by Google

և արհեստք սոցա հասարակաց՝ ըստ պատերազմի և ըստ այլոց վարուց։

Տիմէոս. Եւ այդ այդպէս ասացաւ։

Սոկր. Աստանօր և յաղագս մանկարարութեան այսպէս ասացաք, զի հասարակաց իցեն ամուսնութիւնն և մանկունքն, և ամենեցուն իցէ օրէն և հնար՝ զի մի՛ ոք երբէք զծնեալն 'ի նոցանէ իւր գոլ ծանիցէ. այլ համարեսցեն ամենեքին զոքա զամենայն հոմածինս, և քորք և եղբարք զայնոսիկ՝ որ ներքոյ իցեն չափաւոր հասակին. և զվերագոյնքն և զյառաջագոյնքն՝ ծնօղք և նախածինք. և ստորինքն՝ թոռունք և մանուկ թոռանց։

Տիմէոս. Այո՛, և զայդ՝ յիշեցեր՝ ըստ որում ասացերդ։

Սոկր. Եւ այս ըստ զօրութեանն ուղիղ[1] լինիցին իբրու արիք բնութեամբ, որպէս յիշեցաք զիշխանքն և զիշխանուհիքն շարամերձիլ առ միմեանս՝ ծածուկ և յայտնապէս. և 'ի միմեանց վիճակեալս. զի այսպէս չարքն զատեալք և բարիքն, ընդ նմանիս իւրեանց շարամերձեալք՝ ոչ ինչ թշնամութիւն լինիցի վասն այնորիկ, զբախտ համարելով պատճառ զուգաւորութեանն։

Տիմէոս. Յիշեմք զի այդպէս է։

Սոկր. Եւ զայս ասացաք, եթէ զծնունդք բարեացն սնուցանելի է 'ի նոյն քաղաքի, իսկ զչարեացն յայլում լռելեան փոխեալ քաղաքի. և յորժամ աճիցեն՝ դիտաւորութեամբ զարժանաւորսն միշտ դարձուցանել վերստին։ Եւ եթէ անարժան իցէ յերկաքանչիւրոցն՝ 'ի վատթարագունիցն վայրսն փոխարկել։

Տիմէոս. Այդպէս էր։

Սոկր. Արդ անցաք ընդ բանիւն, որպէս երէկ՝ գլխաւորաբար. եթէ փափաքի՞ք ինչ տակաւին յայնցանէ, ով սիրելի Տիմէոս, իբրու պակասեալ։

Տիմէոս. Ո՛չ, այլ նոյն իսկ են ասացեալքն, ով Սոկրատէս։

Սոկր. Լուիցէք արդեւք զոր յետ այսոցիկ՝ որ ա-

1 Յոր. ուղիղ։

*սացաք յաղագս քաղաքավարութեան, թէ որպէս ես առ սա ախտացեալ հանդիպիմ. և նման է այսպիսոյ ումեմն կիրս՝ որով ես ախտանամ, որպէս եթէ ոք տեսեալ ուրուք զքարի կենդանիք կամ 'ի ձեռն կենդանագրութեան գործեալ, և կամ կեալ[1] ճշմարտապէս՝ զի իցեն 'ի հանդարտութեան. և հասցէ 'ի ցանկութիւն՝ տեսանել զսոսա շարժութեամբ, և յայնցանէ՝ որ մարմնականացն պատշաճ է՝ աշխատել ինչ նահատակութիւն. զնոյնս և ես ախտացայ առ քաղաքիս՝ զորմէ ասացաք. և զի վայելչապէս ասացից զբանս, լսեցից արդ նահատակութիւն[2], զոր աշխատի քաղաք առ այլոց քաղաքաց հասեալ 'ի պատերազմունս, և 'ի մարտին զպատշաճաւորն հատուցեալ խրատուն և սննդեանն՝ ըստ ներգործութեանցն գործոյն և ըստ մեկնութեան բանիցն և պատասխանւոյն առ իւրաքանչիւր 'ի քաղաքացն։*

*Իսկ զայսոսիկ, ով Կրիտիաս և Եռմոկրատէս, յանձն իմ ես ոչ վստահանամ, գուցէ ոչ ինձ հնար՝ զայրն և զքաղաքն՝ ըստ պատշաճին ներբողել։ Եւ իմս՝ ոչ ինչ սքանչելի. այլ և 'ի նոյն կարծիսս հասեալ եմ յաղագս այնոցիկ՝ որ յառաջագոյն էին քերթողք, և որ այժմ իսկ են։ Եւ զայս ոչ եթէ զքերթողացն անարգեմ զսեռ, այլ յամենայնի յայտ է՝ եթէ նմանական ազգն որով սնեալ է՝ զայնոսիկ նմանեցուցանէ դիւրաւ և քաջապէս։ Իսկ զայնոսիկ որ արտաքոյ են սննդեանն իւրաքանչիւրոցն՝ դժուարին է գործով, և դժուարագոյն է բանիւք՝ բարեօք նմանեցուցանել։ Զճարտասանացն իսկ սեռ՝ բազմաբանից[3] և գեղեցկագունից այլոց յաւէտ հմտագոյն վարկանիմ։ Այլ զանգիտեմ՝ գուցէ — 'ի քաղաքականման մոլորական գոլով և բնակութիւն իւր առանձին ոչ բնակեալ —, և ոչ է 'ի դէպ իմաստասէր արանց կամ քաղաքականաց, այն որ ինչ 'ի պատերազմունսն և 'ի մարտսն գործին, զի բանիւք և գործով հանդիպեալք իւրաքան-*

1 Յոր. կեալս։

2 Յն. և զի հեշտեաւ ունկն մատուցից՝ յորժամ ոք պատմեսցէ զնահատակութիւնս, զոր նահատակի քաղաքն, զնոյն մարտուցեալ առ այլ քաղաքս, վայելչապէս հասեալ 'ի պատերազմ։

3 Այս է. բազում բանից։

չիւրոցն ստուգապէս՝ գործիցեն զսոսա և կամ ասի-
ցեն։ Մնաց արդեօք [1] ձերոյ ունակութեանդ սեռ,
համանգամայն երկաքանչիւրոց՝ բնութեամբ և սնըն-
դեամբ հաղորդեալ։ Քանզի սա իսկ Տիմէոս [2], 'ի քաջ-
օրէն գոլովն քաղաքէ՝ որ է 'Լօկռիդոս՝ որ յԻտալիա, և
գոյիւք և ազգաւ ոչ է վերջին այնոցիկ՝ որ անտանօր [3]
են. քանզի զմեծագոյն զիշխանութիւնս և զպատիւսն
քաղաքին այնմիկ ընձեռեալ է. և իմաստասիրու-
թեամբ, ըստ որում ինձ թուի, ամենեցուն ծայրաքար
վերագոյն է։ Եւ զԿռիտիաս ամենեքեան՝ որ աստա-
նօր եմք՝ գիտեմք, որ ոչ է տգէտ ասացելոցս՝ առ 'ի
մէնջ։ Իսկ զԵռմոկրատէս 'ի յաղագս բնութեան և
սննդեանն բան առ այսոսիկ ամենայն՝ գիտեմք գոլ
հնարաւոր, քանզի այն ինչ զորմէ բազումք վկայեն՝
հաւատարիմ է [4]։ Վասն որոյ ես երեկ զմտաւ ածեալ,
յորժամ աղաչէիք զիս՝ զբանն որ յաղագս քերակա-
նութեան [5] է, վերստին ասել, յօժարապէս շնորհէի
ձեզ. գիտելով՝ զի որ յետ այնոցիկ 'ի կարգին է բանս,
ոչ ոք քան զձեզ՝ եթէ կամիցիք՝ [6] գեղեցկագոյն հա-
տուսցէ. քանզի 'ի պատերազմ վայելչապէս հասու-
ցեալք զքաղաքն, զամենայն պատշաճաւորսն դուք
միայն հատուցէք արդեօք՝ յայսցանէ՝ որ այժմ են.
խոստացեալ արդ և առ միմեանս՝ հաղորդաբար որո-
նեալք առանձնապէս հատուցէք ինձ զիմոց բանից
փոխարէնս [7]։ Պատրաստ եմ արդ ես զարդարեալ վասն
այսոցիկ՝ զառ 'ի ձէնջ ասացեալսն ընդունել։

Եռմոկրատէս ասէ։ Արդ՝ որպէս ասաց սա Տի-
մէոս, ով Սոկրատէս, յօժարութենէ ոչինչ պակասես-

1 Յօր. Մնացորդօք։

2 Տիմէոս իմաստասէրն անուանի՝ էր 'ի Լոկրիս քաղաքէ Իտա-
լիոյ։

3 Յօր. միշտ գրէ՝ աստանուր, անդանուր...

4 Յն. Իսկ Եռմոկրատեայ յաղագս բնութեան և սննդեան, զի առ
ամենայն ինչ բաւական իցէ այս, հաւատալ պարտ է 'ի վկայել
բազմաց։

5 Յն. (և որպէս վերագոյնն ասաց) Քաղաքավարութեան։

6 Յն. ոչ ոք՝ եթէ դուք կամիցիք՝ գեղեցկագոյն հատուսցէ։

7 Յն. յայսցանէ՝ որ այժմ են։ Արդ ասացեալ զկարգեալսն՝ հրա-
մայեցի ձեզ զոր և արդ ասեմս։ Արդ խոստացարուք միաբան՝
քննեալ 'ի ձեզ յինքեանս՝ հատուցանել ինձ այժմէն զբանիցս փո-
խարէնս կամ զվարձս։

Digitized by Google

ցուք. և պատճառ ոչ ունիմք և ոչ մի՝ առ 'ի չկատարել[1] զասացեալդ։ Վասն որոյ և երէկ վաղվաղակի աստուստ գնացեալք յիջեվանս մեր առ Կրիտիաս, քանզի առ նմա ագանիմք. մինչդեռ տակաւին 'ի ճանապարհին էաք՝ զայսոսիկ զնոյնս դիտէաք. և սա մեզ բան պատմեաց՝ զոր 'ի նախնեացն էր լուեալ. զոր և այժմ ասա ընդ իս, ով Կրիտիաս, զի հանդերձ մեօք ընտրեսցէ՝ եթէ ճահաւոր է 'ի կարգաւորութիւն բանիս, եթէ ոչ։

Կրիտ. Քանզի զայս պարտ է առնել թէ և երրորդ ընկերոյս մերոյ Տիմէոսի թուեսցի։

Տիմէոս. Թուի իսկ։

Կրիտ. Լուր արդեօք բանիս, ով Սոկրատէս, որ է յոյժ անտեղի, և ամենևին իսկ հաւատարիմ, որպէս եօթանցն իմաստնագոյնն Սողոն երբեմն ասաց. քանզի էր սա ընտանի և յոյժ սիրելի Դրոպիդոսի[2] հաւոյն իմոյ. որպէս և նա բազում անգամ ասէ յիւրում քերթուածսն. և ընդ Կրիտիաս[3] հաւն մեր ասացեալ, որպէս պատմէր մեզ ծերն, եթէ մեծ և սքանչելի գործք էին այսմ քաղաքիս, որք և 'ի ձեռն ժամանակի և ապականութեան մարդկան եղեալ էին անյայտք. բայց մին քան զամենայն մեծագոյն այս է, զոր յիշեալք վայելչապէս՝ քեզ իսկ շնորհս հատուսցուք. և զաստուածուհին համանգամայն 'ի տօնիս իրաւապէս և ճշմարտապէս ներբողեսցուք օրհնութեամբ։

Կրիտ. Բարւոք ասես, այլ ո՞ր է գործս այս, որ ոչ իբրու ասացեալ միայն՝ այլ իբրու ճշմարտապէս գործեալ 'ի քաղաքիս այսմիկ՝ իսկզբանէ պատմէիր 'ի լսելիսն Սողոնի։

Կրիտ. Ես արդ ես ասացից. բանին լսեալ, ոչ 'ի յառնէ համբակէ։ Քանզի էր յայնժամ Կրիտիաս՝ որպէս ինքն ասէր՝ գրեթէ հուպ ամաց իննից, և ես էի տասնամեայ՝ յորում հասակի կուրեացի գոլ հան-

1 Յոր. կատարել։

2 Յոր. Դրոպիդոսի. ('ի լուս. նշանակեալ էր դ 'ի վերայ ո տառի. զոր կամէր դնել թերևս ընդ մէջ ի և ո տառից)։

3 Յոր. ընդ Կրիտիաս։



Digitized by Google

*դիպէի յԱպատուրեանցն [1]։ Արդ սովորութիւնն տօնին որ հանապազ էր, և յայնժամ պատահեցաւ, զի նահատակեցուցանէին հարքն զմանկունս իւրեանց 'ի հանդներգութիւնս։ Բազմաց արդ քերթողաց բազում քերթուածս ասացան, և մանաւանդ ըստ այնմ ժամանակին՝ զՍողոնի քերթուածսն, զի նոր [2] էին, բազումք 'ի մանկանցն երգեցաք։ Ասէ ոմն 'ի փռատուացն [3], որք են վերագոյն պաշտօնեայք տաճարին —, ոչ գիտեմ եթէ ճշմարտապէս նմա այնպէս թուիւր, և ոչ գիտեմ եթէ Կռիտիայ շնորհք մատուցանէր —, յոյժ իմաստագոյն եղեալ զՍողոն խնդրուածս իւր [4], և քան զամենայն քերթողսն ազնուագոյն։ Իսկ ծերն յոյժ հեշտացեալ, որպէս յաւէտ յիշեմ, և ժպտեալ [5] ասէ. Ո՛վ Ամինանդրէ, եթէ ոչ վարկպարազի, այլ փութապէս ձեռնարկութիւն արարեալ էր 'ի քերդուածան, որպէս և այլք ոմանք. և զբանն զոր յԵգիպտոսէ աստանօր հասեալ՝ կատարեալ էր. և եթէ՝ ոչ 'ի ձեռն բազում փորձութեանց, որ յայլոց չարեաց և յայսցանէ որ եգիտ՝ աստանօր հարկէր հասեալ նմա պղերգութեան [6]. ըստ իմում կարծեացս՝ ոչ Եսիոդէս և ոչ Հոմերոս և ոչ այլ ոք 'ի քերթողացն եղեալ էր ընտրելագոյն քան զսա։ Եւ զի՞նչ էր բանն, ով Կռիտիա։ Պատասխանի ետ. վասն մեծագունիս այս և անուանաւորագունիս քան զայլս բազումս և իրաւացի գործոյս՝ զոր գործեաց քաղաքս այս. և 'ի ձեռն ժամանակի և ապականութեան գործողացն՝ ոչ բաւեաց աստանօր բանս։*

1 Քանզի չէք այս 'ի յոյնն, խորև պարապուցն համարեալ կամ մեկնութիւն բանից Պղատոնին՝ եդաք 'ի ծանօթութիւնս. Եւ յԱպատուրեանս փոն է յԱթէնս (Յոր. յԱթէնայ) յիշատակելով զՊիտնէասս, և յայնմ փօնին կարգէին զմանկունս պաշտօնէայս տաճարին, որք անուանէին Կուրէացիք։ Ապատուրեան կամ խաբեբէից տօն յԱթէնս բաժանէր յերիս հանդէսս, յորում վերջինն կոչէր կուրեացի (Κουρεῶτις) զի 'ի սմա և մանկտի աթենացւոց եռամեայք և չորեքամեայք գային 'ի ժողովս եղբայրութեանցն (φρατόρες)։

2 Յոր. նորա։

3 Յոր. կապուտացն, — Փռատոռքն φρατορες կոչեցեալք էին Եղբայրութիւնք յԱթէնս 'ի խնամս կրօնական պաշտաման կարգեալք։

4 Յն. 'ի քերթուածս իւր։

5 Յն. ժմտեալ, ժպտեալ։

6 Յն. և յայսցանէ՝ զոր եգիտ անդանօր հասեալ, (ոչ) հարկեցաւ անփոյթ առնել. ըստ իմում կարծեաց...

Digitized by Google

*Սոկր.* Ասա ինձ իսկզբանէ, թէ զի՞նչ և ո՞րպէս, և յումմէ՞նց [1] ճշմարտապէս լուեալ ասէր Սողոն։

*Կրիտ.* Է ոմն տեղի յԵգիպտոս՝ որ անուանի Դելտայ։ Եւ առ գագաթն սորա՝ Նիղոսի վտակն հերձեալ բաժանի [2], որ և անուանի սախսական բաշխումն [3], և լինի բաշխմանս այսմիկ քաղաքին որ անուանի Սաիս [4], ուստի դիմեալ էր Ամասիս թագաւորն. և բնակչացն քաղաքիս այսմիկ աստուած ոմն առաջնորդէ՝ եգիպտացի լեզուաւ անուանեալ Նէիթ, և ելլենացի լեզուաւ՝ որպէս նոցա բանն է՝ Աթենայ [5], և են սոքա յոյժ աթենասէրք և յեղանակաւ ոմամբ ընտանիք իսկ սոցա գոլ ասեն։ Առ սոսա գնացեալ Սողոն՝ յոյժ եղև պատուական։ Եւ արդ յաղագս նախնեացն հարցափորձելով սա երբեմն քննէր սակս այսոցիկ զհմտագոյնս 'ի քահանայից, և գրեթէ ոչ զանձն իւր և ոչ զայլ ոք Ելլենացւոցն երևեցուցանէր գիտել ինչ յաղագս նախնեացն։ Եւ արդ կամեցեալ 'ի միասին ածել զսոսա և յաղագս այսոցիկ զբոյց առնել, այսինքն է յաղագս Փոռոնեոսի և Նէոբայ, որ էին քան զջրհեղեղն յառաջագոյն, և յետ ջրհեղեղին դարձեալ յաղագս Դեւկալիոնոսի և Պիւռայի կնոջ սորա, իբրու ասէ առասպելն, և զառ 'ի սոցանէ ծնեալն ազգատոհմել [6]։ Եւ զամացն, եթէ որքան էին՝ յորում սոքա էին, յիշելով՝ և զամանակսն թուել. և ահա ոմն 'ի քահանայիցն, որոյ անունն էր Պատէնեիտ [7], և ինքն յոյժ 'ի հնոցն, ասէ ցնա. ով Սողոն, ելլենացիքդ դուք միշտ մանկունք էք, զի ծեր ելլենացի ոչ գոյ։ Լուեալ արդ [8] սա զայս՝ ասէ, եթէ զի՞արդ կամ ո՞րպէս դու

1 Յն. զորոց։ 2 Յօր. Նէղոս. 'ի վերայն լցեալ բաժանի։

3 Սախսական բաշխումն. Սայիսական գաւառն (Σαιτικὸς νομός)։

4 Յն. և գաւառիս այսմիկ մեծի՝ քաղաք Սայիս, ուստի էր Ամասիս թագաւորն։

5 Արդարև նոյն են Նէյթ և Աթենաս դիքն, որպէս և բառիցն նոյնութիւն ցուցանէ, զԱթենայն յաջմէ ընթերցեալ առանց ձայնաւորաց։

6 Այս է. ազգաթուել։

7 Անուն քրմին Թէպէտ չէք 'ի յոյնն և ոչ յԵւսեբին 'ի քրոնիկոնն, որ զայս յիշատակէ, այլ թուի իբր Պաշտօնեայ Նէիթայ կամ Աթենասայ։ Բայց թերևս թարգմանն զմեկնութիւնն եւս ընդ սմա խառնեալ է, որ ասէ Պափէնէիփ անուն։

8 Յօր. ու գոյ լսել։ Արդ սա...

Digitized by Google

զայս ասէ: Եւ ասէ ցնա, զի համբակք էք հոգւով ամենեքին, և ոչ ունիք 'ի միտս ձեր 'ի հին լրոյ գիտութիւն, և ոչ ուսումն ամանակաւ ծերացեալ: Եւ պատճառն սոցա այս է, բազում ապականութիւնք եղեն մարդկան և այլ լինելոց են, հրով և ջրով մեծագոյնս և թիւրինս այլք սակաւագոյնս: Քանզի և առ 'ի ձէնջ այս ասի, իբրու երբեմն Փայեթոն՝ որդի արեգական՝ լծեալ զկառս հօր իւրոյ [1] զերկրայինս հրով կիզեաց, և ինքն 'ի սաստկութենէ ջերմութեանն ապականեցաւ [2]. այս իսկ առասպելի ձև ասի, սակայն ինքս ճշմարիտ, և այնոցիկ՝ որ շուրջ զերկրաւս և երկնովքն բերին՝ փոխաբերութիւնք [3]. և 'ի ձեռն երկար ժամանակաց՝ այլ բազումք են լեալ ապականութիւնք հրով: Յայնժամ որք 'ի լերինս և 'ի բարձրաւանդակ վայրս և 'ի ցամաքայինս ունին զբնակութիւնս՝ դիւրագոյն ապականին քան զայն որ գետս և ծովս բնակեալ են: Բայց մեզ Նեղոս յայլ յամենայնէ է կեցուցիչ. և յայնժամ յայնմ վտանգէ եղև մեզ փրկիչ: Եւ յորժամ աստուածքն զերկիր ջրով մաքրեն և ողողեն, այնոքիկ՝ որ 'ի լերունքն իցեն անդէորդք և հովիւք՝ կեցցեն 'ի ջրոյ անտի. և որք 'ի քաղաքն իցեն՝ որպէս ձերն են, 'ի ձեռն գետոց 'ի ծով արկցին: Իսկ արդ՝ յայսմ գաւառի ոչ յայնժամ, ոչ այլ երբէք 'ի վերուստ ջուրք հոսեալ են, այլ մանաւանդ 'ի ներքոյ բնակութեան մերոյ անցանել ամենայն ջուրք են բնաւորեալ. աստուստ և վասն այսոցիկ պատճառաց՝ աստանուր վայրս կեցեալ [4]: Եւ ճշմարտապէս յամենայն տեղիք, ուր ոչ յանկարծակի ձմեռն կամ սաստիկ տապ խափանիցէ յաւէտ կամ սակաւ, միշտ իցէ սեռ մարդկան: Եւ որչափ առ ձեզ կամ աստանուր կամ այլուր տեղւոջ՝ զոր լրով իսկ ճանաչեմք, զինչ և լեալ է բարի, և կամ որ այլ ինչ ունի տարբերութիւն (հրաշա-

1 Յն. լծեալ զկառս հօր իւրոյ, և զի ոչ կարէ ընդ հօրն ճանապարհ վարդել՝ զերկրայինս հրով կիզեաց:

2 Յն. և ինքն շանթահար լեալ ապականեցաւ:

3 Յն. խոտորութիւնք, զարտուղելն 'ի շաւղաց:

4 Յն. վասն այսոցիկ պատճառաց յաստանօր վայրս կեցեալքն հնագոյնք ասին. և ճշմարտապէս...

Digitized by Google

փառ) [1], աստանօր ամենայն 'ի նմանէ գրեալ են և 'ի տաճարս մեր կան և մնան: Իսկ որ ինչ առ ձեզն են և յայլ տեղիք կան՝ այժմ կազմեալ յամենայն ժամ հանդիպեցան գրել, ամենայն ինչ որոց կարօտանան քաղաքք: Սակայն ըստ սովորութեան՝ շրջաբերութիւնն ամացն իբրու ցաւոց [1] սաստկութեամբ երկնային հոսմամբն 'ի վերայ հասեալք զգրեալսն և զհրմուտս նոցա կործանեաց. և մնացին այնոքիկ 'ի ձէնջ որ աներաժիշտքն էին և առանց դպրութեան: Վասն որոյ դարձեալ իսկզբանէ իբրու մանկունք եղէք՝ ոչ գիտելով ոչ յայնցանէ որ աստանօր, և ոչ յայնմանէ՝ որ առ ձեզ, որչափ և էին 'ի հին ժամանակն: Եւ արդ այդ զոր դուդ ազգատոհմես, ով Սողոն, և զոր ասացեր յաղագս ձերոյ իրի՝ քան զառասպել մանկանց սակաւ ինչ ունի տարբերութիւն. քանզի զերկրի ողողումն յիշէք դուք մի, և այլ և յառաջագոյն բազումք են եղեալ. տակաւին և զգեղեցկագոյն և զառաքինի սեռն մարդկան՝ 'ի ձերում գաւառին, ոչ գիտէք, եթէ լեալ է. յորոց դուդ և ամենայն քաղաքն իսկ արդ էք, մնացեալք ձեր իբրու սերմ ինչ սակաւ: Բայց այս 'ի ձէնջ զանխլեալ է, վասն եղելոցն յաղագս բազումս և գրեցելոցն վաղձանելոյն և անյայտ լինելոյն:

Էր իսկ, ով Սողոն, նախ քան զմեծագոյնն ջրով ապականութիւն, այդ քաղաքդ Աթենացւոց արի առ 'ի պատերազմունս, և ըստ ամենայնի քաջօրէն զանազանապէս. որոյ գեղեցիկ գործք և քաղաքավարութիւնք՝ գեղեցկագոյն քան զամենայն քաղաքաց գոլ ասեն, քան զայնոցիկ՝ որչափ մեք ներքոյ երկնի ընկալեալ եմք լուր: Եւ լուեալ զայս Սողոն սքանչացաւ, և եդեալ զամենայն յօժարութիւն և զփոյթ աղաչէր զքահանայսն ստուգութեամբ զամենայն յաղագս նախնի քաղաքավարութեանցն պատմել սմա: Եւ ասէ ցնա քահանայս. Մախանք ոչ գոյ, ով Սողոն, այլ 'ի սակս քո ասացից և քաղաքին ձերոյ. մանաւանդ 'ի սակս աստուածուհոյն, որ զձերն իսկ քաղաք և զայս

1 Փակագծեալ բառդ մեկնութիւն է Տոբէերուբիւն բառին ըստ յունին. այս է որ այլ ինչ հրաշափառ իցէ:

2 Յոր. ցաւոց:

վիճակ իւր առեալ մնոյց և խրատեաց յառաջագոյն քան զքաղաքս մեր [1]: Եւ այսմ աշխարհի զարդուս առ մեզ՝ սրբազան գիրս ութ հազար ամաց թիւ գրեալ է. իսկ յաղագս ինն հազարին եղելոցն քաղաքացեաց, ասացից արդ սակաւուք և յաղագս օրինացն և գործոց նոցա զոր ինչ գեղեցկագոյն գործեցաւ: Եւ ըստուգապէս կարգաւ յաղագս ամենայնի յետոյ պարապմամբ գիրս առձեռն ընկալեալ՝ ասասցուք: Արդ զօրէնսն դիտեա դու զոր էին առ սմա. քանզի բազում յարացոյց յայնցանէ՝ որ առ ձեզ յայնժամ էին՝ աստանօր այժմ գտանես: Առաջին իսկ զքահանայիցն սեռ՝ յայլոցն 'ի բաց որոշեալ. և յետ այսորիկ զշինողացն, զի ըստ ինքենէ իւրաքանչիւր՝ ընդ այլում շինողի ոչ խառնի. և ապա անդէորդացն [2] և որսորդացն, յետ որոյ երկրագործացն: Եւ մարտական սեռն՝ որ է ամենեցուն յայլոցն որոշեալ. զի սոցա այլ ոչինչ էր փոյթ՝ բայց միայն յաղագս պատերազմին, որպէս կարգեալ էր 'ի ձեռն օրինացն: Տակաւին և սպառազի-թեան նոցա դպրութիւնքն, նիզակաց և վահանաց՝ որովք մեք 'ի վերայ ասիացւոցն էաք նախ սպառազինեալք. քանզի աստուածուհին 'ի տեղին յայնմիկ՝ առ ձեզ եցոյց զիւր ներգործութիւնն: Վասն որոյ և յաղագս խոհեմութեան տեսցես զօրէնսն՝ թէ որպէս եդ փութով վաղվաղակի 'ի սկզբանն, և յաղագս ամենայն զարդու նորա, մինչև ցդիւթականն և ցբժըշկական առ 'ի յողջութիւն, սոքա [3] յաստուածուստ պարգևեալ 'ի մարդկայինս գտան, և որչափ այլ ուսմունք սոցա հետևին՝ ստացեալ զամենայն: Զայս իսկ յայնժամ զամենայն զարդարումնս և զշարակարգութիւնս աստուածուհին յառաջագոյն իբրու զառաջինս զձեզ զարդարեալ 'ի սմա բնակեցոյց, ընտրեալ զտեղիդ՝ յորում էք դուք ծնեալք, և զբարեխառնութիւն զօդոյն տեսեալ 'ի սմա, զի արք խոհեմականք

1 Յն. Մնոյց և խրատեաց. զառաջինն՝ որ առ ձեզ հազար ամօք, յԵրկրէ և 'ի Հեփեստեայ, առեալ զսերմն 'ի ձէնջ. և զսա՝ զկնի ուրեմն: Այլ այսր յօրինուածոյս որ առ մեզս եղև, 'ի սրբազան գիրս ութհազար ամաց թիւ գրեալ կայ:

2 Յօր. օրէնորդացն: 3 Յօր. սորա:

թերիցէ։ Իբրու պատերազմասէր և իմաստասէր գոլով աստուածուհին՝ զտեղին զայնմիկ որ ընդունելի և յարմարական արք հանդերձեալ էր բերել զնա յառաջագոյն ընտրեալ[1] բնակեցոյց։ Բնակեցաւ արդ օրինօք այսպիսեօք վարեալք. և տակաւին մանաւանդ քան օրինեալ իսկ քան զամենայն մարդիկ գերագոյնք եղեալ արութեամբ, իբրու ծնունդք աստուածոցն և առ 'ի սոցանէ խրատեալք, զի. այնպիսեացն այնպիսիք գոլով վայելչագոյն է։ Բազում արդ և մեծամեծ գործք ձերում քաղաքին աստանօր գրեալ զարմանալիք են. սակայն մի է ամենեցուն մեծագոյն և արութեամբ գերագոյն։ Զի ասեն գրեալքն, թէ որչափ դադարեցոյց զօրութիւն քաղաքն ձեր՝ զգոռոզութեամբ գնացեալ համանգամայն 'ի վերայ ամենայն Եւրոպիոյ և Ասիոյ, արտաքուստ դիմեալ յԱտլանդիկոս ծովէ. քանզի յայնժամ գնալի էր ծովն՝ որ է անտանուր. զի ունէր կղզի առ բերան իւր՝ որ կոչի իբրու դուք ասէք Եռակլեայ արձանք. և կղզին էր լիբէացւոց հաւասար, և քան զԱսիա մեծագոյն[2], յորմէ գնալի էր առ այլ կղզիսն, այնոցիկ՝ որ յայնժամ կամէին գնալ. և 'ի կղզեացն առ 'ի հանդէպ ամենայն ցամաքն, որ է շուրջ կարմիր ծովուն[3]. և քանզի որչափ ներքոյ են ասացեալ բերանոյդ՝ նաւահանգիստ երևի, և նեղ ինչ[4] ունի մուտ նաւորդութեան, և այն իսկ է ճշմարտապէս ծով, և ցամաքն՝ որ շուրջ է զծովովն՝ յիրաւի ասի ցամաք, քանզի երկաքանչիւրք մեծք են։ Եւ 'ի կղզւոջս յայսմիկ, որ կոչի Ատլանդական, մեծ զօրութիւն թագաւորաց եկն 'ի միասին, կալեալ զամենայն կղզին և զայլս բազում կղզիս, և զմասունս ցամաքին. առ այսոցիկ իշխեցին տակաւին լիբէացւոց՝ մինչև ցԵգիպտոս, Եւրոպայ՝ մինչև ցՏիւռենացւոց։ Այս իսկ ամենայն զօրութիւնս 'ի միասին հաւաքեալ՝ զվայրն իսկ որ առ ձեզ է և զայս իսկ որ առ մեզ է և զոր ներքոյ բերանոյն այնմիկ է տեղին՝ միով երբեմն դիմելով ձեռնարկեաց ծառայեցուցանել։ Յայնժամ

1 Յօր... դրեալ։

2 Յօր. քանզի Ասիա մեծագոյն։

3 Յն. որ է շուրջ զբուն կամ զճշմարիտ ծովովն։

4 Յօր. նեղիւ։

իսկ ձերոյ քաղաքին զօրութիւնն, ով Սողոն, առ ամե-
նայն մարդիկ՝ ուժգին արութեամբ եղև երևելի։ Զի
ամենեցուն առաջնորդեալ քաջութեամբ և արհես-
տիւք որչափ են 'ի պատերազմունս, և Ելլենացւոցն ա-
մենեցուն պաշտպանեալ, և 'ի հարկէ միացեալ՝ քան-
զի այլքն 'ի բաց կացին ապստամբեալք, 'ի վերջինսն
վարեցաւ վշտագնութիւնս. և յաղթեալ եկելոց 'ի վե-
րայ նորա, մեծ եցոյց զօրութիւն, և զայնոսիկ՝ որ ոչ
էին տակաւին ընդ ծառայութեամբ ստորանկեալ՝
արգելոյր 'ի գերութեան [1] և զայլս որչափ բնակեալ
եմք ներքոյ սահմանացն եռակլեանց՝ զամենեսին 'ի
միասին ազատեաց։ Իսկ յետոյ ժամանակի՝ յանկար-
ծակի ջրհեղեղի եղելոյ, և զտիւ մի և զգիշեր դժուա-
րապէս ողողեալ ամենայն մարտականն յանկարծակի
ընկղմեցաւ ընդ երկրաւ. և Ատլանդական կղզին նոյն-
պէս ընկղմեցաւ 'ի ծովն և անյայտ եղև. վասն որոյ և
այժմ անհուն [2] և անքննելի եղև անդանօր ծովն,
քանզի տիղմ անեզր առ խորս սորա գոլով՝ աննաւար-
կելի առնէ զսա։

Կռիտիաս ասէ, իսկ արդ զասացեալսն, ով Սո-
կրատէս, 'ի ձեռն հնոյն Կռիտիայ՝ 'ի լսելիսն Սողոնի,
իբրու համառօտ ասելի է՝ լուար։ Եւ երէկ յորժամ
ասէիր դու յաղագս քաղաքավարութեան. և արանցն՝
զորոց ասէիր, սքանչանայի ես, յիշեալ զայսոսիկ՝ զոր
արդ ասացի. և զմտաւ ածեալ իբրու 'ի դիցն ումեքէ
և կամ 'ի բախտէ, և ոչ 'ի դիտողութենէ հաւասարի
բազում յայնցանէ՝ որ ասաց Սողոն. սակայն ոչ կամե-
ցայ վաղվաղակի ասել, զի ոչ ճշգրտութեամբ յիշէի,
վասն երկարութեան ժամանակին։ Արդ մտածօրէն
յանձն իմ խոկացայ, զի պարտ էր ինձ առանձինն
հաստատել, և այնպէս պատմել հաւաստի. վասն որոյ
'ի վաղիւն խոստացայ քեզ՝ զհրամայեալսն ինձ երէկ.
առաջնորդել գործոյս, որ է ամենեցուն մեծագոյն, և
բան վայելչական կամաց քոց պարգևել. չափաւորա-

1 Յոր. 'ի գր''-է։

2 Անհուն, այս է որոյ չմնաց հուն; անցք, անգնալի, անճանա-
պարհ (ծով)։

պէս ունելով զկարողութիւն [1]։ Այսպէս իսկ, որպէս սա երէկ ասաց, փաղփաղակի գնալով առ սոսա՝ մի ըստ միոջէ զմտաւ ածեալ յիշէի. և գնացեալ՝ գրեթէ զամենայն դիտեալ 'ի գիշերին, հասայ 'ի վերայ սոցա. քանզի մանկանցն ուսմունքն սքանչելի ունին յիշատակ. զի ես զոր երէկն լուայ՝ ոչ գիտեմ եթէ կարացից զամենայն վերստին յիշել։ Բայց զայս զոր ամենևին յառաջագոյն 'ի ժամանակի լուայ, սքանչացայց՝ եթէ յինէն ձողոպրեսցի բան. քանզի յայնժամ խաղալեօք և բազում հեշտութեամբ էր իմ լսողութիւնն, և ծերն մեծ յօժարութիւն՝ առ 'ի ուսուցանել զիս, և բազում անգամ վերստին հարցանելովս, իբրու նըշանակք ինչ դրօշմանիկնով [2] անջնջելի գրոյ յարատևականք եղեն առ իս բանքն։ Եւ սոցա իսկ փաղփաղակի ընդ առաւօտն պատմէի զնոյն, զի և սոքա հանդերձ ինձ [3] կարող լինիցին պատմութեան բանիս։ Եւ արդ 'ի սակս որոյ այս ամենայն ասացաւ, պատրաստ եմ ես առ 'ի լսել զայս, ով Սոկրատէս, ոչ միայն առ տեղիս տեղիս, այլ իբրու լուայ՝ զամենայն ըստ իւրաքանչիւր, և զքաղաքացիսն և զքաղաքն, զոր դու մեզ երէկ իբր առասպելաւ պատմեցեր, այժմ փոխարկեալք 'ի ճըշմարտութիւն՝ եկայք դիցուք, եթէ այն քաղաքն՝ այս էր. և զքաղաքացիսն՝ զոր դու զմտաւ ածէիր, ասասցուք գոլ ճշմարտապէս զնախածինս մեր, յաղագս որոյ ասէր քահանայն, և յարմարիցեն [4] արդեւք, և ոչ վրիպեսցուք՝ ասացեալք զսոսա՝ զայնոքիկ գոլ զոր յայնմ ժամանակին էին. և հաւորդաբար [5] յանձն առեալք մեք ամենեքին փորձ արասցուք՝ զվայելչականն ըստ կարի մերում յաղագս որոյ հրամայեցեր մեզ՝ հատուցանել. և դիտելի իսկ է, ով Սոկրատէս, եթէ ըստ համձարի [6] է բանս այս՝ եթէ զայլ ոմն փոխանակ սորա խնդրելի է։

1 Յն. զհրամայեալսն ինձ երէկ. եդեալ 'ի մտի, որ մեծագոյնն է յամենայն յայսպիսի գործս, բան ինչ տալ խորհրդոց մտացն վայելչական, և այնու չափաւորապէս աջողեալ։

2 Յոր. դրօշմանիկնով. — այս է խարան, նշան խարելով։

3 Այս է. ընդ իս։

4 Յոր. յարմարեսցին։

5 Այս է. 'ի միասին։

6 Ըստ համձարի. ըստ մտաց, 'ի դէպ մտացն խորհրդոց։

Digitized by Google

Սոկր. Եւ զո՞ր արդեօք, ով Կրիտիա, փոխանակ սորա յաւէտագոյն ընկալցուք, որ և հասեալ զոհիս ասատուածուհւոյն՝ վասն ընտանի գոլոյն՝ մանաւանդ վայելչական է. ոչ առասպելս ստեղծանելով, այլ ճշմարիտ բան գոլով, որ է ամենևին մեծագոյն: Զի որպէս կամ ուստի զայլս գտցուք բանս՝ թողեալ զսա, քանզի ոչ գոյ. և արդ երկաքանչիւրք բարեբախտեալք ձեզ ասել պարտ է, և ինձ փոխանակ իրիկեան բանիցն հանդարտութիւն բերելով լսել:

Կրիտ. Դիտեա արդ զհիւրընկալութեան քո տրամադրութիւն, ով Սոկրատէս, ըստ որոյ և մեք իսկ տրամակայեալ եմք. զի թուեցաւ մեզ՝ զի Տիմէոս իսկ աստեղաբաշխականագոյն գոլով քան զմեզ, և յաղագս ամենեցուն բնութեան գիտելոյ մանաւանդ արարեալ գործ, ասել յառաջագոյն, սկսեալ յայսմ աշխարհի լինելոյն, և կատարեալ զբանն 'ի բնութիւն մարդկան: Եւ ես յետ սորա՝ իբրու առ 'ի սմանէ ընկալեալ զմարդիկ եղեալ բանիւ, և առ 'ի քէն խրատեալք զանազանապէս զոմանս 'ի սոցանէ, և ըստ Սողոնի բանին և օրինին՝ 'ի ներքոյ ածեալ զսոսա առ մեզ իբրու առ դատաւորս՝ առնել քաղաքացիս քաղաքիս [1] այսմիկ, իբրու զի սոքա էին Աթենացիքն, յաղագս որոյ ազդեաց՝ մինչդեռ անյայտք էին սոքա՝ սրբազան գրոցն համբաւն. արդ այսուհետև իբրու յաղագս քաղաքացեացն և Աթենացւոցն՝ առնելի իսկ են բանքս:

Սոկր. Կատարելապէս իսկ և պայծառաբար կարծեմ՝ եթէ ընկալայց զբանիցդ զփոխատրութիւն. քո իսկ գործ է ասել [2] ով Տիմէոս, կոչելով քեզ յօգնականութիւն զաստուածսն:

Տիմէոս. Այլ, ով Սոկրատէս, զայսոսիկ՝ ամենեքին որք և սուղ ինչ ողջախոհութեան հանդիպեալքն [3], յամենայն դէմս փոքու և մեծ իրողութեան [4], առ աստուած միշտ կարդան: Իսկ մեք յաղագս ամենեցուն այսոցիկ բանս առնել հանդերձեալք՝ եթէ եղեալ են

1 Յոյն. փաղափս:

2 Յոյն. քո խոյ գործել:

3 Յոյն. էմփ:

4 Այս է՝ յամենայն իսկ 'ի դիմելս մերում 'ի փոքր կամ 'ի մեծ իրողութիւն:

՚և եթէ անեղ են, եթէ ոչ ամենևին վրիպեալք ի-
ցեմք՝ հարկ է մեզ զաստուածքն և զաստուածուհիքն
ըղձմամբ կոչել յօգնականութիւն, զի ըստ կամաց նո-
ցա, մանաւանդ և ըստ մերոյ տենչման ասասցուք ըզ-
բանս։ Եւ աստուածքն իսկ ըստ ինքեանց մաղթեալք
լիցին և հաշտեալք. և մերս լինիցի մաղթութիւն, ըստ
որում ուսանիք դուք դիւրաւ։ Եւ ես ըստ որոյ զմտաւ
ածեմ, մանաւանդ յաղագս առաջիկայիցս, ՚ի ճահ
հատուցեալ զբանս ցուցայց։

Է իսկ, ըստ որում ինձ թուի, նախ բաժանելի
այս ինչ։ Զի՞նչ՝ որ է միշտ և լինելութիւն ոչ ունի. և
զի՞նչ է որ լինի իսկ, և ոչ երբէք է։ Սակայն որ իմա-
ցութեամբ բանիւ պարունակելին է՝ միշտ ըստ ինքեան
է. և այն որ թուիցի զգայական գոլ անբան կարծ-
մամբ, և լինի և կորուսանի ճշմարտապէս, ոչ երբէք
է. և ամենայն եղեալ՝ ՚ի պատճառէ ումեմնէ ՚ի հար-
կէ լինի. զի ամենայն իրի անհնար է առանց պատճա-
ռի ՚ի լինելութիւն հասանել։ Եւ որոյ գոյացուցիչն
առ նոյնպէս գոլն միշտ հայի, այնպիսով ումեմն վա-
րեալ յարացուցիւ՝ զտեսակն և զզօրութիւն նորա գոր-
ծիցէ, գեղեցիկ ՚ի հարկէ այնպէս զամենայն կատա-
րէ. և որոյ արարիչն ընդ լինելութեամբ է, նաև լինելի
յարացուցիւ վարեալ ոչ է ազնիւ։ Եւ արդ ամենայն
երկին կամ աշխարհ կամ եթէ այլ ինչ ընդունի ա-
նուանակոչութիւն, զայն ինչ և անուանեսցի։ Եւ արդ
որոնելի է մեզ նախ, վասն որոյ առաջի իսկ մեր կայ
իսկզբանէ և դիտելի է. զի որպէս՝ էր միշտ և լինե-
լութեան ոչ և մի ունէր սկիզբն եթէ եղև՝ ՚ի սկզբա-
նէ սկսեալ ուրուք. եղև, զի երևելի է և շօշափելի և
մարմին ունի. և ամենայն այսպիսիքս զգալիք են. և
զգալիքն՝ կարծեօք պարունակեալ զգայութեամբ, ե-
ղեալք և լինելիք [1] երևին, և զեղեալսն ասասցուք ՚ի
պատճառի ուրուք [2] հարկ գոլ լինել։ Իսկ արդ զհայրն
և զարարիչն ամենեցուն գտանել գործ է. և գտեալ՝
ամենեցուն պատմել անհնար է։ Զայս ինչ արդ դար-
ձեալ պարտ է որոնել յաղագս նորին. թէ ըստ որո՞յ

1 Յօր. լինելք։

2 Այս է. ՚ի պատճառէ իմեքէ։

Digitized by Google

'ի յարացուցիցն նիւթող սորա գործէր զսա, առ այն՝ որ նոյնպէս և ըստ ինքեան գոյր, եթէ ըստ եղելոյն։

Իսկ արդ եթէ բարի է աշխարհս, և գոյացուցիչ սորա բարի, յայտ է թէ առ իբրու մշտնջենաւորն հայի։ Ապա եթէ (զոր չէ ումեք պարտ ասել) առ լեալն, ամենայնի հաւաստի՝ եթէ առ մշտնջենաւորն[1]. քանզի գեղեցկագոյն 'ի յեղելոցս՝ վեհագոյնն ամենեցուն ունի պատճառ։ Եւ այսպիսի իսկ եղեալ՝ բանիւ և խոհեմութեամբ պարունակելի, և ըստ ինքեան ունող գոյացաւ։ Եւ այսոցիկ այսպէս լինելով, ամենայն հարկ է՝ այսմ աշխարհի պատկեր ուրուք գոլ, և մեծի արդեօք գոլ ումեմն սկսեալ ըստ բնութեան սկզբան։ Աստանօր արդ յաղագս պատկերիդ և յաղագս յարացուցի նորին սահմանելի է։ Իբրու զի ուրեմն բանքս որոց պատմողք են՝ սոցունց են իսկ և ազգակիցք։ Իսկ արդ տևականին և ստուգագունին և անհանճարաւ երևելոյն՝[2] տևականք և անվթարք, որչափ և հնար է առանց կշտամբանաց և յաղթութեան՝ պատշաճ է գոլ՝ բանից[3]. քան զնա իսկ ոչ ինչ գոլ նուազագոյն, և բանիցն այնոցիկ, որ յաղագս այնորիկ է, որ զնման նորա ունի։ Սակայն պատկեր է, պատշաճագոյնս և ըստ նորին համեմատութեան. զի զոր ինչ ծնունդ առ գոյութիւն է՝ զնոյն ինչ է և ճշմարտութիւն առ հաւատ։

Արդ՝ ով Սոկրատէս, զուժգինս քան զբազումս[4] յաղագս՝ աստուածոցն, և այսոցիկ ամենեցուն լինելութեան, եթէ ոչ կարասցուք ամենևին զինքեանս նոցունց խոստացեալ և հաստատուն բանս հատուցանել՝ մի սքանչասցիս. այլ եթէ ոչ քան զայլ ուրուք նուազագոյն բերիցուք բանք, սիրել[5] պարտ է. և յիշել՝ իբրու ես ասացողս և դուք դատաւորքդ՝ բնութիւն մարդկային ունիմք, և վասն այսորիկ զպատշաճաւոր

1 Յօր. Եթէ ոչ առ մշտնջենաւորն։

2 Յն. ստուգագունին և մտօք երևելոյն։

3 Յն. որչափ 'ի դէպ իցէ անկշտամբելի բանից. և անշարժիցն՝ ոչ իւիք արժան է յետնեալ գտանիլ։

4 Յն. Արդ եթէ, ով Սոկրատէս, բազմաց բազում ինչ ասացեալ յաղագս աստուածոցն և...

5 Այս է ըստ յն. շատանալ, բաւական համարել։

Digitized by Google

ճառն ընդունել վայելչագոյն է՝ և ոչինչ քան զայն տակաւին խնդրել վեհագոյն։

Սոկր. Ո՛վ Տիմէոս, ըստ ամենայնի որպէս հրամայես՝ քաջ ընդունելի է մեզ։ Արդ զնախերգանդ քո ընդունեցաք սքանչելապէս, զբանդ [1] արդ մեզ ըստ կարի կատարեա։

Տիմէոս. Ասասցուք արդեօք, 'ի ձեռն որոյ պատճառի զլինելութիւնն և զայս ամենայն՝ բաղկացուցիչն բաղկացոյց։ Բարի էր, և բարւոյ՝ ոչ երբէք ոչ ինչ յաղագս ոչ ուրուք նախանձ լինիցի. և սորա արտաքս գոլով, զամենայն մանաւանդ զոր ինչ կամեցաւ լինել՝ հուպ էին 'ի նա։ Զայս իսկ լինելութեան և զարդու [2] մանաւանդ, եթէ սկիզբն իսկապէս առ 'ի խոհեմական արանց ընկալցի՝ ուղղագոյն ընդունիցի արդեօք։ Քանզի կամեցեալ աստուած զամենայն բարի, և ոչ մի ինչ ըստ զօրութեան գոլ յոռին իսկ, այսպէս զամենայն որչափ երևելի էր՝ առեալ, որ հանդարտութիւն ոչ ունէր՝ այլ շարժեալ էր ստէպ և անկարգաբար, ածէ սա 'ի կարգաւորութիւն՝ յանկարգութենէ, զայս ինչ՝ քան զայն վեհագոյն համարեալ։ Եւ մարթելի ո՛չ էր և ոչ [3] իցէ վեհագունին՝ այլ ինչ գործել բայց 'ի գեղեցկագունէն։ Զայս ինչ խորհեալ գտանէր յայնոցիկ՝ որ երևելիքն էին ըստ բնութեան [4], ոչ ինչ անիմանալի, այնորիկ՝ որ միտս ողջ ունիցի՝ գեղեցկագոյն գործ գոլ երբէք. և մտաց առանց հոգւոյ գոլ անհնար էր։ Վասն այսորիկ՝ զմիտս 'ի հոգւոջ և զհոգի 'ի մարմնի բաղկացուցեալ 'ի միասին նիւթէր. զի այսպէս՝ զայն որ գեղեցկագոյնն էր, ըստ բնութեան, և գործ քաջագոյն գործիցէ։

Արդ այսպէս՝ ըստ վայելչագոյն բանին՝ ասելի է զաշխարհս զայս կենդանի [5], շնչաւոր, մտօք և ճշմարտութեամբ [6] 'ի ձեռն աստուծոյ լինել նախախնամու-

1 Յն. զօրէնսն այսուհետև կատարեա։ 2 Այս է՝ աշխարհի։

3 Յօր. և մարթելի ոչ էր. ոչ իցէ...։

4 Այս է. Զայս ինչ խորհեալ գտանէր յայնոցիկ՝ որ երևելիքն էին ըստ բնութեան, ոչ ինչ անիմանալի, քան զնա՝ որ միտս ողջ ունի՝ գեղեցկագոյն ինչ գործ մարթիցի լինել...

5 Յօր. զաշխարհս զայսմիկ կենդանի։

6 Յն. շնչաւոր, մտաւոր արդարև 'ի ձեռն աստուծոյ նախախնամութեանն լինել։

Digitized by Google

թեանն։ Եւ սորա եղյ, զայն՝ որ այնոցիկ 'ի կարգի են՝ մեզ ասելի. որո՞յ 'ի կենդանեաց 'ի նմանութիւն զսա բաղկացուցիչն շաղկապեաց։ Իսկ արդ այնոցիկ որ մասին տեսակաւ բնաւորեալ են՝ ոչ և միոյ արժանացուսցուք։ Քանզի անկատար թուեցեալ՝ ոչ երբէք լինիցի բարի. այլ որոյ են այլ կենդանիք մի ըստ միոջէ և ըստ սեռից մասնկունք, սմա՝ քան զայլոց ամենեցուն՝ զսա նմանագոյն դոլ դիցուք։ Զի զամենայն իմանալի կենդանիքն նա յինքեան պար առեալ ունի, որպէս և այս աշխարհս՝ զմեզ, և որչափ այլ երևելի կենդանիք բաղկացեալ են։ Զի իմանալեացն գեղեցկագունին, և կատարելոյն ըստ ամենայնի մանաւանդ զսա աստուած նմանեցուցանել կամեցեալ, կենդանի մի երևելի՝ զամենայն որչափ սորա ըստ բնութեանն ազգակիցք են կենդանիք՝ ներքոյ իւրոյ ունելով, բաղկացոյց։ Ո՞րպէս արդ ուղղապէս, մի՞ երկին յառաջագոյն ասացաք, եթէ բազումք և անեզրք ասել ուղղագոյն էր. մին՝ եթէ ըստ յարացուցին իցէ գոյացեալ։ Զի այն որ պարունակէ զամենայն որչափ իմանալի կենդանիքն են, յետ այլոյ՝ երկրորդ երբէք ոչ իցէ։ Զի դարձեալ եթէ այլ դոլ շուրջ զնովաւ կարօտանայ կենդանի, ապա մասն այնոցիկ սա իցէ, և ոչ տակաւին երկաքանչիւրոցն [1] իցեն, այլ այնմ՝ որ պարունակեալն է և սա նմանեալ ասի [2] ուղղագոյն։ Եւ արդ զի սա ըստ միութեանն նման իցէ ամենակատար կենդանւոյն, վասն այսորիկ ոչ երկու և ոչ բազում [3] արար արարիչն աշխարհս, այլ մի այս միածին երկինս եղեալ, է և իցէ. մարմնատեսակ արդեօք և երևելի, և շօշափելի պարտ է եղելոյն դոլ։ Եւ առանց հրոյ ոչ երբէք լինիցի ինչ երևելի, և ոչ շօշափելի՝ առանց հաստատնոյ ուրուք, և հաստատուն՝ առանց երկրի ո՛չ։ Վասն որոյ 'ի հրոյ և յերկրէ զամենեցուն սկսեալ աստուած բաղկացուցանել զմարմինս՝ առնէր։ Եւ երկուօք միայն բաղկացուցանել առանց երրորդի ոչ է հնար [4]. քանզի շաղկապի

1 Յօր. երկաքանչիւրոց։

2 Յօր. որ պարունակեալն է, սա ընդհանրականի. իսկ արդ նմանեալ այլում ասի...

3 Յօր. ոչ երկու այլ բազում...

4 Յօր. երկուսոք միայն բարեօք (թերևս՝ արդեօք) բաղկացուցանել առանց երկրի ոչ է հնար։

Digitized by Google

ումեմն 'ի միջին պարտ է երկոցունց 'ի միասին ժողով [1] լինել։ Եւ 'ի շաղկապիցն գեղեցկագոյն այն է, որ զինքն և զշաղկապեալսն՝ մին միմեանս արասցէ. և զայս բնաւորեալ է համեմատութիւն գեղեցկապէս կատարեալ։ Քանզի յորժամ թուոյ երից, և կամ տեսակաց [2] և կամ զօրութեանց՝ որոց և իցէ արդեօք միջինն, զայն ինչ՝ որ և առաջինն առ սմա է, զնոյն և սա առ վերջինն. և դարձեալ, զոր ինչ վերջինն առ միջինն, և միջինն՝ առ առաջինն. յայնժամ միջին իսկ՝ առաջին լեալ, և վերջին, և առաջինն դարձեալ միջին [3]։ Ամենեցուն այսպէս և 'ի հարկէ զնոյնն գոլ պատահէ. և զնոյն եղեալ միմեանց՝ ամենայն մի իցէ ճըշմարտապէս։

Արդ եթէ տապարակ [4] իսկ որ խորութիւն ոչ ունի պարտ էր լինել ամենեցուն մարմնոյն, միով միջոցաւ արդեօք շատանայր՝ զանձն իւր և զոր յետ իւրն՝ շաղկապել։ Բայց այժմ հաստատեսակ գոլ սմա՝ պատշաճեաց, որ է գնդատեսակ, և հաստատունքն՝ միով իսկ ոչ երբէք, այլ երկու միջոցովք՝ շաքայարի մարմինս. Այսպէս արդեօք, հրոյ և երկրի՝ զօդ և զջուր աստուած 'ի մէջ եդեալ, առ միմեանս՝ ըստ որում հնար էր բնաւորապէս գործեալ, զոր ինչ հուր առ օդոյ է, զնոյն ինչ և օդ առ ջրոյ, զոր ինչ օդ առ ջրոյ՝ զնոյն ինչ և ջուր առ երկրի. և այնպէս շաղկապեաց և բաղկացոյց երկին՝ երևելի և շօշափելի. և 'ի ձեռն այսոցիկ, և 'ի սոցանէ, այսինքն 'ի չորից յայսցանէ թուով [5] զաշխարհի մարմինս եղեալ խոստովանի ըստ համեմատութեան. [6] և զսիրելութիւն ընկալեալ յայսցանէ, իբրու 'ի նոյն 'ի միասին եկեալ, անլոյծ իցէ 'ի ձեռն այլոյ ուրուք՝ բայց միայն 'ի շաղկապօղէն իւրմէ։

Եւ արդ 'ի չորիցս յայսցանէ զիւրաքանչիւրն բոլոր ընկալաւ աշխարհի բաղկացութիւնս. քանզի 'ի

1 Այս ինքն՝ ժողովօղ, միաւորիչ։

2 Յն. և կամ մարմնոց և կամ զօրութեանց։

3 Յն. Յայնժամ միջինն առաջին լեալ և վերջին, և վերջինն և առաջինն՝ երկոքին դարձեալ միջինք։

4 Տապարակ (թերևս գրելի՝ տափարակ), է մակարդակն։

5 Յն. 'ի սոցանէ յայսպիսեաց և թուով 'ի չորեցունց... Յօր. 'ի չորից յայսմէ թուոյ։

6 Յօր. ըհամեմատութեան։

հրոյ բոլորէ, նոյնպէս և 'ի ջրոյ և յօդոյ և յերկրէ՝ բաղկացուցիչն, մասն ոչ ինչ և ոչ զմիոյն և կամ զօրութիւն՝ արտաքոյ թողեալ. զայս ինչ խորհելով, նախ իսկ՝ զի բոլոր մանաւանդ և կատարեալ կենդանի իցէ սա 'ի կատարելոց մասանց. և առ այսոցիկ, ոչ զմի 'ի սոցանէ թողեալ. զի այլ հնար իցէ յայնմանէ լինել այսպիսի, և տակաւին՝ զի անծերանալի իցէ և առանց տկարութեան. զմտաւ ածեալ բաղկացուցիչն 'ի մարմնիս յայսմիկ զջերմս և զցուրտս, և զայլ ամենայն որչափ ունին սաստիկ զօրութիւնս, արտաքոյ ոչ եթող. զի մի մերձեցեալ 'ի սա ոչ 'ի դէպ ժամանակի՝ լուծմունս և տրտմութիւնս և ծերութիւնս 'ի վերայ ածցէ. և առնէ ապականութիւն: Վասն այսորիկ արդեօք պատճառի և խորհրդոյ այսմիկ, մի բոլոր յամենեցուն՝ բոլորից կատարեալ, և առանց ծերութեանն խօթութեան՝ նիւթեաց զսա. և ձև եդ սմա զվայելուչն և զփաղաղանն: Եւ այսմ կենդանւոյս՝ որպէս զամենայն կենդանիս պարունակել հանդերձեալ էր, վայելուչ արդեօք իցէ ձևն այն, որ բակ առեալ է յինքեան զամենայն զձևս: Վասն որոյ և գնդատեսակ 'ի միջոյ ամենևին առ վախճանսն հարթ ունելով բոլորատեսակ զսա ճախարակեաց, ամենեցուն կատարելագոյն և նմանագոյն սորա ձև յօրինեալ. քանզի բիւրիւ գեղեցկագոյն է նմանն քան զաննմանն. և ուղորկ արդեօք շրջանակաւ ստուգիւր ամենայն արտաքնոյն սորա՝ 'ի սակս բազմաց [1]. քանզի աչից սա ոչ կարօտանայր, — զի ոչինչ տեսանելի՝ արտաքոյ սորա մնայր —, և ոչ լսելեաց, զի ոչ լսի. և շունչ ոչ գոյր շուրջ զսովաւ՝ զի կարօտանայր սա հոտոտելեաց [2], և ոչ այլոյ ուրուք կարօտանայր գործարանի, որով ընդունիցի յինքն զկերակուր կամ զսնունդ. կամ որով յառաջագոյնն ժամանեալ [3] դարձեալ արտաքոյ հանցէ. քանզի արտաքս ելանէր 'ի սմանէ և ոչինչ, և ոչ մտանէր 'ի սա այլուստ, զի և ոչ գոյր. այլ ինքն ինքեան սնունդ՝ զառ

1 Այս է. շուրջանակի ողորկ լինէր նա ըստ արտաքնոյն՝ վասն բազում իրաց:

2 Այս է, տուրևառութեան շնչոյ:

3 Այս է ըստ յն. և կամ որով զյառաջագոյն շոգիացեալ (սնունդսն) դարձեալ...

Digitized by Google

'ի յինքենէ ապականեալըն առնէր. և զամենայն ինքեամբ և 'ի ձեռն ինքեան առնելով և կրելով արհեստիւ եղև. քանզի համարեցաւ որ բաղկացոյցն ըզսա, շատացեալ գոլովն, մանաւանդ վեհագոյն գոլ զսա՝ քան եթէ իցէ առ յայլոց ինչ կարօտացեալ: Եւ ձեռաց՝ [1] որովք ոչ առնուլ և ոչ սպառնալ ուրուք կարօտանայր, ոչ ինչ ունէր պէտս [2]. վասն որոյ և սնոտի համարէր այսպիսոյ ինչ սմա շարամերձել. Նոյնպէս և ոչ ոտից էր պէտս, զի ամենևին բարձուց պաշտաման ոչ կարօտանայր: Եւ շարժութիւն սմա բաշխեաց զայն՝ որ ընտանի է մարմնոյ, այսինքն զեւթնեակն, զի սա յաղագս մտաց և խոհեմութեան յոյժ յաւէտ է: Վասն որոյ ըստ այսոցիկ նովիմբ և յինքեան պարածեալ զսա՝ գործեաց բոլորիւ շարժիլ դարձմամբ. և զարտաքոյ վեցեքեան շարժութիւնքն զամենայն՝ 'ի բաց եբարձ, և անմոլորելի արար զնա յայնցանէ: Եւ 'ի շրջաբերութիւնն՝ ոտից ոչ ինչ սա կարօտացեալ. անսրուն և առանց ոտից զսա գործեաց: Զի այսպիսի է այս ամենայն հանճար, յաղագս այն որ երբեք լինելոց էր՝ այն շնորհեալ [3]. ողորկ և առանց խոշորութեան, և յամենայն կոյս և 'ի միջոյ հաւասար և բոլոր և կատարեալ մարմին [4] գործեաց 'ի կատարելոց մարմնոց. և զհոգի 'ի մէջ սորա եդեալ՝ յամենայնի տարածեաց, և տակաւին արտաքոյ զմարմինն սովածածկեաց. և շրջանակաւ բոլոր շրջեալ՝ մի միայն երկին հաստատեաց անխառն յայլոց [5]. բայց 'ի ձեռն [6] առաքինութեան ընդ ինքեան շարամերձիլ հնարեալ, և ոչ այլոյ ուրուք կարօտացեալ. և ծանօթ իւրեանց և սիրելի զսա բաւականապէս [7]. և վասն այսոցիկ ամենայնի ծնաւ զսա բարեբաստ աստուած. և զհոգին

1 Այս ինքն. Եւ ձեռաց կարօտանալ...

2 Յօր. կարօտանայր. զինչ ունէր պէտս:

3 Յն. Զի սոյն այս արդարև ամենայն խորհուրդք աստուծոյ, յաղագս աստուծոյ՝ որ երբեմն լինելոցն էր՝ ածեալ զմտաւ, ողորկ և...

4 Յօր. 'ի մարմին:

5 Ըստ յն. մի միայն երկին հաստատեաց Թափուր և ամայի, բայց...

6 Յօր. 'ի ձեռն:

7 Յն. և ծանօթ և սիրելի զնա բաւականապէս արարեալ անձամբ անձին:



Digitized by Google

ոչ իբրու այժմ յետնագոյն ձեռնարկեմք ասել, և համբակագոյն այնպէս հնարագործեաց աստուած. զի ոչ իշխել երիցագունին՝ զհամբակագոյնն 'ի միասին արկեալ՝ Թողացոյց, ըստ սոցունց ուրուք և ասեմք [1]: Բայց նա և ծննդեամբ և առաքինութեամբ, նախկին և երիցագոյն զհոգին քան զմարմինն՝ իբրու զտիրուհի և զիշխանուհի՝ քան զիշխեցեալն բաղկացոյց մարմին, յայսցանէ և այսպիսի եղանակաւ. անանջատելի և միշտ ըստ ինքեան ունող բնութեանն, և յաղագս մարմնոյ եղելոյն բաժանելի [2], երրորդ՝ յերկոցունցն միջին շարախառնեաց տեսակ գոյութեան, յաղագս այնմ բնութեան՝ որ ըստ ինքեան է, և միւսոյն այլոյ: Եւ ըստ այսոցիկ բաղկացոյց 'ի միջի այնմ՝ որ անջատ է 'ի սոցանէ, և այնմ՝ որ ըստ մարմնոյ բաժանելի է: Եւ առեալ զսոսա՝ որ էին երիս՝ շարախառնեաց 'ի մի տեսակ, և զմիոյն բնութիւնն՝ որ էր դժուարախառն, 'ի նոյն իսկ շարայարմարեալ բնութեամբ: Եւ խառնեալ ընդ գոյացութեանն, և յերիցն դարձեալ մին գործեալ, բոլոր սովաւ մասունք որչափ պատշաճն էր՝ բաշխեաց. և զիւրաքանչիւր յայնմանէ իսկ՝ որ ըստ ինքեան էր, և 'ի միւսմէն գոյացութենէն խառնեալ: Եւ սկսանիւր բաժանել այսպէս. առաջին մին մասն 'ի բաց էառ յամենայնէս, և յետ այնմ 'ի բաց առնոյր կրկնապատիկ սորին, և զերրորդն կիսաքոլոր երկրորդին, և եռապատիկ առաջնոյն, և չորրորդ՝ երկրորդոյն կրկին, և հինգերորդ՝ եռապատիկ երրորդին, և զվեցերորդն՝ առաջնոյն ութապատիկ, և եւթներորդ՝ քսանեւթնապատիկ առաջնոյն: Եւ յետ այսոցիկ ըստյր կրկնապատիկ և եռապատիկ ասպարէզսն, մասունք տակաւին անդուստ հատեալ և եդեալ 'ի մէջ սոցունց, իբրու զի յիւրաքանչիւրում ասպարիզի երկու իցեն միջոցք. մին իսկ նովիմբ մասամբ քան զծայրսն սոցա գերագոյն և գերունակեալ առ 'ի սոցանէ, և միւսն ըստ Թուոյ հաւասար գերագոյն և հաւասար գերունակեալ: Իսկ կիսաքոլորից

[1] Յն. զի ոչ Թողացոյց զհամբակագոյնն իշխել երիցագունին. այլ մեք բազում ինչ հաղորդ գտեալ հարեանցի և տարապարտ իրաց, նոյնպէս և խօսիմք:

[2] Յոր. անբաժանելի:

բացատացն՝ և եռամասնիցն և ութամասնից եղելոց, յայսոցիկ կապանաց 'ի բաժանմունսն՝ որ յառաջագոյնք էին. ութամասնեայ բացատաւն եռամասնեայք ընունին միով մասնկաւ քան զայնոքիկ պակասեալ: Եւ բացատին այսմ պակասեալ մասնկանս, թուոյ առ թիւ ունելով զառհմանս, վեցի և յիսնի. և երկերիւրի առ քառասուն [1] և երկերիւր: Եւ արդ զխառնեալ յայսմանէ [2]. ուստի զայսոսիկ հատանէր, այսպէս արդեօք ծախէր զամենայն: Եւ զայս իսկ զբաղկացութիւնս զամենայն՝ կրկին [3] ըստ երկարութեան ցելեալ՝ մէջ առ միջս զերկաքանչիւրս [4], իբրու զքէ, միմեանց առարկեալ, իջոյց 'ի [5] մի բոլոր, շարամերձեալ զսա միմեանց՝ հանդէպ առարկուածին [6]. և շարժութեամբ այնմիկ որ ըստ սոցունց շուրջ զսոքօք պար առեալ, և զմինն արտաքոյ և զմինն ներքոյ առնէր 'ի բոլորիցն: Իսկ արդ զարտաքոյ բերումն՝ այնմ բնութեան համբաւեաց գոլ՝ որ ըստ ինքեան է, և զներքինն՝ միւսոյն: Եւ արդ զայն՝ որ ըստ ինքեանն էր, ըստ կողմանին ընդ աջմէ [7] ածեալ, և զմիւսոյն՝ հանդէպ այսորիկ՝ ընդ ահեկէ: Զօրութիւն ետ այնմ, որ ըստ ինքեան է և որ նման է սորա շրջաբերութեան. քանզի մի էր զսա և առանց ցելման թողացոյց, իսկ զներքինն ցելեալ վեցեկի, եւթն բոլորս անհաւասարս ըստ կրկնապատիկ և եռապատիկ բացատին, ելոց [8] իւրաքանչիւր երից այսոցիկ, երկաքանչիւրից ըստ հակառակութեան [9] իսկ միմեանց կարգեաց բերել զբոլորսն, և արագութեամբն իսկ էր նմանապէս, և զչորսն միմեանց և երից այսոցիկ նմանաբար, սակայն

1 Յօր. և քառասուն: 2 Յօր. յայսմէ:

3 Յօր. Երկրին, Թերևս՝ Երկրին ընթեռնլի էր, այս է կրկին:

4 Յօր. զի Երկաքանչիւրս:

5 Յօր. միջոց 'ի մի բոլոր: Իմաստն է՝ Եւ զայս ամենայն բաղկացութիւնս, ըստ երկայնութեան յերկուս հերձեալ, և զմէջն առ մէջն, որպէս զձև χ գրոյն, մերձեցուցեալ կազմեաց մի բոլորակ:

6 Առարկուած, այս է՝ կէտ շօշափման, որպէս և 'ի վերոյ բայն՝ միմեանց առարկեալ: 7 Յօր, ընդ առաջմէ:

8 Յօր. ըստ կրկնապատկին բանին և եռապատկին բացատին եւ. զիւրաքանչիւր:

9 Յօր. հակակութեան: Իմաստն է՝ երից գոլով սոցա, զիւրաքանչիւր բոլորակն ընդ հակառակս միմեանց կարգեաց, և ստուգութեամբ նմանս. իսկ զչորսն՝ միմեանց և երիցն այնոցիկ աննմանս...

Digitized by Google

բերեալք եանիւ։ Եւ քանզի ըստ կամաց բաղկացուց-
չին՝ հոգւոյս բաղկացութիւնս լինէր. և յետ այսորիկ
ամենայն մարմնատեսակս նիւթիւր նորքոյ սորա, և
մէջ միջաւ շարայարմարեալ պատշաճէր։ Եւ 'ի միջոյ
աստի առ վերջին երկինս շարամանեալ, և շուրջանակի
արտաքոյ ծածկեալ զսա, ինքն յինքեան դառնալով,
աստուածային սկիզբն սկսաւ անդադար և խոհեմա-
կան կենցաղի՝ առ ամենայն ամանակս։ Եւ մարմինն
իսկ երկնի երևելի եղև. և աներևելի սակայն՝ համ-
ձարոյ և յարմարութեան հաղորդեալ՝ հոգի իմանա-
լեաց [1], և այն զի միշտ են 'ի ձեռն արիագունին՝ քան
զեղեալսն ամենայն եղև քաջագոյն։ Իբրու յայնմանէ
որ ըստ ինքեան էր, և 'ի միւսոյ բնութենէ. և 'ի գոյա-
ցութենէ երից այսոցիկ խառնեալ մասանցս, և ըստ
բանի՝ բաժանեալ և կապակցեալ, և ինքն յինքեան
շրջելով, յորժամ մերձենայ, յում՝ որ գոյացութիւն
ունիցի ցրուական և յորժամ անանջատ իցէ, որոյ
հանդիպլին՝ առ ինքն ամենևին դարձուցանէ զշարժու-
թիւնն իւր. որոյ իսկ զնոյն ինչ իցէ, և կամ որոյ այլ ինչ
առ որ ինչ մանաւանդ, և ուր և որպէս և երբ հանդիպի,
և եղեալսն առ իւրաքանչիւր ոք զիւրաքանչիւրսն գոլ և
կրել, և առ այնոսիկ՝ որ միշտ ունիցի նոյնպէս [2]։ Եւ
բան որ ըստ ինքեան ճշմարիտ եղեալ, վասն միւսոյն
ելով, և վասն այն որ ըստ ինքեան է 'ի շարժեցելումն
'ի ձեռն սորա բերեալ առանց բարբառոյ և ձայնի,
և յորժամ առ զգալիս լինիցի. և միւսոյն բոլորն, ու-
ղիղ գոլով՝ յամենայն հոգի իւր ազդեցութիւն ըն-
կալցի, և կարծիք և հաւատք՝ լինիցին հաստատունք և
ճշմարիտք։

Իսկ յորժամ դարձեալ առ բանականին իցէ, և
այնմ որ ըստ ինքեան է բոլորն քաջանիւ գոլով՝ զնոյնս
ազդէ, և միտք և մակացութիւնք կատարին 'ի հարկէ։
Եւ զայս ինչ՝ որով էակացն ընդունակ լինիցի, զինչ

[1] Յոր. հոգի տան զիմանալիս։

[2] Իմա. Յորժամ մերձենայ առ ոք՝ որոյ գոյացութիւն իցէ ցրու-
ական և կամ անբաժանելի. շարժեալ ինքն յինքեան բովանդակ, որ
եթէ նոյն մի ինչ իցէ և կամ այլ ինչ, առ ինչ մանաւանդ և ուր և
զիարդ և երբ հանդիպեսցի ըստ եղելոցն առ իւրաքանչիւրն կրել
ինչ և առ այնոսիկ՝ որ միշտ նոյնպէս կայցեն մնայցեն։

Digitized by Google

երբէք այլ՝ ոք ասիցէ՝ բաց 'ի հոգւոյ և որ շարժեալ
զսա և կենդանի իմացաւ, և պատկեր եղեալ մշտնջե-
նաւոր աստուածոյն ծնեալ հայրն՝ զուարճացաւ, և ու-
րախացեալ տակաւին մանաւանդ նման ինչ յարացու-
ցի զմտաւ եած գործել։ Եւ որպէս նա է կենդանի
մշտնջենաւոր, և զայս ամենայն այսպէս ըստ զօրու-
թեան ձեռնարկեաց այսպիսի կատարել։ Իսկ արդ
կենդանւոյն բնութիւն հանդիպեցաւ գոլ յաւիտե-
նական. և զսա և ընդ արարածոյ ամենևին շարամեր-
ձիլ՝ ոչ էր հնար, այլ պատկեր խորհի առնել զսա
յաւիտենից և զարդ համանգամայն երկնի, արար,
հաւասար ըստ թուոյ գոլով զսա պատկեր [1] զայսոսիկ՝
զոր ամանակ մեք անուանեցաք։ Քանզի զտիւս և ըզ-
գիշերս և զամիսս և զտարիսս, որ ոչ գոյին յառաջ
քան զլինելն երկնին, յայնժամ համանգամայն սորա
բաղկանալովս հնարաւորեցան ընկալուլ զլինելութիւն։
Եւ այս ամենայն մասունք են ժամանակի, և էրն և
իցէն՝ ամանակի եղեն տեսակ, զորս բերեալ զանխլա-
նիմք [2] առ մշտնջենաւոր գոյացութիւնն, ոչ ուղղա-
բար։ Ասասցուք իսկ իբրու էրն, և իցէն՝ սմա ըստ
ճշմարիտ բանին ոչ յարմարին, այլ միայն էնն. քանզի
էրն և իցէն առ ըստ ժամանակի լինելութեանցն պատ-
շաճին ասել։ Իսկ սա միշտն նոյնպէս ունելով անշար-
ժապէս՝ ոչ երիցագոյն և ոչ կրսերագոյն յարմարի լի-
նել ('ի ձեռն ժամանակի ոչ լինել [3]) երբէք և ոչ է
լեալ այժմ և ոչ յետ այսորիկ դարձեալ լինիցի. և
ամենևին ոչ ինչ յայնցանէ, որ լինելութիւն է այսո-
ցիկ զգայութեամբ բերիմք՝ [4] շարամերձեաց, այլ ժա-
մանակի՝ այսոքիկ այնմ որ յաւիտենից են՝ նմանեալ,
և ըստ թուոյ վերստին շրջաբերի [5], տեսակք եղեն. և

1 Յն. և պատկեր իմն շարժական խորհի առնել յաւիտենից, և զարդարելով միանգամայն զերկինս, առնէ, զի մնալով յաւիտեանն ինքն յինքեան, թուով խաղացէ յաւիտենական պատկերն, զայն զոր ժամանակ անուանեմք։

2 Ըստ յն. ոճոյ է՝ զորս (այսինքն զմասունս ժամանակի) բերեմք զանխըլաբար առ մշտնջենաւոր...։

3 Չիք 'ի յն. բնագրի։

4 Յն. այնոցիկ որ 'ի զգայութեան բերին։

5 Այսոքիկ եղեն տեսակք ժամանակի՝ որ նմանեալ էր յաւիտենից և թուով շրջաբերէր։

Digitized by Google

առ սոքօք տակաւին այսպիսիք է, եղելոյն՝ գոլ եղեալ, և որ 'ի լինելութենէ՝ գոլն լեալ. ես և այժմ որ լինելոյն է գոլ լինելոյ, և որ ոչն՝ ոչ է գոլ. յորոց ոչ ինչ ասեմք հաստատուն:

Արդ յաղագս այսոցիկ թերևս ոչ վայելչագոյն ժամանակս, զի պատմեսցուք 'ի սա ստուգութեամբ: Ժամանակ իսկ յետ[1] երկնի եղև, զի համանգամայն եղեալք՝ համանգամայն և լուծցին, եթէ լուծումն սոցա արդեօք երբէք լինիցի, և ըստ յարացուցի յաւիտենական բնութեանն. զի նմանագոյն սորա իցէ ըստ զօրութեան: Եւ քանզի յարացոյց՝ յամենայն յաւիտեանս գոյ, բայց այն որ 'ի ձեռն կատարածի[2] յամենայն ժամանակի եղեալ և է և իցէ: Արդ 'ի յայսպիսի բանէ և 'ի հանճարէ աստուծոյ ժամանակիս լինելութիւնս էր այսպէս, զի լինիցի ժամանակ, արեգակն և լուսին[3], և հինգ այլ աստղ՝ որ ունին մականունութիւն մոլորականք՝ 'ի սահման և 'ի պահպանութիւն թուոյ ժամանակի եղեն: Եւ մարմինս սոցա իւրաքանչիւրոց արարեալ աստուած՝ եդ 'ի շրջաբերութիւնսն, զորս շրջաբերին եւթամբք՝ գոլով ինքեանք եւթն: Եւ զլուսին եդ առ երկրայսս առաջին, և զարեգակն 'ի յերկրորդումն գերագոյն քան զերկիր, և զլուսաբերն և զմաքուրն անուանեալն երմեսի, յայնմ՝ որ արագութեամբն արեգական՝ զուգընթաց ունի բերումն բոլորի. սակայն ներհականի սորա պատահեալ զօրութեան[4]: Վասն որոյ և հասանին և հասեալք լինին՝ ըստ այսոցիկ 'ի ձեռն միմեանց, արեգակն և Երմէս, և լուսաբերն: Իսկ զայլոն թէ էր կամ վասն որոց պատճառաց հաստատեաց, եթէ ոք պատմիցէ մի ըստ միոջէ զամենայն բանս, վարկպարազի գոլով՝ յոլովագոյն գործառնութիւն գործէ, քան զայն յորոց 'ի սակս ասացեալ է: Բայց այս[5] իսկ յետոյ թերևս իսկ ըստ պարապութեան արժանի պատմութեանն հանդիպի-

1 Այս է՝ ընդ երկնի գոյացաւ ժամանակ, զի 'ի միասին իցէ և լուծումն նորա:

2 'Ի ձեռն կատարածի, այս ինքն միշտ, յաւիտեանս:

3 Յոր. արեգական և լուսնի:

4 Յոր. զներհական 'ի սորա....:

5 Յոր. զայս իսկ....: Այս է, բայց այս իսկ յետոյ՝ յորժամ պարապ լիցի, լիցի մեզ նիւթ խօսից:

Digitized by Google

*ցի։ Արդ քանզի զիւրաքանչիւր 'ի սոցանէ յիւրում վայելչական բերմանն հաստատեաց, յայնոցիկ՝ որչափ պարտ էր գործակից լինել ժամանակի, և շնչաւոր կապանօք մարմինք կապեալք՝ եղեն կենդանիք, և զհրամայեալն իմացաւ. և ըստ միւսոյն բերման՝ այնմ որ ընկողմեալ է [1] 'ի ձեռն այնմ. որ ըստ ինքեան է բերմանն՝ և եկեալ և զօրացեալ. ոմն 'ի նոցանէ մեծագոյն և ոմն նուաղագոյն ընթանայ բոլոր [2]։ Փութանակի փոքունց և մեծագունից գոլով հեղգագոյն. և այն՝ որ ըստ ինքեան բերմամբն՝ արագագոյն [3] բերեալք, 'ի ձեռն հեղգագունիցն հասու եղեալք երևին՝ ինքեանք հասեալք։ Քանզի զամենայն բոլորսն սոցա՝ շրջանակաւ դարձուցեալ, վասն երկակի ըստ նմին ժամու՝ առ ներհակացն համանգամայն եկեալք [4]. այնմ որ հեղգագոյն ընթանայ յինքենէ՝ գոլով արագագոյն, հուպ նորին երևէր։ Զի իցէ չափ ինչ հաստատուն առ միմեանս հեղգութեան և արագութեան. և զայն որ առ ութ բերմանց են՝ գնասցեն [5], վերստին վառեաց լոյս աստուած՝ յերկրորդումն առ երկնաւ բերմանն [6]. զոր այժմ կոչեցաք արեգակն. զի այնմ որ քան զամենայն յաւետագոյնն է երկնի ծագեսցէ, և հաղորդին թուոյ կենդանիքս՝ որչափ էր պատշաճ, սովորեալք առ 'ի յայնմ որ ըստ ինքեան է, և 'ի նմանւոյ սորա բերմանէն [7]։ Գիշեր արդ և տիւ եղև. և այսպէս և վասն այսոցիկ՝ միոյն այնմ և խոհեմական բոլորակին շրջաբերութիւնն. և ամիս, յորժամ լուսին ընթացեալ զբոլորն իւր՝ հասանի առ արեգակն. և տարի՝ յորժամ արեգակն կատարեսցէ զշրջանն իւր [8]։ Իսկ զայ-*

1 Բերման ընկողմեալ, նշանակէ խոտոր կամ կողմնական շարժումն։

2 Այս է. Մին մեծ և միւսն փոքր շրջան կատարէ։

3 Յոր. Որ ըստ ինքեան է բերմամբն՝ յարագագոյնս բերեալք։

4 Այս է. Վասն երկուստեք ներհակացն համանգամայն ընթանալոյ, այն որ հեղգագոյնս հեռանայր յիւրմէ՝ որ արագն էր, մերձաւորագոյն երևեցաւ գոլ։

5 Այս է. և զի ութեքին շրջանքն խաղասցեն, վառեաց լոյս...

6 Այս է. Յերկրորդ շրջանին որ առ երկրաւ...

7 Այս է. Զի յաւէտագոյն յամենայն երկինս ծագեսցին՝ ուսեալք 'ի նոյն և 'ի նման շրջանէս աստի։

8 Այս չգոյր յօրինակիս, զոր եդաք ըստ յունին, այլ գոյր ընդ այնր խառնակ ինչ բան՝ [illegible], զոր բարձաք 'ի միջոյ։

լոցն շրջաբերութիւն [1] ոչ իմացեալք մարդիկ, բայց 'ի սակաւուց 'ի բազմացն [2], ոչ անուանեն, և ոչ առ մի֊մեանս զուգաչափեալք՝ գիտեն թուօք։ Իբրու, այս֊պէս ասել, և թէ ոչ գիտեն ժամանակ՝ զսոցա յած֊մունքն [3]. քանզի բազմութեամբ անհնարին վարին, և պաճուճելով սքանչելաբար։ Սակայն է ինչ հնար ոչ ինչ նուազագոյն իմանալ՝ իբրու կատարեալ թիւն ժամանակի զկատարեալ տարին յայնժամ լնու, յոր֊ժամ ամենեցուն ութից շրջաբերութեանցն՝ առ մի֊մեանս 'ի միասին կատարեալ վաղվաղակի, ընկալցի գլուխ այնմ՝ որ ըստ ինքեան և որ նմանապէս սորա բերի՝ վերստին չափեալք՝ բոլորաւ։ Ըստ այսոցիկ իսկ և վասն այսորիկ եղեն յեղանակք աստեղացն, որչափ են ընդ երկնօք գնացեալ [4], զի այսուիկ իբրու նմանա֊գոյն իցէ կատարեալ և իմանալի կենդանւոյ՝ առ 'ի յաւիտենական բնութեանն նմանութիւն։ Եւ այլս իսկ մինչև ցժամանակս գործեցաւ, 'ի նմանութիւն այնմ որոյ նմանեցուցանէր զսա։ Բայց այսմ որ ոչ ևս զամենայն կենդանիս ներքոյ սորա լեալք՝ էր պարա֊ռեալ, այսմ տակաւին ունէր աննմանապէս [5]. և զայս զպակասութիւնս նորա դարձեալ գործէր՝ առ յարա֊ցուցին 'ի բաց յօրինեալ բնութիւն [6]։ Եւ ըստ որում միտք նկատէ բնութիւնս՝ [7] յորում կենդանիք են, և թէ որպիսիք են, և կամ որչափ տեսանի, այսպիսիք և այսչափ խորհեցաւ պարտ գոլ և սմա ունել։ Եւ են չորք. մի իսկ [8] երկնային՝ աստուածոց սեռ, և այլ՝ թռչնոց և օդագնացից. և երրորդ՝ ջրային տեսակ. և հետեւակ և ցամաքային՝ այս չորրորդ։

Արդ՝ զաստուածայնւոյն իսկ զյոլովագոյն և տե֊սակ 'ի հրոյ արար [9]. իբրու զի զոր ինչ պայծառագոյն և

1 Շրջաբերութիւն աստանօր իմա՝ période.
2 Իմա՝ բայց եթէ սակաւք 'ի բազմաց։
3 Այս է. ոչ համարին ժամանակ զսոցա յածմունսն։
4 Այս ինքն. աստեղացն՝ որք ընդ երկինս գնան...։
5 Այս է. Բայց քանզի չև ևս զամենայն կենդանիս որ ներքոյ իւր էին՝ պարառեալ ունէր, վասն այնորիկ աննման էր տակաւին։
6 Այս է՝ նմանեալ յարացուցին բնութեան։
7 Յոյ. ἐντελέχεια. իմա՝ գաղափարս։ 8 Յոյ. γένος։
9 Յոյ. 'Ն πυρὶ ζῷα. եդաք ըստ յունին։ Այս է՝ իբրու զի յոյժ ա֊ռաւել պայծառագոյն իցէ 'ի տեսանել և գեղեցիկ։

տեսանելոյ գեղեցկագոյն իցէ. սմա ամենայնի նմանե-
ցուցանել, քաղջաբոլոր արասցէ զսա [1]: Յաւելաւ և այս
ինչ 'ի հզօրագունին խոհեմականութիւն, սմա զոյգ-
հետևեալք, տարածեալ առ ամենայն զերկինս բոլո-
րովին [2], զարդ զսա ճշմարիտ պաճուճեալ գոլ ընդ-
հանրական: Եւ շարժութիւնք երկու իւրաքանչիւրոց
յարմարեաց, զմինն՝ յայնմ որ ըստ ինքեան է, և ըստ
նոցունց միշտ յաղագս նոցունց՝ զնոյնս ինքեան խոր-
հելով. և զմիւսն՝ 'ի հանդերձեալսն, 'ի ձեռն այնմ
որ ըստ ինքեան [3] և նմանւոյն շրջաբերութեանն զօ-
րացեալ: Եւ զհինգ շարժութիւնսն՝ անշարժ և կայուն,
զի որ ինչ մանաւանդ 'ի սոցանէ ա՛րիագոյն լինիցի իւ-
րաքանչիւրքն [4]: Յորոց արդեօք պատճառէ եղեն որ-
չափ անմոլորական աստեղացն կենդանիքն են՝ աս-
տուածային ունելով և մշտնջենաւորք. և ըստ նոքին՝
նովիմբ դարձեալք միշտ մնացեն. և ոմանք փոփոխե-
լիս, և մոլորութեամբ ծագեալս՝ [5] որպէս յառաջա-
գոյնսն ասացաւ՝ եղեն ըստ այնմիկ: Իսկ զերկիր,
կերակրող և սնուցանող մեր, գալարեալ 'ի միջին,
այն որ 'ի վերայ ամենայնի տարածեալ է երկնի [6],
զոր պահապան և գոյացուցիչ գիշերոյ և տուընջեան
հնարաւորեաց. սա իսկ նախկին և երիցագոյն քան
զաստուածսն [7], որչափ ներքնոյ երկնի եղեն: Որոց և
են պարք և թանակք առ միմեանց, և առ բոլորիցն առ
ինքեանս միաւորութիւնքն և բաժանմունքն, յորոց 'ի
զուգաւորութենէն, որպէս և իցեն աստուածքն առ
միմեանս հասեալ, և որչափ հանդէպ լինիցին, յորոց
ոմանք ըստ ժամանակի թաքուցեալք իւրաքանչիւր 'ի
նոցանէն ծածկին, և դարձեալ վերստին երևեալք՝
երկիւղիւ, և նշանք այնոցիկ՝ որ յետոյ լինելոցն իցեն՝

1 Իմա՝ Եւ ամենայնին նմանեցուցեալ՝ քաղջաբոլոր արար զսա:

2 Այս է՝ բաշխեալ շուրջանակի ընդ ամենայն երկինս, զի զարդ լիցի նմա ճշմարիտ պաճուճեալ համայն (լոյսն):

3 Յոր. Որ ըստ ինքեանն է

4 Այս է՝ Զի իւրաքանչիւրն 'ի սոցանէ լինիցի մանաւանդ գե-ղեցկագոյն:

5 Իմա՝ զայնպիսի մոլորութիւն (այս է՝ յածումն) ունելով (աս-տեղքդ):

6 Երկին թարգմանէ զբեւեռս կամ զառանցս երկրի:

7 Զաստուածսն, յոյնն ասէ՝ զմարմինսն:

առաքին խորհել կարողացն. զասելն առանց տեսու-
թեան սակայն նոցունց նմանութեանցն՝ ուրեմն ու-
նայն է վաստակն [1]: Այլ և յայսոսիկ բովանդակապէս
մեզ սմա, և յաղագս աստուածոցն երևելեացն և եղե-
լոցն ասացեալ բնութեանս՝ ընկալցի կատարած: Իսկ
յաղագս այլոց դից ասել և ծանուցել զլինելութիւնն [2],
մեծագոյն է մերոյ իրի. բայց հաւանելի է ասացողացն
յառաջագոյն՝ ծնունդք ելոյ աստուածոցն, որպէս ա-
սէին. և հաւաստի իսկ՝ զիւրեանց նախածինս գիտո-
ղաց [3]: Արդ անհնար է աստուածոցն մանկանցն անհա-
ւատել [4], և մանաւանդ այնոցիկ՝ որ առանց վայելչագոյն
և հարկաւոր ապացուցից ասէին, սակայն իբրու զընտա-
նիս իւրեանց ասողաց և պատմել, հետևողաց օրինին՝
հաւատալի է [5]: Այս՝ տես արդ՝ ըստ նոցա մեզ լինելու-
թիւն այսոցիկ աստուածոց ունիցի և ասասցի, Երկրի և
Երկնի մանկունք՝ Ովկիանոս և Տեթիւս եղեն. և սոցա
Փոռկիւս և Կռոնոս և Ռէա [6], և որչափ յետ սոցունց:
Իսկ 'ի Կռոնոսէ և 'ի Ռէայէ՝ Արամազդ և Հերա, և
ամենեքին զոր գիտեմք ասացեալ եղբարքն սոցունց,
և տակաւին սոցա այլ ծնունդք: Եւ քանզի ամենեքին
որչափ առ երկինսն են յանդիմանապէս, և որչափ ե-
րևին՝ այնչափ որչափ աստուածքն կամեսցին, զլինե-
լութիւն ընկալան. ասէ ցսոսա հրատարակելով՝ որ
զայս ամենայն ծնաւ՝ զայս ինչ. Աստուածք աստու-
ծոց՝ որոց ես եմ գոյացուցիչ, և հայր գործոց. որք 'ի
ձեռն իմ եղեալք՝ անլոյծք, իմ կամեցեալ: Իսկ արդ
ամենայն կապեալն՝ լուծանելի է. սակայն զբարւոք
յարմարեալն և զունողն բարեօք լուծանել կամիլն՝

1 Իմա՝ դարձեալ վերստին երևեալք (աստեղքն) արհաւիրս և նշանս առաքեն այնոցիկ՝ որ կարող են խորհել, և ասելն իսկ առանց տեսութեան այսոցիկ նմանութեանց՝ ունայն վաստակք են:

2 Յոր. [illegible]:

3 Բայց հաւանելի է ասացելոցն յառաջագոյն, թէ ծնունդք իցեն աստուածոց, և գիտիցեն զնախնիս իւրեանց:

4 Յոր. [illegible]:

5 Այս է. Արդ անհնար է չհաւատալ որդիս գոլ աստուածոց, թէպէտ և առանց ինչ պատշաճաւոր և կարևոր հաւաստեաց ասիցեն. այլ արժան է հաւատալ՝ հետևելով օրինաց՝ իբրու զի զիւրեանց ընտանի իրս պատմեն:

6 Յոր. [illegible]:

Digitized by Google

չարի է։ Վասն որոյ և քանզի եղէք՝[1] անմահք իսկ ոչ էք, և ոչ առանց լուծման ամենևին. բայց ոչ լուծցիք, և ոչ մահուան մասին հանդիպիցիք, մեծագունի տակաւին և խնկագունի իմոյ կամացս հանդիպեալք շաղկապի[2] քան զայնոսիկ՝ որով շաղկապեցաք՝ յորժամ լինէիք։

Այժմ արդ զոր ասեմ ընդ ձեզ ցուցեալ իմացիք. մահկանացու ևս այլ երիս սեռք անեղք են, և սոցա ոչ եղելոց՝ երկինքն անկատար իցէ[3]. զի զամենայն սեռս կենդանեաց, յինքեան ոչ ունիցի. և պարտ է՝ եթէ համբերձեալ է կատարեալ գոլ բաւականաբար։ Ի ձեռն իմ եղեալ զսոսա, և կենդանութեան հաղորդեալ՝ աստուածոց հաւասարիք դուք արդեօք։ Յորժամ իցեն մահկանացուք, և այս ամենայն իցէ ճշմարտապէս, դարձարուք ըստ բնութեան 'ի կենդանեացն յարարչութիւն. նմանեալք զիմս զօրութիւն՝ զայն որ առ ձերն էր լինելութեան։ Եւ որչափ իսկ 'ի սոցանէ՛ անմահից հոմանուն գոլ պատշաճ է, զաստուածայինն ասացեալ՝ առաջնորդօղ նոցունց, այնոցիկ որ միշտ իրաւամբք և ձեզ կամիցին հետևել՝ սերմանեալ և սկսեալ ես 'ի ձեզ աւանդեցից։ Եւ զայլն[4] դուք՝ ընդ անմահին զմահկանացուն նիւթեալք՝ գործիցէք և ծնիջիք[5] կենդանիք, և սնունդ տուեալ սոցա՝ աճեցուցէք, և ապականեալ՝ դարձեալ ընկալարուք։ Զայս ասաց. և դարձեալ 'ի նոյն անօթն՝ յորում խառնեացն զամենեցուն՝ նոյն իսկ ոմամբ յեղանակաւ[6]։ Սակայն ոչ անմահք տակաւին և ըստ այնոցիկ և իբրու այնպէս, այլ երկրորդք և երրորդք։ Եւ բաղկացուցեալ զսա՝ բաժանէ անձինս հաւասարու-

1 Այս է. և յորժամ եղէք....։

2 Տողկապի. այս է կապանաց։

3 Զայս բան Պղատոնի յիշէ և մեր Դաւիթ Անյաղթ 'ի գիրս Սահմանաց, և ասէ եթէ յետ առնելոյն Աստուծոյ զերկինս և զերկիր հրատարակէր առ իմանալի զօրութիւնսն այսպէս « Եթէ այլ ևս երեք սեռք մահկանացուք պակաս գոն մեզ անեղանելիք, որոց ոչ եղելոց՝ երկին անկատար », և մեկնէ զայս եթէ պակասքն իցեն՝ Օդայինք, Ջրայինք և երկրայինք՝ յորոց և մարդն։ (Դաւ. Անյ. Սահմ. 122)։

4 Յօր. և զայն....։

5 Յօր. ծնէք։

6 Այս է. նովին յեղանակաւ։

Digitized by Google

Թիւս աստեղաց [1], և բաժանեաց զիւրաքանչիւր անձինս՝ իւրաքանչիւր աստեղաց, և եդեալ իբրու 'ի կայանի ուրուք՝ զամենայնի բնութիւն եցոյց սոցա. և օրէն եդեալ զբախտ՝ ասէ ցնոսա. Թէ ծնունդ առաջին մի եղիցի ամենեցուն կարգեալ, զի մի ոք նուազեսցի 'ի ձեռն սորա [2]: Բայց պարտ է յորժամ սերմանին սոքա 'ի պատշաճեալսն գործարանս, ժամանակաբնաւորիլ 'ի կենդանեացն՝ զոր աստուածապաշտն է [3]: Եւ քանզի կրկին է մարդկային բնութիւն, լաւագոյն սեռ այն իցէ որ յետոյ կոչելոց է այր. և յորժամ մարմինք բնաւորեսցին [4] 'ի հարկէ, ոմն 'ի հոգւոցն մտանէ 'ի մարմինս, և ոմն՝ ելանէ 'ի մարմնոյն:

Նախ առաջին՝ զգայութիւն մի հարկ է ամենեցուն առ բռնաւոր կիրսն լինել՝ կցորդ բնութեան. և երկրորդ՝ հեշտութիւն և տրտմութիւն խառնեալ տափմամբ. առ սոքօք՝ երկիւղ և ցասումն, և որչափ հետևողք են սոցունց և որչափ հակառակաբար բնաւորեալք են 'ի սոցանէ բաժանեալ. զոր թէ արգելլցեն՝ [5] արդարութեամբ կեցցեն, և եթէ յինքեանք կալցին 'ի ձեռն սոցա՝ կեցցեն անիրաւութեամբ: Եւ բարեօք իսկ զպատշաճեալ ժամանակն կեցեալն, դարձեալ 'ի վիճակակիցն իւր աստեղն բնակութիւնն գնացեալ՝ կենցաղ բարեբաստ և սովորական ընկալցի [6]: Իսկ և սխալեալն յայսոսիկ, յերկրորդումն ծննդեանն՝ 'ի կնոջ բնութիւն փոխարկեսցի: Եւ 'ի հազարերորդի ամի՝ երկոքեանն հասեալ 'ի ժառանգութիւն և յընտրութիւն երկրորդ կենացն, ընտրեսցէ իւրաքանչիւր

1 Իմա՝ բաժանէ ոգիս հաւասարաթիւս աստեղաց. յօր. 'ի յանջինս հաստատութենէ աստեղաց:

2 Ի սմանէ պակասեսցի:

3 Իմա. Արդ պարտ էր զի 'ի սերմանել իւրաքանչիւր գործարարանաց յիւրաքանչիւրս՝ երևեսցի կենդանին աստուածպաշտագոյն (մարդն):

4 Յն. Եւ յորժամ 'ի մարմինս հաստեսցի (սեռն այն մարդկութեան):

5 Յօր. բռնանել: — Զոր թէ արգելլցեն. այս է՝ զկիրսն եթէ սանձահարեսցեն. իսկ եթէ յինքեանք տիրեսցեն 'ի նոցանէ ('ի կրից):

6 Եւ այս կարծիք ոմանց յիմաստասիրացն Յունաց, որք համարէին եթէ հոգիք արանց բարեգործաց գնալ ունին յաստեղս անդր. իսկ չարագործաց հոգիք կրեսցեն զայն փոփոխութիւնս, զոր կոչեցին ապա նորին իսկ իմաստասէրքն՝ հոգեփոխութիւն:

Digitized by Google

ոք կեանս՝ զո՛ր և կամեցի անդանօր, և ՚ի գազանաց կեանս իջցէ մարդկայինն հոգի [1]։ Եւ ոչ դադարեալ այսպիսեացս այլ տակաւին չար յեղանակաւ վարեալ ըստ նմանութեան լինելութեանն յեղանակին, փոխարկեսցի յայլ ոմն [2] գազանային բնութիւն. և փոխեալ ոչ դադարեսցէ ՚ի ցաւոց, յառաջ քան զայնմ որ ըստ ինքեան է և նմանւոյն շրջաբերութեամբն զբազում թախանձութիւնն և զկեսոյ բնաւորեալն առ սմա՝ ՚ի հրոյ և ՚ի ջրոյ և յօդէ և յերկրէ [3], որ են խռովեցուցիչք և անբանք՝ բանիւ արգելեալ, ՚ի յառաջին և ՚ի քաջագոյն ունակութեանն հասցէ տեսակն։ Եւ զայս ամենայն օրինադրեալ սոցա, զի այնմ՝ որ յետոյ եղելոյ էր չարութեանն իւրաքանչիւր իցէ պատճառ՝ սերմանեաց զոմանս ՚ի յերկրի [4], և զոմանս ՚ի լուսին, և զոմանս յայլ որչափ գործարանք են ժամանակի։ Եւ յետ սերմանելոյն՝ աւանդեաց աստուածոց ստեղծանել [5] մարմինք մահկանացու. և զպակասեալն յայնցանէ՝ որչափ տակաւին առ մարդկային հոգիս պարտ է լինել. զայսոսիկ և զամենայն սոցա հետևեալսն գործել և իշխել, և մանաւանդ ըստ զօրութեանն զոր ինչ գեղեցկագոյն է և արիագոյն. առ ՚ի մատակարարել զմահկանացու կենդանին, զի մի՛ ինքն ինքեան չարեաց պատճառք լինիցի։ Եւ սա իսկ զայս ամենայն հրամայեալ, կայր և մնայր յիւրում ըստ սովորութեան յեղանակին։ Եւ այնպէս մնալով սորա, ուսեալ մանկունքն զհօրն կարգաւորութիւն՝ հպատակէին սմա, և առեալք սկիզբն անմահ՝ մահկանացու կենդանւոյ, նմանեալք ՚ի գոյացուցիչն իւրեանց, հրոյ և հողոյ և ջրոյ և օդոյ մասունս [6] յերկրէ փոխ առեալք՝ իբրու դարձեալ հատուցանելիս, ՚ի միմեանս զառեալսն խառնէին [7], ոչ անլոյծ կապանօք՝ որովք իւրեանքն շարունակեալք [8] էին, այլ ՚ի ձեռն շաղկա-

1 Այս բան պակասէր ՚ի հայումն։ 2 Յօր. յայլումն։
3 Իմա՝ զբազում մթերս որ յետոյ կերպացաւ ՚ի հրոյ և ՚ի ջրոյ...։
4 Յն. զոմանս յարեգակն և զոմանս ՚ի լուսին...։
5 Յօր. աւանդեցին որ աստուածոյ ստեղծանել։
6 Յօր. մասունս։ 7 Յօր. խառնէլին։
8 Շարունակեալք, այս է՝ կապեալք։

դից փոքունց աներևութ ելոյ վասն մանրութեանն, 'ի միմեանս կապակցեալ՝ մի յամենեցուն զիւրաքանչիւր գործեին մարմին, զանման հոգւոյն շրջաբերութեանն, իմա յարմարեալ ելանելով և մտանելով[1] և շրջաբերութիւնքս՝ յանդուգն գոլով 'ի նմանութիւն ուժգին գետոյ՝ ոչ արգելլեին զոսա, և ոչ ինքեանք արգելեալք լինեին. այլ բռնութեամբ բերեալք լինեին։ Իբրու շարժել զբոլոր կենդանին. սակայն անկարգաբար և անբանապէս ուր և հանդէպ իցէ հասանել, զամենայն վեց շարժութիւնն ունելով՝ զառաջն և զյետոյսն, զաջ և զահեակ, 'ի վայր և 'ի վեր. և ամենևին ըստ վեցեքեան տեղեացն մոլորեալ հասանէր։ Քանզի բազում գոլով հոսումն շրջաբերութեան, ողողէր ըզմարմինն[2]. և յառաջ քան զսնունդն՝ մեծագոյն առնէր 'ի սմա զանկարգութիւն 'ի ձեռն այլոց իւրաքանչիւր կրից հասանելին առ սմա. յորժամ առ հուր ոմն բախէր[3] արտաքնի և օտար, և կամ ընդ երկրային հաստատուն ինչ նիւթ, և կամ ընդ գիջային բնութիւն ջրոց. և կամ ընդ մրրիկ հողմոց առ օդով պատահեալ. և այսոքիւք ամենայնիւ շարժութիւնքն մարմնոյն առ հոգւոյն բերելով հասեալք, որք և յետ այնորիկ 'ի ձեռն այնոցիկ կոչեցան, և այժմ տակաւին 'ի միասին ամենեքին սոքա զգայութիւնք կոչին։ Իսկ և յայնժամ տակաւին յոլովագոյն և մեծագոյն ունելով շարժութիւն, և սաստկապէս հոսեալ հոսմամբն ուժգնաբար շարժելով զշրջաբերութիւնքն հոգւոյն, զայն մասն՝ որ ըստ ինքեան էր՝ ամենևին դադարեցուցին և խափանեցին, զայն որ սկսանէրն և բերէր, քանզի հակառակ սորա հոսէին. և զմիւսոյն սասանեցուցին իբրու զկըրկնապատկին, և զեռապատկին, զի երկաքանչիւր բացատքն և զկիսաբոլորիցն և զեռամասանցն և զութամասանցն՝ զմիջոցքն և զշաղկապքն. քանզի ամենևին լուծանելի ոչ էին, բայց միայն 'ի ձեռն շաղկապողին՝ զամենայն բեկմունս և զապականութիւնս[4] բոլորիցն

1 Յն. զանման հոգւոյն շրջանս առնէին 'ի ներահոսան և յարտահոսան մարմինն։

2 Յն. ողողէր ալիքն։

3 Յոր. բախէր, իբր՝ բախխէր։

4 Յն. զտարբերութիւն շրջանականց գործել։

գործել, որչափ միանգամ և հնար էր. իբր միայն առ-
միմեանս շարունակեալ բերիլ. սակայն բերիլ առանց
համեմատութեան [1], երբեմն յետս գնացեալ. իբրու
յորժամ ոք զգլուխն յերկիր հաստատեալ, և զոտն
'ի վեր ունիցի դարձուցեալ և հանդիպիցի ուրուք,
յայնժամ յայսմ կիրս՝ այնմ որ այսպէս ախտացեալ
է և տեսանողացն աջակողմունքն՝ ահեակ, և ահեակքն՝
աջակողմունք երկաքանչիւրոց միմեանց երևին [2]: Եւ
զնոյնս իսկ և այսպէս և զայլս սոցունց նմանիս՝ շրջա-
բերութիւնքն կրելով յոյժ, և յորժամ այնմ որ ար-
տաքին են՝ ըստ արտաքին սեռին, և կամ միւսոյն հան-
դիպեսցին, զայն որ ինչ ըստ ինքեանն, և միւսոյն
ճշմարտիցն հակակային ոգելով՝ սուտք և անիմայք ե-
ղեն, և ոչ մի շրջաբերութիւն սոցա իշխէր կամ ա-
ռաջնորդէր: Եւ որոց արդեւք արտաքուստ զգայու-
թիւնք ոմանք բերեալք և հանդիպեալք 'ի միասին խը-
լեսցեն ընդ իւրեանց զամենայն դադարքն հոգւոյն,
յայնժամ սոքա կալեալք՝ կալուլ կարծեն [3]:

Արդ վասն այսոցիկ ամենայն ախտից այժմ 'ի
սկզբանէ հոգին առանց մտաց լինի նախ՝ յորժամ ընդ
մահկանացու մարմնոյ կապակցի. և յորժամ աճմանն
և սննդեանն դուզնաքեայ հոսումն 'ի վերայ հասանի-
ցէ, դարձեալ և շրջաբերութիւնքն հասեալք հան-
դարտութեան՝ զիւրեանցն գնան ճանապարհ. և հաս-
տատին մանաւանդ ժամանակին 'ի վերայ հասեալ.
յայնժամ արդեւք և իւրաքանչիւր 'ի բոլորիցն յիւր
բնական ձևն եկեալ ուղղեսցի, և զմիւսն և զայն որ
ըստ ինքեան է՝ որք են ուղղակի, խոհական զունօղն
սոցա եղեալ կատարեն: Ապա եթէ և սնունդ ոմն ու-
ղիղ և խրատ յետ այսոցիկ հանդիպեսցի՝ ողջ բնաւ և
բոլորովին 'ի մեծէն ճողոպրեալ խօթութենէ լինիցի:
Բայց ծուլացեալ սխալական և կաղ կեանս 'ի կենցա-
ղումն գնացեալ՝ անկատար իսկ լինիցի. և անիմաց իջ-

1 Յն. առանց բանի բերիլ ասէ կամ անբանաբար շարժիլ նիւ-
թական մարմնոյ:

2 Այս է՝ երկաքանչիւրոց իրերացն երևին, այսինքն իւրաքան-
չիւրքն տեսանեն զմիմեանց շարժմունս և ոչ զանձանց իւրեանց:

3 Ըմբռնեալք ինքեանք զգայութիւնքն՝ կարծեն տիրել այլոց:

Digitized by Google

ցէ դարձեալ ՚ի դժոխս։ Այսուքիկ իսկ՝ արդ յետոյ եր-
բեք լինիցին։ Այլ յաղագս առաջին եդելոցն պարտ է
ասել սակաւագոյն. և զոր նախ քան զայսոսիկ՝ յա-
ղագս մարմնոց ըստ մասանց լինելութեանն, և յաղագս
հոգւոց, և վասն որոց պատճառաց և աստուծոցն նա-
խախնամութեանն, մանաւանդ վայելչագոյն ժամա-
նակին ներողութիւն արարեալք, այսպէս և ըստ այ-
սոցիկ գնալով՝ պատմելի է։ Իսկ արդ՝ զաստուածային
շրջաբերութիւնքն՝ երկու ելով՝ յամենայնի նմանե-
ցուցեալք զձևն [1], որ է շրջաբերաձև, և ՚ի գնդատե-
սակ մարմնոյ զսա կապեցին՝ զոր այժմ գլուխ անուա-
նեմք. որ և աստուածային իսկ է, և այնոցիկ որ ինչ ՚ի
մեզ ամենեցուն տիրեալ։ Որոյ և աւանդեցին զամե-
նայն մարմինն՝ պաշտօն սմա ՚ի միասին հաւաքեալ աս-
տուածքն, խորհելով եթէ ամենեցուն շարժութեանց
որ գալոց իսկ են՝ հաղորդի։

Արդ՝ զի մի զսա գլորեալ ՚ի յերկրի յայնմ ու-
նիցի բարձրութիւնք պէսպէս և խորութիւնք, ոչ կա-
րասցէ յոմանց ՚ի վեր ելանել, և զոմանս գերակոխել.
ձև սմա զայս և կարողութիւն ետուն, և ուղիղ ոտ-
կերք, և թիւրք բուսուցին չորս, աստուծոյ՝ գնացիցն
արարեալ հնար, յորոց ընկալեալ զօգնականութիւն,
և հաստատեալ ՚ի սոսա ընդ ամենայն տեղիս գնալոյ
հնարաւոր եղև զաստուածայնոյն. և զխնամականին
բնակութիւն բերելով ՚ի վերայ մեր։ Սրունք արդ և
ձեռք սմա բուսուցին. վասն այսոցիկ և քան զվերջին
կողմն, զառաջինն պատուականագոյն և արքունակա-
նագոյն կարծելով աստուածքն՝ զաւետագոյնն գնացից
սովաւ ետուն մեզ, և քանզի պարտ էր որոշել և աննը-
ման զառաջին կողմն ունել մարդոյն։

Նախ առ դիւրատեսակ մասինն գլխոյն՝ զդէմսն
տպաւորեցին. և գործարանս ՚ի սմա արարին յարմա-
րեալք, ամենայն նախախնամութենէն հոգւոյն, և
հրամայեցին զսա գոլ հաղորդ՝ արքունականին, որ
ըստ բնութեան՝ առաջին կողմ է. և ՚ի գործարանացն
առաջին իսկ և լուսաբերք՝ զաչքն շարանիւթեցին. և

1 Ամենայնն ըստ Պղատոնի և ըստ ամենայն իմաստասիրաց նշանակէ՝ էութիւնն, բնութիւնն, տիեզերք, որ ասի ՚ի մեզ և Համայնն։

Digitized by Google

այսմ կապակցեցին պատճառաւ. զհրոյն որչափ կիզա-
կանն է՝ ոչ ընկալաւ, իսկ զայն՝ որով աւանդի ընտանի
լոյս տունջեանն իւրաքանչիւրոյ աւուր՝ հնարաւորեցին
մարմին լինել. քանզի զայն որ ներքոյ մեր է՝ եղեալր
գոլով հրոյս այսմիկ՝ մաքուր, 'ի ձեռն աչացն գործեցին
հոսել հոյծ և անօսր, բոլոր զաչսն մանաւանդ զմէջն
սոցա կազմեցին: Իբրու զի այն թանձրագոյն գոլով
չափաւոր՝ առ ամենայն տեւական իցէ. իսկ սա միայն 'ի
լուսումն մաքրապէս սլասցի:

Արդ յորժամ տունջենային իցէ լոյս իցէ առ ե-
րեսս. յայնժամ արտաքս եկեալ, նմանւոյն և առ իւ-
րոյ շարամածեալ նմանւոյն, մի մարմին ընտանեցեալ
բաղկանայ ըստ աչացն ուղղատեսութեան. ուր և հան-
գիպեալ յեռուցու 'ի ներքուստ սլացեալս, ընդ ար-
տաքնոյն 'ի միասին խառնեալ. և նմանակիր արդեւք
ըստ ամենայնի եղեալ 'ի ձեռն նմանութեան, որոյ իսկ
սա 'ի վերայ հասցէ լուսոյ, և որոյ այլ 'ի վերայ սորայ՝
սոցա շարժութիւնքն բաշխելով յամենայն մարմինն՝
մինչև ցհոգւոյն ետ զգայութիւնն, ըստ որոյ իսկ ա-
սեմք տեսանել. և յորժամ գնայցէ 'ի գիշերի ազգա-
կից հուրն, և հատցի առ նմանն արտաքս եկեալ, այլ-
այլի նոյնս, և շրջանի՝ զկցորդն բնութեան սորա հուր
մերձաւոր օդոյն, ոչ ունելով. դադարէ 'ի տեսանելոյ,
և տակաւին մակածական քնոյ լինիցի. քանզի աս-
տուածքն փրկութիւն աչացն հնարեցան՝ զարտևանցն
բնութիւն: Զի յորժամ սոքա խնուցուն՝ հրոյն բնու-
թիւնն, ներքոյ սոցա խափանի. և հանդարտեալ դիւ-
րացուցանէ զներքին շարժութիւն: Որոց դիւրացեալ
հանդարտութիւն լինիցի, և բազում հանդարտու-
թեան եղեալ սուղանուրջ նինջ եկեսցէ: Ապ՝ եթէ
մնասեն շարժութիւնք՝ ոմանք մեծագոյնք, որպիսիք և
իցեն յորպիսի տեղիք մնասցեն, այնպէս երևեցուցա-
նեն, և զնմանեալսն ներքոյ, և զարթուցելոց իցեն
յիշմամբ կարծիս, և յաղագս՝ այն որ 'ի հայելւոջն է
պատկերագործութիւն. զամենայն որչափ փայլուն և
երևելի տեսանել ոչ ինչ է դժուարին: Քանզի այնմիկ
որ ներքոյ է և արտաքոյ երկաքանչիւր հրոցն հաղոր-
դութիւն լինի առ միմեանս, և միոյն դարձեալ առ
փայլուն ինչ նիւթ, և յարմարել որպէս բազում ան-

գամ, ամենայն այսպիսիսն 'ի հարկէ երևելին. զի այն որ առ դէմն է հուր, ընդ այնմ որ առ աչսն է հրոյն 'ի ձեռն զօրկութեանն և պայծառութեանն՝ զուգակից լինիցի. և աջակողմն երևեսցի 'ի յահեակ կոյս, քանզի ներհական մասանցն երեսաց առ ներհական մասունս լինիցի վերահասութիւն՝ ըստ առարկուածին հաստատուն սովորութեանն, և աջակողմ՝ աջակողմն, և կամ ահեակ ձախակողմ՝ փոխանակ այնմիկ, յորժամ փոխաբերիցի շարամփծեալն լոյս յայնմանէ՝ առ որոյ էր իսկ զուգաշարժեալ: Եւ այս, յորժամ հայելեացն փայլունն՝ յայսկոյս և յայնկոյս բարձրութիւն ընկալեալ, զաջակողմն մասն աչացն 'ի ձախակողմն մերժիցէ, և կամ զմիւսն առ միւսոյն: Եւ ըստ երկայնութեանն դարձեալ դիմին՝ զնոյն ինքս յետս գնացեալ ամենեւին ցուցանէ զստորինն՝ առ 'ի վերինն փայլման, և զվերջինն առ 'ի ստորինն դարձեալ մերժեալ: Այսուիկ արդ զամենայն պատճառակցութեանն են [1] որոց աստուած պաշտմամբքն վարելով՝ զքաջագունին, ըստ որում հնար էր, կատարելով զտեսակն: Եւ կարծին առ 'ի բազմաց՝ ոչ պատճառակիցք այլ պատճառք գոլ՝ ամենեցուն, որ ցրտացուցանեն և ջերմացուցանեն, որ սառուցանեն և լուծանեն, և որչափ այսպիսի գործեն: Բայց բան և ոչ մի, և միտք՝ 'ի յոչինչ հնար է ունել սոցա. քանզի էակացս՝ որոյ միտք ստանալ պատշաճ է՝ ասելի է զհոգի. և սա անտես է:

Իսկ հուր և ջուր, երկիր և օդ, մարմինք ամենայն երևելիք եղեն. բայց մտաց և մակացութեան տարփողին հարկ է խոհեմական բնութեանն պատճառաց նախկին հետևել: Եւ այնոցիկ որ 'ի ձեռն միմեանց շարժեալ, և 'ի հարկէ շարժութեանն, այլք լինիցին սոցունց, երկրորդ անգամ առնելի է արդեւք: Ըստ այսոցիկ և մեզ ասելի է իսկ է զերկաքանչիւրոց պատճառացն սեռքն, սակայն որիշ որչափ մտօք բարեաց և գեղեցկագունից են գոյացուցիչք, և որչափ թափուր մնացեալք 'ի խոհեմութենէ զհանդիպեալն, յամենայն ժամ առանց կարգաւորութեան գործիցեն: Իսկ

1 Յոյնն ասէ. Արդ այս ամենայն պատճառակցացն են. այլ և՝ պաշտմամբն է 'ի յոյն պաշտօնէիւքն:

Digitized by Google

արդ՝ աչացն յամենայն պատճառսն՝ որ են առ 'ի յու-
նել սմա զզօրութիւնն, զոր այժմ ընկալաւ՝ ասացան.
և մեծագոյնն սոցա՝ առ 'ի յօգուտս գործ, վասն որոյ
մեզ աստուած զսոսա պարգևեաց, ասելի է յետ այ-
նորիկ։

Աչք արդեւք ըստ իմոյ բանիցս՝ պատճառք մեզ
մեծին եղեն օգտութեան. քանզի յայժմ ասացեալ
բանիցս յաղագս ամենայնի, ոչ ուրեմն երբէք ասա-
ցեալ էր, եթէ ոչ սոքա զաստեղք և զարեգակն և
զերկինս էին տեսեալ։ Բայց այժմ տիւ և գիշեր ե-
րևեալք, և ամիսք, և տարեաց շրջաբերութիւնք,
հնարեցան զթիւս, և զժամանակաց՝ գիտութիւն, և
յաղագս ամենայնի բնութեան [1] խնդրութիւն առ-
տուեցին։ Ուստի և մեք բարեբախտեցաք զսեռ իմաս-
տասիրութեան, որոյ մեծագոյն բարի ոչ եկն երբէք,
և ոչ եկեսցէ [2] մահկանացու ազգիս պարգևեալ յաս-
տուածոցն։ Ասացից արդեւք զայս զաչաց մեծագոյն
բարի, և զայլսն որչափ փոքրագոյնքն են. զի՞ արդեւք
գովիցէ, յորոց ոչ իմաստասէրն կուրացեալ ուրեմն ու-
նայն ողբայ։ Այլ այս ասասցի առ 'ի մէնջ. սա առ այ-
սոսիկ եղև մեզ պատճառ զաստուած գտանել, և տալ
տեսութիւն, զի զայնոսիկ որ յերկինս են՝ տեսեալք՝
շրջագայութիւնք մտաց։ Վարեսցուք առ շրջաբերու-
թիւնս այսոքիկ՝ որ առ մեզ են մտածութիւնք, քանզի
են սոքա այնոց բաղադանք խառնեալք ընդ անխառնե-
լիքն, և ուսեալք և մտածութիւն ուղղութեան հա-
ղորդեալք, ըստ բնութեան նմանեալք զաստուածոյսն՝
որ են ամենևին առանց մոլորութեան. զմեր մոլորա-
կանքս հաստատեսցուք։ Իսկ արդ յաղագս ձայնի և
լսելեացն դարձեալ նոյնդ է մեզ բան 'ի վերայ այսո-
ցիկ. 'ի սակս նոցունց՝ առ 'ի յաստուածոցն պարգևել.
քանզի բան 'ի վերայ այսոցիկ, նոցունց իսկ կարգեալ
է զմեծն 'ի սոցա շարախառնեալ մասն, և դարձեալ
որչափ զերաժշտականն ձայն պիտանացու է առ մեզ
լսելիս, և 'ի սակս յարմարանաց է տուեալ, և յար-
մարականն բաղադանս ունելով բերմունք այսոցիկ որ
'ի մեզ են հոգոյ շրջագայութիւնքս՝ այնմ որ մտօք

1 Յօր. բնախօսութեան։ 2 Յօր. եկիցէ։

Digitized by Google

*վարի երաժշտիւքն, ոչ է առ 'ի հեշտութիւն անբան, որպէս այժմ՝ թուի գոլ մեզ պիտանացու. այլ առ եղեալն 'ի մեզ անյարմար շրջագայութիւնն հոգւոյ 'ի զարդ, և 'ի միաբանութիւն սմա մարտակից յերաժըշտիցն պարգևեցաւ: Եւ երգ դարձեալ վասն անչափ եղելոյն 'ի մեզ առ յոլովս առանց խնդութեան ունակութեանն օգնական 'ի վերայ այսոցիկ, 'ի ձեռն նոցունց պարգևեցաւ: Իսկ արդ՝ անցեալքն յասացելոցս ցուցան բաց 'ի սղից, սակայն այն՝ որ 'ի ձեռն մտաց էին գտացեալ: Բայց պարտ է և զառ 'ի հարկէ եղեալսն յաւելուլ 'ի բանս. քանզի խառնեալ իսկ այսմ աշխարհի լինելութիւնս 'ի հարկէ եղև, և 'ի մտաց բաղկացութենէ. և մտաց՝ հարկի իշխելով՝ հաւանեցուցանել զսա զեղելոցն յոլովագոյնսն 'ի լաւագոյնսն ածել: Այսուիկ և ըստ այսոցիկ հարկն 'ի ձեռն խոհեմական հաւանութեանն պարտէր, և այսպէս 'ի սկզբանէ այս ամենայն բաղկանայր: Արդ՝ որ ըստ որում լեալ է, ըստ այնոցիկ ճշմարտապէս ասիցէ, խառնելի է և սմա զկարևոր պատճառին տեսակն. ըստ որում բնաւորեալ է բերիլ առ սովաւ: Արդ դարձեալ ընթանալ. և առեալ սոցա նոցունց՝ միւս սկիզբն պատշաճաւոր. դարձեալ իսկ յաղագս այնոցիկ՝ որ յայնժամ էին, այսպէս և այժմ յաղագս նոցունց սկսանել 'ի սկզբանէ:*

*Իսկ արդ զայն 'որ նախ քան զլինելութիւնն էր երկնի, հրոյ, և ջրոյ, օդոյ և երկրի, բնութիւն տեսանելի է, և զկիրքն՝ որ յառաջագոյն քան զսոսա: Զի այժմ ոչ ոք երբէք լինելութիւն սոցա ազդեաց. այլ իբրու գիտողաց՝ թէ զինչ է հուր երբէք, և զիւրաքանչիւր 'ի սոցանէ՝ ասեմք սկզբունս զսոքա եդեալք, և տարերք ամենի պատշաճեալք սոցունց. ոչ փաղառութեան տեսակօք. միայն վայելչապէս 'ի ձեռն այնորիկ կարծիլ, որ դուզնաքեայ ինչ խորհի: Եւ այժմ արդ այս առ 'ի մէնջ ունիցի. այսպէս զայն որ յաղագս ամենայնի իսկ էր, եթէ սկիզբն էր, եթէ սկզբունք, թէ որպէս յաղագս այսոցիկ թուի՝ ոչ է այժմ ասելի. վասն այլոյ և ոչինչ, այլ վասն դժուարին գոլոյ ըստ հասեալ յեղանակիս պատմութեանս՝ զթուեցեալսն՝ յայտնել: Ոչ արդ դուք կարծիցէք պարտ գոլ ինձ ա-*

Digitized by Google

տել, և ոչ դարձեալ ես հաւանեցուցանեմ զանձն իմ կարող գոլ իբրու թէ ուղղաբար առնեմ արդեւք զձեռնարկութիւնս, այսչափ գործ յանձն առեալ։ Այլ զառ 'ի յսկզբանէ ասացեալն պահելով՝ զպատշաճաւոր բանիցն զօրութի փորձ արաւն'րից՝ ոչ ուրուք նուազագոյն, այլ մանաւանդ իրաւագոյն, և 'ի նախուստ՝ որպէս 'ի սկզբանն՝ յաղագս իւրաքանչիւրոց և զույգ ամենեցուն ասացից։ Զաստուած արդեօք, և այժմ սկզբմանս այնոցիկ, որ ասելոց եմք փրկիչ կարդացեալք՝ յանտեղի և յանսովորական պատմութենէս, առ վայելչական բանից աւանդութիւն հաստուցանել զմեզ։ Եւ արդ դարձեալ սկիզբն յաղագս ամենայնի, լիցի մեծապէս քան զյառաջագոյնն բաժանեալ. քանզի յայնժամ՝ յերկուս տեսակս բաժանեցաք, և այժմ յայտնելի է մեզ այլ երրորդ սեռ. զի երկուսն իսկ բաւական էին առ նախ ասացեալսն. մի իսկ՝ իբրու յարացուցի տեսակ, ենթադրեալ, իմանալի, և միշտ ըստ նոցունց գոլով, 'և նմանող յարացուցին. երկրորդ՝ լինելութիւն ունելով, և երևելի[1]: Իսկ երրորդ՝ յայնժամ ոչ բաժանեցաք, կարծեցեալք բաւական գոլ զերկուսն։ Բայց այժմ նմանեցաւ բանս 'ի հարկել ըզմեզ դժուարին և աղօտ ինչ տեսակ ձեռնարկեալ բանիւք՝ երևեցուցանել. զիարդ ունելով զօրութիւն ըստ բնութեան զսա կարծելի է։ Բայց մանաւանդ՝ այսպէս, ամենայն լինելութեան ընդունող և դայեակ զսա գոլ։ Ասացաւ արդեօք ճշմարտապէս, այլ պարտ է յաղագս սորա ասել հաւաստի. և այլպէս դժուարին է վասն տարակուսելոյ յաղագս հրոյ, և որ առ հուրն են 'ի սակս այսորիկ. քանզի 'ի սոցանէ զիւրաքանչիւրսն ասել թէ որպէս ճշմարտապէս, ջուր պարտ է ասել մանաւանդ կամ հուր, և զամենայն ըստ իւրաքանչիւրում այսպէս։ Իբրու զի հաւատարիմ և հաստատուն բանիւ, յաղագս այսոցիկ վարել դժուարին է. որպէս արդեօք զայս ինչ, և կամ զիա՞րդ. և կամ զի՞նչ յաղագս սոցա իրաւապէս տարակուսեալ ասասցուք։

Իսկ արդ՝ զոր այժմ ջուր անուանեցաք մածեալ

1 Յօր. և նմանող երկրորդ յարացուցին լինելութիւն ունելով...:

Digitized by Google

իբրու թուի մեզ զքարինս, և հող տեսանեմք, լեալ և հալեալ դարձեալ. և ընտրեալ, նոյն զայս հողմ և օդ լեալ, և զօդ կիզեալ, հուր լեալ, և անդրադարձեալ, և բաղդատեալ, և շիջեալ, և 'ի տեսակ օդոյ հասեալ հուր՝ և դարձեալ զօդ շարամածեալ և թանձրացեալ, ամպ և մէգ, և 'ի սոցանէ տակաւին թաղեալն զհուր հոսէ։ Եւ 'ի ջրոյ լինի դարձեալ հող և քարինս, և բոլորապէս առ միմեանս այսպէս հասեալք երևեցուցանեն զլինելութիւն։ Եւ այսպէս սոցունց ոչ երբէք իւրաքանչիւրոց զիւրաքանչիւրն թուեցեալ, զորպիսին 'ի սոցանէ զմի ինչ զոլ, և ոչ այլ ինչ հաւաստաբապէս՝ հակառակելով, ոչ ամօթալի առնէ զանձն իւր։ Ո՛չ է այլ զգուշութեամբ երկարբանիւք՝ յաղագս սոցունց եղեալք ասեմք՝ այսպէս միշտ, զոր տեսանեմք այլ ուրուք, այլ լեալ իբրու հուր. ոչ զայս՝ այլ զայնպիսին՝ յայնժամ առասել հուր. և ոչ զայս ջուր, այլ միշտ զայնպիսին. և ոչ զայլ ինչ երբէք՝ և ոչ ինչ իբրու ունելով ինչ հաստատութիւն, որչափ ցուցանեմքս բանիւ, որ ասէ թէ այս ինչ է, և սովաւ վարեալք վարկանիմ յայտնել ինչ, քանզի Ճողոպրի ոչ հանդուրժելով զայս ինչ էին, և կամ այսուիկ, և զամենայն որչափ ասացութիւն տևական իբրու էակք զսոսա ցուցանէ. այլ զայնոսիկ իւրաքանչիւր ասել, և զայսպիսիս միշտ շրջաբերելով նմանապէս յաղագս իւրաքանչիւրոյ և ամենեցուն միանգամ այսպէս կոչել. քանզի հուր այն է, որ յամենայն ժամ այնպիսի է, և այլ ամենայն որչափ ունի զլինելութիւն, որով իսկ եղեալ իւրաքանչիւր միշտ թուեսցի; և դարձեալ անդուստ կարիցէ միայն զայն առասել, այս ինչիւն, և այսպիսի իրիւն վարեալք անուանակոչութեամբք, և որպիսի ինչ ջերմն, կամ սպիտակն, և կամ այլ ինչ զինչ ինչ և իցէ 'ի հակակայիցն, և ամենայն որչափ 'ի սոցանէ իցեն, ոչինչ յայնցանէ կոչէ զսա, և տակաւին հաւաստի յաղագս սորա դարձեալ պարտ է ասել յօժարութեամբ, զի եթէ զամենայն ձևս ստեղծեալ ոք յոսկւոյ, և ոչ ինչ 'ի սոցանէ յեղափոխեալ դադարեսցէ 'ի միաժամն խառնեալ զամենայն։ Ցուցեալ արդ ոմն մի 'ի սոցունց, և հար-

Digitized by Google

ցեալ թէ զինչ երբեք իցէ, յոյժ առ ճշմարտութիւն
զգուշական է ասել թէ ոսկի է։ Եւ զեռանկիւնն, և
որչափ այլ ձևք լինին, ո՛չ բաղկացութիւն զսոսա ա֊
սել. քանզի 'ի միջի եղեալ այնպիսիքն փոխաբերիցին.
այլ եթէ կամիցի զգուշութեամբ ընկալուլ զոմն յայս֊
պիսեաց թուեսցի սիրել[1]։ Նոյնս արդեօք բանս իցէ
և յաղագս այնմ որ զամենայն մարմինս ընդունի բնու֊
թեանն, նոյնպէս գոլ սմա՝ միշտ առասելի է. քանզի
իւրոյ զօրութենէ ամենևին արտաքս ոչ ելանէ. քան֊
զի ընդունի միշտ զամենայն և կերպարան, և ոչ մի եր֊
բեք, զոչ և միայն առ սա 'ի ներքս մտելոցն նմանեալ
ընկալաւ ոչ ուրուք ամենևին. քանզի կերպարանող
ամենայն բնութեան առաջի կայ, շարժեալ և ձևա֊
ցեալ առ 'ի յայնոցիկ որ 'ի ներքս հասցեն, և երևես֊
ցի վասն այնոցիկ այլ երբեք այլպէս։

Իսկ 'ի ներքս մտեալքն՝ այլոց էակացն[2] միշտ են
նմանողք։ Տպաւորեալք 'ի սոցանէն յեղանակաւ ինչ
դժուարասաց և զքանչելեօք, ընդ որովք յետոյ անց֊
ցուք պատմութեամբ։ Եւ արդ 'ի յայսմ վայրի պարտ
է երիս սեռս զմտաւ ածել. զմին իսկ լեալ և զմիւսն
յորում լինի, և ոմն այլուստ նմանութիւն ընկալեալ
բնաւորի լեալն։ Եւ արդ՝ նմանեցուցանել զսոսա վայել֊
չագոյն է, ընդունողն՝ մօր, և զայն ուստի լինի՝ հօր,
և զոր 'ի մէջ սոցա է բնութիւնն՝ ծննդեանն. և իմա֊
նալ իբրու ո՛չ արդեւք, այլպէս օրինակի փոխման հան֊
դերձելոյ զանազանութիւն կերպին, ո՛չ բարեւք՝ այլ֊
պէս փոխիցէ, եթէ ոչ մաքուր իցէ, և պատրաստ՝ յո֊
րում փոխել կամիցի զտիպն, քանզի առանց կերպի
գոլով յամենայն տեսակաց՝ յորոց հանդերձեալ է ըն֊
դունել ուստեք։ Քանզի եթէ նման իցէ ուրուք յայն֊
ցանէ՝ որ 'ի ներքս մտանեն, զներհական բնութեանն
իրն ամենևին ընկալեալ, յորժամ եկեսցէ չարաչար
նմանեցուցանէ արդեօք, զիւրն առաջի ցուցանելով
զդէմս։ Վասն որոյ և ամենայն տեսակացն արտաքոյ
գոլ պարտ էր, այն որ զամենայն սեռս ընդունելոց էր

1 Յոբ. ԻԸ. ԺԷ։
2 Յն. Իսկ 'ի ներքս մտեալքն և ելեալքն՝ էակացն միշտ են նմա֊
նողք։

Digitized by Google

յինքեան, որպէս և այնոքիկ, որ զդեղքն կազմեն, որչափ անուշահոտք են՝ արուեստիւ հնարին: Նախ զայն գործել որ հանապազ նոյնպէս է, զի մանաւանդ անուշահոտք են 'ի խառնուածն այնոքիկ, որ ընկալուն զհոտքն. և որք 'ի կակղագոյն նիւթիցն՝ յումանս ընձեռեն ձև ինչ տպաւորել: Ամենևին 'ի սմա յառաջագոյն ձև երևել ոչ թողուն, այլ դիւրացուցանելով ողորկագոյն գործեն:

Այսպէս և այն՝ որ զամենեցուն միշտ էակացն՝ ամենևին յինքեան բազում անգամ նմանութիւնս բարեզք՝ ընկալուլ հանդերձեալ էր յամենայն տեսակացն պատշաճ էր արտաքոյ գոլով բնաւորիւ. վասն որոյ արդեւք զերևելի եղելոյս և ամենայն զգալոյս մայրն և ընդունողն, ոչ երկիր, ոչ օդ, ոչ հուր և ոչ ջուր ասեմք. և ոչ որչափ 'ի սոցանէ են, և ոչ յորոց սոքա եղեն. այլ անտես ինչ տեսակ, և անկերպարան, ամենայնի ընդունակ, և զմտաւ ածեալք տարակուսանօք ուրուք, քան զիմանալին դժուարահաս զսա ասելով ոչ ստեսցուք, և որչափ 'ի նախասացելոցն հնար է հասանել նորայն բնութիւն, այնուիկ արդեւք ուղղագոյն ասիցէ ոք: Իսկ հուր յամենայն ժամ զհրացեալ մասն սորա երևել, և զխոնաւացեալն ջուր և երկիր և օդ. զայն որչափ նմանութիւնն սոցայն ընդունիցի. և բանիւ մանաւանդ զայսպիսիս սահմանելով խնդրել 'ի մեզ յաղագս սոցա:

Արդ՝ է ինչ հուր ինքն յինքենէ, և ամենայն յաղագս որոց միշտ ասեմք, այսպէս ինքեանք ըստ ինքեան իւրաքանչիւր. կամ այսոքիկ՝ զորս տեսանեմք, և որչափ այլք 'ի ձեռն մարմնոյս զգալիք են մեզ, միայն են այսպիսի՝ ունելով ճշմարտութիւն, և այլ ոչ են քան զայս ոչ ուրուք, ոչ երբէք. այլ 'ի սնոտի՝ յամենայն ժամ ասեմք գոլ՝ տեսակ իմանալի իւրաքանչիւրոյ, սակայն սա ոչ ինչ է արդեւք, բայց միայն 'ի բանէ [1]: Արդ ոչ է պարտ՝ առանց ընտրութեան և դատողութեան, զայս ինչ թողուլ հակառակելով, և ասել արժան գոլ այսպէս ունել. և ոչ 'ի վերայ բանի երկարութեան այլ վարկպարազի երկարութիւն արկանել:

1 Յն. և այն ոչ այլ ինչ էր՝ բայց բան միայն:

Ապա եթէ ասացեալ մեծ սահմանդ 'ի ձեռն սղից ե-րևեսցի այս, մանաւանդ ժամանելի [1] մեզ եղիցի ար-դեւք։

Աստանօր արդ ես զիմս եդից դատակնիք [2]. եթէ միտք և կարծիս ճշմարտեն երկու սեռք, ամենևին գոլ ըստ ինքեանց զսոսա, առանց զգայութեան միայն առ 'ի մէնջ իմացեալ։ Ապա եթէ իբրու ոմանց երևի, կարծիս ճշմարիտ 'ի մտաց զանազանի ոչ ինչ, զամե-նայն՝ որչափ 'ի ձեռն մարմնոյ զգալիս են, մեզ դիցուք հաստատագոյն։ Երկու արդեւք ասելի են, այնիւ վասն զի որիշ են, և աննմանապէս ունին։ Զի ոմն 'ի ձեռն ուսմանն, և ոմն 'ի ձեռն հաւանականութեան առ-մեզ պատի. և ոմն միշտ ճշմարիտ բանիւ, և ոմն առանց բանի. և ոմն անշարժ հաւանմամբ, և ոմն փոփոխելի հաւանմամբ. և միւս՝ զամենայն այր հաղորդել ասելի է, և մտաց՝ զաստուածք, և մարդկան սեռ՝ սուղ ինչ։ Եւ սոցա այսպէս ունելով, խոստովանելի է՝ մի գոլ զտեսակս, որ ունի ըստ այսոցիկ, զանեղն և զանբաց բառնալին. ոչ 'ի յինքն ընդունելով այլ ուստեք, և ոչ ինքն 'ի յայլ երբեք փոխելով, և անտես, և այլ պէտս [3] առանց զգայութեան, զայս ինչ՝ զոր արդ ի-մացութիւնս ընկալաւ դիտելի է [4]։ Իսկ զհամանունսն նման այնմիկ, երկրորդ զգալի, եղանելի, բերեալ միշտ, լինելով 'ի տեղւոջ ուրուք, և դարձեալ անդուստ կորուսեալ. կարծեւք՝ հանդերձ զգայութեամբ պար-առելի։ Եւ դարձեալ երրորդ սեռ ելով զվայրն միշտ ապականութիւն ոչ ընկալեալ [5]. ամենեցուն հաս-տատութիւն պարգևելով՝ որչափ ունի զլինելու-թիւն, և սա է առանց զգայութեան շօշափելի, խորթ, մտածութեամբ հազիւ հաւանելի՝ առ որոյ իսկ նայելով երազի իսկ թուիմք, և ասեմք հարկա-ւոր գոլ որ ինչ են ամենայն 'ի տեղւոջ ուրուք զվայր ոմն ունելով։ Իսկ զայն, որ ոչ 'ի յերկրէ և ընդ երկնա-ւորօք՝ ոչինչ գոլ։ Զայսոսիկ արդեւք ամենայն, և այլ

1 Ժամանելի. այս ինքն կարևորագոյն։
2 Այս է. եդից զիմ կարծիս։
3 Թերևս՝ այլպէս, այսինքն այլազգ։
4 Յոյնն՝ ընկալաւ դիտել։
5 Ըստ յունին՝ զվայրացն միշտ ապականութիւն ոչ ընկալեալ։

եղեալք սոցունց. և առ այնմիկ, որ առանց շնորհե-
լոյ [1], և ճշմարտապէս բնութիւն գոլով 'ի ձեռն սորին
երազատեսութեանն, ոչ կարողք լինիցիմք. զարթու-
ցեալք՝ սահմանելով ասել զճշմարիտն, իբրու գաղա-
փարաւ առասելի է. քանզի ոչ զայն իսկ առ որով եղև՝
է ինքեան լեալ, բայց այլ զայլոյ ուրուք միշտ բերէ
զկարծիս: Վասն այնորիկ յայլում իրի պատշաճ է լի-
նել ուրուք՝ գոյացութեան կերպ բերելով, կամ ոչ ինչ
ամենևին զսա գոլ: Իսկ այն որ հաստատապէս էակ է,
օգնէ 'ի ձեռն ստուգութեան ճշմարիտ բանի. իբրու
մինչ արդեւք ոմն այլ ինչ իցէ, և ոմն այլ. չէզոք 'ի չէ-
զոքումն երբեմն եղեալ, մի համանգամայն զսա և եր-
կու լինել: Այս իսկ արդ առ 'ի յիմոյ դատողութե-
նէս՝ իբրու համառօտապէս յաղագս այսոցիկ ասացի
բանս՝ իբրու վայր և լինելութիւն գոլ զսա երիս ե-
ռակի, և նախ քան զերկրի լինելութեան. դայեակս
է [2] գինջացեալ և հրացեալ, և զերկրի և զօդոյ զկեր-
պարանս ընդունել, և զայլս որչափ սոցունց հետևին
կրեալ ախտք, պէսպէս երևելով տեսութիւն: Բայց
վասն զի ոչ նմանապէս զօրութեամբք, և ոչ հաւասա-
րագունիւք էր լցեալ, ոչ և ըստ մի իրի գոյր հաւասար,
առանց [3] հանդարտութեան ամենևին սասանելով
շարժէր:

Իսկ ինքն 'ի ձեռն այնոցիկ և դարձեալ շարժեալ
և զայնոսիկ սասանեցուցանէր: Եւ սոքա շարժեալ այլ
ինչ այլ ուրուք դատեալ [4] միշտ բերէր. իբրու այնոքիկ
որ 'ի ձեռն շարամանեալ գործարանացն [5] յաղագս ցո-
րենոյն մաքրութեան, շարժելով զսոսա՝ առ ցնդման
օդոյ՝ զայն որ թանձրագոյնքն են և ծանր՝ այլուրուք.
և զանգայտքն և զթեթևագոյնքն յայլում բերեալ

1 Յօրինակին գրեալ էր՝ շնորհ՛ելոյ, զոր մարթ էր ըստ յունին ըն-
թեռնուլ՝ առանց նիրհելոյ:

2 Յոյնն. և նախ քան զերկրի լինելութիւն: Իսկ զդայեակն լինե-
լութեան, խոնաւացեալ և հրացեալ...:

3 Գիտէ՝ այլ առանց...:

4 Անհեդեդ հելլենաբանութիւն է որ իմանի այսպէս՝ իսկ նոքա
որ շարժինն, այլքն այլուր (այս ինքն ոմն յայս կոյս և ոմն յայն) ըն-
տրեալ և զատեալ միշտ բերին...:

4 Շարամանեալ գործարանք են հիւսեալ գործիք 'ի մաքրել
ցորեան:

հաստատէ վայրի։ Եւ յայնժամ այսպէս չորք սեռքս սասանեալ 'ի ձեռն ընդունողին, և սորա շարժելով իւրոյ գործարանի՝ սասանումն ունելով, զաննմանագոյնն՝ յոլովապէս սահմանելով 'ի միմեանց, զնմանագոյնն մանաւանդ առ միմեանս զուգաւորել։ Վասն որոյ իսկ այլ ինչ զայլ ընկալաւ վայր, նախ քան զամենայնի 'ի սոցունց զզարդարիլն և լինելն [1]. և յառաջ քան զայս իսկ էին ամենայն անչափաբար առանց համեմատութեան. և յորժամ ձեռնարկութիւն լինէր [2] ամենայնի զարդարման, հուր նախ և երկիր, և ջուր և օդ, և զհետս նոցունց ինքեանց ունելով, սակայն այնպէս ամենևին տրամակայեալ, որպէս վայել է գոլ այնմ, յորմէ աստուած հեռացեալ իցէ։ Այսպէս արդ յայնժամ բնաւորեալ զսոսա, նախ ձևացոյց տեսակաւ և թուովք։ Ըստ որում հնարէր քաջ գեղեցկագունիւք, ոչ այսպէս ունելով, աստուածն բաղկացուցեալ զսոսա, որ և միշտ յամենայնի լիցի մեզ ասացեալ։ Եւ այժմ զկարգաւորութիւն զսոցա իւրաքանչիւրոց ճըշմարիտ բանիւ ձեռնարկելի է առ ձեզ յայտնելով։ Այլ քանզի հաղորդեալ էք ճանապարհացն ըստ խրատու, 'ի ձեռն որոց ցուցանին ասացեալքս, 'ի միասին կարեաց հետևիլ [3]։ Նախ իսկ հուր և երկիր և ջուր և օդ, զի մարմինք են՝ այս ամենայն ուրուք յայտ է. և ամենայն՝ մարմնոյ տեսակ և խորութիւն ունի, և դարձեալ խորութեանն ամենևին հարկ է զտափարակ ձևոյն բնութիւնն ընկալաւ։ Եւ ուղիղն տափարակ հաստատութեանն՝ յեռանկիւնեացն է բաղկացեալ. եռանկիւնքն ամենայն 'ի յերկոցունց սկսանի եռանկիւնեաց, մի իսկ ուղիղ ունելով զերկաքանչիւրոցն անկիւնն, և զերկուսն՝ սուրս. յորոց մինն երկաքանչիւր կոյս՝ ունի մասն ուղիղ անկեան, հաւասար կողմանք բաժանեալ. և միւսն անհաւասարօք անհաւասար մասունս բաշխելով։ Զայս իսկ հրոյ սկիզբն, և այլոց ենթադրեսցուք մարմնոց, բանիւն՝ որ ըստ հարկի է՝ վա-

1 Այս է. մինչև ամենայնն զարդարեալ և գոյացեալ։
2 Յոր. լինէր։
3 Այսպէս յօր. իսկ յոյնն՝ 'ի ձեռն որոց ցուցանել արժան է զասացեալքս, հետևեսջիք 'ի միասին։

յերկրապէս գնացեալ. և տակաւին վերագոյն սոցունց զսկզբունքն աստուծոյ է գիտել, և արանց այնոցիկ՝ որ զայնպիսիսն իմաստասիրէ [1]: Եւ պարտ է ասել եթէ որք լինիցին գեղեցկագոյն չորս մարմինն՝ աննմանս են-քեանց, սակայն հնարաւորեալ առ 'ի միմեանց 'ի նո-ցունց լուծմանէն փութանակի լինել: Զի այսորիկ հանդիպեալք՝ ունիմք զճշմարտութիւնն՝ յաղագս լի-նելութեան երկրի և հրոյ, և այնոցիկ՝ որ 'ի մէջ սոցա են, համեմատաբար. զի յայս ինչ ոչ գտցուք ներու-թիւն, գեղեցկագոյն սոցունց ասել՝ երևելի գոլ մար-մինք, որ են իւրաքանչիւր՝ մի ըստ միոջէ ըստ սեռից: Յայս ինչ արդ յօժարանալ մեզ պարտ է, զզանազան գեղեցկութիւնք մարմնոյ՝ առ չորս սեռս յարմարեալ, և ասել զմեզ բաւականապէս զսոցունց ընկալեալ զբը-նութիւնս: Եւ արդ երկոցունց եռանկիւնիցն հաւա-սարասրունն՝ զմի ընկալեալ է բնութիւն, և յառաջա-ձիգն՝ անեզր բնութիւնս յօժարանալ: Արդ պարտ է յայնմիկ որ գեղեցկագոյն է, յայնցանէ՝ որ անեզրք են, եթէ հանդերձեալ եմք ըստ յեղանակի սկսա-նել:

Արդ եթէ ունիցի ոք գեղեցկագոյն ինչ ընտրեալ, և ասել առ սոցունց բաղկացութիւնն, նա և յաղթի-ցէ՝ ոչ գոլով թշնամի մեր՝ այլ սիրելի: Դիցուք բա-զում եռ. արդեւք 'ի անկեանցն [2] մի զգեղեցկագոյնն, այլոցն վերագոյն անցեալ, յորմէ հաւասարակողմն ե-ռանկիւնն, յերրորդէ բաղկացեալ է, վասն որոյ և բանք յոլովագոյնք են: Բայց այսորիկ ընտրողին և գը-տողին, այսպէս իսկ ունելով, առաջի կան նահատա-կութիւնքն սիրելիք: Արդ ասացաւ յառաջագոյն եր-կու եռանգիւն յորոց՝ հրոյն և այլոցն մարմինքն հը-նարաւորեցան. ոմն հաւասարասրունն և միւսն եռա-կըրկին՝ ըստ զօրութեան ունելով քան զփոքրագոյնն միշտ զմեծագոյն կողմն: Եւ զառաջագոյն հաւասատի ասացեալն՝ այժմ մանաւանդ սահմանելի է: Քանզի չորք սեռքն 'ի ձեռն միմեանց առ միմեանս երևիւր

1 Յոյնն. և արանց այնոցիկ՝ որ նմա (Աստուծոյ) սիրելի իցեն:

2 Իմա՝ Դիցուք արդեօք 'ի բազում եռանկեանցն զմին գեղեցկա-գոյն....:

ունելով զամենայն լինելութիւն, ոչ ուղղապէս կար-
ծեցեալք։ Քանզի լինին յեռանկեանցն՝ որ յառաջա-
գոյն ասացաք՝ սեռք չորք. երիս իսկ 'ի միոյն յայնմա-
նէ՝ որ զկողմունսն անհաւասար ունի, և չորրորդ՝ մինն
միայն 'ի հաւասարասրուն եռանկիւնոյն շարայարեալ։
Ոչ ապաքէն հնար է ամենեցուն առ միմեանս լու-
ծեալ, 'ի բազում փոքունց, սակաւ մեծքն, և զոր
այսմ ներհականն է՝ լինել։ Եւ երիս, իբրու այսպէս,
զի 'ի միոջէ ամենայն բնաւորեալ և մեծագունիցն լու-
ծեալ բազում փոքունք 'ի նոցունց բաղկասցին, ընդ-
ունելով զոր պատշաճ է յինքեանց ձևութիւնք. և
բազում փոքունս դարձեալ՝ յորժամ ըստ եռանգեանց
ցրուեսցի, եղեալ մի թիւ՝ միոյ հաւաքման մեծ ար-
դեօք կատարեսցէ այլ տեսակ մի։ Այսոքիկ արդ ա-
սացաւ յաղագս առ միմեանս լինելութեան։ Այլ ե-
թէ իւրաքանչիւր 'ի սոցունց, որպիսի եղև տեսակ ին-
քեանց թուոց 'ի միասին անկեալ՝ ասելն արդեւք այ-
սոցիկ հետևի։ Սկսանի արդ յայնժամ առաջին տեսակ
և փոքրագոյն բաղկացեալ. իսկ տարրն նորա որ ու-
նի զստորաձիգն փոքր կողմաւն՝ կողմն կրկնապատիկ
ունի երկայնութեան. և 'ի միասին երկուց զսոցունց
հաւասարահանդէպ շարադրեալ, և երից սորա լինե-
լով զհաւասարահանդէպ և զսուղ կողմունսն, 'ի նոյն,
իբրու մէջնակէտ հաստատելով՝ մի հաւասարակողմ
եռանգիւն՝ յայնչանէ որ թուով վեց են՝ եղև։ Եւ
եռանկիւնք բաղկացեալ հաւասար կողմունս՝ չորս,
ըստ երից տափարակ անկեանցն, մին հաստատուն ան-
կիւն առնէ, յետ բթագոյն անկեանն ըստ կարգի տա-
փարակացն եղելոց։ Եւ այսպիսեաց չորից կատարելոց՝
առաջին տեսակ հաստատուն՝ շրջաբերատեսակ բոլորի
բաշխական՝ 'ի հաւասար մասունս, և 'ի նմանս բաղկա-
նայ. և երկրորդ իսկ՝ 'ի նոցունց եռանկեանցն։ Ըստ
հաւասարակողմ եռանկեանց՝ ութից բաղկացելոց,
զմին գործելով հաստատուն անկիւն 'ի չորից տափա-
րակաց, և եղելոց այսպիսիք վեց. երկրորդ մարմինն
դարձեալ այսպէս ընկալաւ կատարումն. և երրորդն
յերկիցս [1] վաթսնից տարրից 'ի միասին մածելոց, և

1 Յօր. յերկինս։

յերկոտասան հաստատուն անկեանցն, 'ի ձեռն հըն-
կից տափարակ անկեանց հաւասարակողմանց, պա-
րունակելով իւրաքանչիւրոյ բարձք ունելով քան հա-
ւասարակողմ եռանկիւնս եղև: Եւ միւսն իսկ 'ի տար-
րեցն 'ի տոցունց 'ի բաց փոխիւր [1], զայսոքիկ ծնեալ:
Եւ հաւասարասրուն եռանկիւննն, ծնաներ [2] զչորրոր-
դին բնութիւն, բաղկացեալ ըստ չորից, զուգիղ ան-
կիւնսն ժողովելով 'ի կէտն, և մի հաւասարակողմ
քառանկիւն գործեալ: Եւ վեց այսպիսիք 'ի միասին
հաստատեալ, ութ անկիւն հաստատունք կատարե-
ցին. և զերիս տափարակս ուղիղս՝ [3] իւրաքանչիւրոյ
յարմարեալ: Իսկ ձեռն բաղկացեալ մարմնոյս, եղև
կորովագոյն, վեց տափարակ քառանկիւն հաւասարա-
կողմն ունելով բարձք: Եւ տակաւին այլոյ միոյ եղլ
հինգերորդ բաղկացութեանն՝ առ ամենայն աստուած
սորա պիտօքն վարիւր [4], զայն ինչ կենդանագրելով.
զոր եթէ զմտաւ ածէ ոք, փութութեամբ տարակու-
սեսցի՝ թէ որպէս, անեզր աշխարհս գոլ պարտ է ա-
սել, եթէ այնքան որ ընկալեալ են եզր:

Իսկ արդ եթէ անեզր ասել վարկանիցի ճշմար-
տապէս, անհմտի ուրուք գոլ աւանդութիւն, այնոցիկ՝
որոց հմուտ գոլ պարտ է, և քանի. մին եթէ հինգ
զասա ճշմարտապէս բնաւորիլ ասել երբէք պատշաճ
է, մանաւանդ աստանօր կացեալ իրաւապէս տարա-
կուսեսցի: Իսկ արդ որ առ 'ի մէնջ է բանիւս, մի զսա
ըստ վայելչական բանին բնաւորեալ ազդեցուցանէ
աստուած: Բայց այլ ոք՝ [5] յայլս ինչ նայեցեալ, այլ-
պէս կարծիցէ. բայց մերոյ բանիս զհետ երթալ պարտ
է: Իսկ արդ զեղեալ այժմ զբանիւ զսեռս բաշխես-
ցուք 'ի հուր և 'ի ջուր և յերկիր և օդ: Երկրի արդ
զկորովական տեսակն տացուք. քանզի անշարժագոյն
է երկիր քան զչորս սեռս, և մարմնոց ստեղծականա-
գոյն. և մանաւանդ հարկ է լինել այսպիսի այնմ որ
ունի զբարձքն հաստատագոյն: Եւ բարձք այն է, որ 'ի
սկզբանն՝ եռանկեանցն ներքոյ եդաւ, զգուշութիւն

1 Յոր. փոխեր:
2 Յոր. ծնաներ:
3 Յոր. խաղխաղէն:
4 Յոր. վարեր:
5 Յոր. այլք:

ըստ բնութեան 'ի հանգիտէն և անհանգիտէն. և երկաքանչիւրոց 'ի միասին եղեալ տափարակն հաւասարակողմ՝ հաւասարակողմի, քառանկիւն՝ եռանկեան, ըստ մասանց և ըստ բոլորի հաստատապէս 'ի հարկէ հաստատեալ։

Վասն որոյ երկրի իսկ զայսպիսիս ձև տալով զխայեղականն պահեմք[1] բան. և ջրոյ դարձեալ քան զայլսն՝ զդժուարագոյն[2] տեսակն, և զգիւրաշարժագոյնն՝ հրոյ, և զմիջինն՝ օդոյ. իսկ զփոքրագոյն մարմինն՝ հրոյ, և զմեծագոյնն դարձեալ՝ ջրոյ, և զմիջինն՝ օդոյ, և զսրագագոյնն դարձեալ հրոյ, և զերկրորդն՝ օդոյ, և զերրորդն՝ ջրոյ։ Այսպիսի արդեւք ամենայն, ոմն սակաւս ունելով զհաստատութիւնս, դիւրաշարժագոյն հարկ է բնաւորիլ, և հատու[3] ամենեցուն, և արագագոյն, և տակաւին ամենեցուն թեթևագոյն 'ի սակաւուց իւրոց մասանց բաղկացեալ. և երկրորդն՝ երկրորդաբար զայսոսիկ զնոյն ունելով. և երրորդաբար իսկ երրորդն։ Եղիցի արդ ըստ ուղիղ և վայելչական բանին՝ փայլականին հաստատուն եղեալ տեսակն հրոյ տարրն և սերմ. և զերկրորդն ըստ լինելութեան ասասցուք զօդոյ. և զերրորդն՝ ջրոյ։ Եւ զայսոսիկ արդեւք զամենայն զփոքունս խորհել այսպէս, իբրու զի մի ըստ միոջէ իւրաքանչիւր իսկ սեռին 'ի ձեռն մանրութեան ոչ երևելով առ 'ի մէնջ, սակայն 'ի միասին հաւաքելոյ բազմաց ժողովոցն սոցա երևիլ։ Իսկ զհամեմատութեանցն առ բազմութիւնս և շարժութիւնս, և այլ զօրութիւնքն, ուր և բնութիւն կարեացն կամեցեալ և կամ հաւանեալ տարեալ հպատակ իւրս սմա ամենեւին 'ի ձեռն ստուգութեան կատարեալ յատուծոյ՝ առ 'ի սմանէ շարայարմարիլ զսոսա ընդ համեմատութեան։ Եւ արդ՝ յամենեցուն՝ որք սեռքն՝ նախ ասացաք, որով արդեւք զատ իւրում վայելչականն է՝ ունիցի իսկ յաւետ։ Եւ երկիր շարահանդիպեալ հրոյ, և լուծեալ 'ի ձեռն սորա արագութեամբն բերեալ արդեօք լինիցի, եթէ յինքեան նովիմբ լուծեալ հրով, և եթէ 'ի յօդոց, և կամ 'ի ջրոյ ժողովս պատա-

1 Յօր. պարփակէմք։
2 Յոյնն. զդժուարաշարժագոյն։
3 Յօր. հասու։

հիցի. մինչև սորա մասունքն հանդիպեալ ուրուք, դարձեալ շարայարմարելով ինքեանց՝ երկիր լինիցի. զի ոչ յայլ ինչ տեսակ եկեսցէ երբեք: Եւ ջուր[1] 'ի ձեռն հրոյ բաժանել, և կամ 'ի ձեռն օդոյ՝ հնարի լինել շարակայութեամբ, մի ըստ մարմինհրոյ, և երկու՝ օդոյ:

Իսկ և օդոյ հատուածքն, 'ի միոյ մասնէ լուծանելով երկու արդեւք լինիցի մարմինք հրոյ: Եւ դարձեալ յորժամ հուր օդով և ջրով, և կամ երկրաւ ոմամբք շրջափակեալ սակաւ 'ի ձեռն բազմաց շարժել ոգոք՝ ճերելով, և մարտուցեալ և յաղթեալ փշրեսցի, երկու մարմինք հրոյ 'ի միասին բաղկանան 'ի մի տեսակ օդոյ. և օդ յաղթեալ և բաժանեալ յերկու, կէս բոլորից ջրոյ, մի տեսակ բոլորից իցէ շարամածեալ: Եւ այսպէս դարձեալ խորհեսցուք զսոսա իբրու յորժամ վառեալ ինչ յայլոցն 'ի ձեռն սորա ինչ սեռ, անկեանցն՝ այն որ ըստ կողմանցն է սրութեամբն հատցի, բաղկացեալ իսկ 'ի նորին բնութիւն՝ դադարէ 'ի հատանելոյ: Քանզի այն որ նման է, և նոյնպէս ինքեամբ իւրաքանչիւր սեռն, ոչ փոփոխման ուրուք 'ի սմա լինել հնար է, և ոչ կրել ինչ 'ի ձեռն այնմիկ որ ըստ նոցունց և նմանապէս ունիցի: Մինչև արդեւք այլ ինչ լինելով նուազ ընդ լաւագունին մարտիցէ՝ 'ի լուծանելոյ ոչ դադարէ: Եւ դարձեալ փոքունքն յորժամ մեծագունիւքն բազմօք պարառին սակաւք՝ փշրեալ շիջանիցին, բաղկանալ իսկ կամելով 'ի յաղթողին տեսակն՝ շիջեալք դադարեսցին. և լինի 'ի հրոյ՝ օդ, և յօդոյ՝ ջուր. և եթէ յայսոսիկ հասեալ, և ընդ այլոցն սեռիցն 'ի միասին գոլով մարտիցէ՝ 'ի լուծանելոյ ոչ դադարէ՝ նախ քան զամենևին մերժելովն և լուծանելովն առ իւր ազգակիցն ձողոպրիցի. և կամ յաղթելով՝ մի 'ի բազմացն յաղթողին նման լինիցի, նորին զուգաբնակ մնալով. և ըստ այսոցիկ կրիցս ամենայն արդեօք փոփոխիցեն զվայրս: Քանզի բաժանեալ է իւրաքանչիւրոյ սեռի բազմութիւնն ըստ իւրոյ տեղւոյն, վասն ընդունողին զսոսա շարժութեան. և աննմանեալքն ինքեանց յամենայնի, և այլոց նմանեալքն

1 Յօր. Եւ ջուր 'ի յետոյ:

Digitized by Google

բերին 'ի ձեռն սասանմանն, առ այն տեղի՝ որոց նմանիցին արդեօք։ Որչափ արդեւք անապակ և առաջին մարմինք են 'ի ձեռն այսպիսեաց եղեն պատճառաց։ Իսկ այնոքիկ սեռք որ 'ի տեսակ նոցա են այլ բնաւորիլ՝ զերկաքանչիւրոց տարրիցն պատճառելով զբաղկացութիւն, ոչ միայն երկաքանչիւրով մեծութիւն ունել իսկզբանէ հաստատեալ զեռանկիւնն, այլ մեծաւ, փոքումբ. զԹիւն ունելով այնչափ որչափ և լցեն արդեօք այնոքիկ՝ որ 'ի տեսակքն են սեռք։ Վասն որոյ արդեւք շարախառնեալ ինքեանս առ նոյնս և առ միմեանս, զանազանութեամբն անեզր են. որոյ պարտ է տեսողք լինել հանդերձելոցն յաղագս բնութեան վարիլ բանիւ վայելչականաւ։ Իսկ յաղագս շարժութեան և հաստատութեան, որում յեղանակաւ, և կամ յետ որոց ոմանց լինելով, եթէ ոչ խոստովանեսցի [1], բազում ինչ արգելք գոլ հետեւեալք խորհրդոյն։

Իսկ արդ ոմանք յաղագս նոցունց ասացան. և առ այնոքիկ տակաւին՝ և այս ինչ. 'ի հանդարտութեան արդեւք ոչ երբէք կամել շարժութիւն գոլ։ Քանզի շարժեցեալն առանց շարժեցողին, և կամ շարժեցողն առանց շարժեցելոցն, դժուարին և մանաւանդ անհնար է գոլ. շարժութիւն ոչ իցէ՝ սոցա ոչ ելոյ. և սոցա երբէք հանդարտ գոլ անհնար է։

Այսպէս արդ զհաստատութիւն 'ի հանդարտութիւն, և զշարժութիւն յանհանդարտութիւն իսկ դիցուք։ Եւ պատճառ դարձեալ՝ անհաւասարութիւնն է անհանդարտ բնութեանն. և ընդ անհանդարտութեանն լինելութեամբ անցաք բանիւս, բայց թէ որպէս ոչ ըստ սեռից բաժանելով իւրաքանչիւր դադարեցին 'ի ձեռն միմեանց շարժութենէն և բերմանէն՝ ոչ ասացաք. աստանօր դարձեալ ասասցուք։ Ամենայնի շրջաբերութիւնս, քանզի պար առեալ է զսեռք՝ բոլորատեսակ գոլով, և առ ինքն բնաւորեալ կամիլ զուգաբերիլ, ընու զամենայն, և թափուր տեղի ոչ և մի թողու պակասելոյն։ Վասն որոյ հուր իսկ յամենայն մանաւանդ եհաս, և օդ՝ երկրորդ, իբրու անօսրագոյն բնաւորեցաւ երկրորդ. և այլքն այսպէս։ Քանզի այ֊

1 Յօր. խոստփայէ։

նոքիկ՝ որ մեծաց մասանց լեալ են՝ մեծագոյն դա-
տարկութիւն 'ի բաղկանալն Թոզուցուն, և փոքրա-
գոյնսն՝ դուզնաքեայ . և Թաղկելոյն շարագայումն
զփոքունսն 'ի մեծացն դատարկքն մերժէ : Փոքունց այդ-
առ մեծագունիցն դնելով, և փոքրագունիցն զմեծա-
գոյնսն ընտրելով, և մեծագունիցն զայնոսիկ բաղդա-
տելով, ամենայն 'ի վեր և 'ի խոնարհ փոխաբերի առ
իւրեանց տեղիս [1] : Քանզի փոխարկելով զմեծու-
Թիւնն իւրաքանչիւր և զտեղւոյն կայումնն փոխարկէ :
Այսպէս արդեօք և վասն այսոցիկ՝ անհանդարտու-
Թեանն մնալով, միշտ լինելուԹիւն սոցունց ելով. և
ելոց գոլով ստիպաբար առտուիցէ : Իսկ առ յետ այ-
սոցիկ եԹէ հրոյ սեռք բազումք են եղեալք, իբրու
բոցք. և այն որ 'ի բոցն է շարակայեալ որ այրէ իսկ,
ոչ սակայն լոյս տայ աչացն. և այն որ 'ի շիջանելն բո-
ցոյն՝ 'ի հրացեալսն մնացեալ լինի 'ի սմանէ : Ըստ այ-
սոցիկ և օդոյ պանծագոյնն իսկ մակակոչուԹեամբն
եԹերն կոչեցեալ, և պղտորագոյնն՝ մէգ և խաւար :
Եւ այլ անանուն տեսակք եղեալք վասն եռանկեանցն
անհաւասարուԹեանց : Եւ ջրոյն՝ երկակի իսկ, նախ
ոմն գէջ, և ոմն հոսանուտ սեռք սորա : Իսկ արդ գէջն՝
վասն հաղորդ գոլոյ ջրոյս սեռիցն, որ մանրագոյնքն են
և հաւասարք, և շարժական նոյնդ, և ըստ ինքեան և
'ի ձեռն այլ ուրուք, վասն անհանդարտուԹեանն, և
վասն ձևոյն տեսակին եղև : Իսկ այն որ 'ի մեծաց և
հանդարտեցելոց կայուն իսկ քան զայն և ծանրագոյն՝
և 'ի ձեռն հանդարտուԹեանն : Եւ 'ի ձեռն հրոյ մտա-
նելով և լուծանելով զսա՝ զհանդարտուԹիւնն 'ի բաց
Թօթափէ. և զայս իսկ կորուսեալ՝ հաղորդի մանա-
ւանդ շարժուԹեան. և դիւրաշարժ լինելով, 'ի ձեռն
մերձաւոր օդոյն մերժելով և տարածելով առ երկրաւ
մաշել զհաւաքմանցն բաժանմունքն, և հոսումն, զկա-
ցումն առ երկրաւ [2], մականունուԹիւն երկաքանչիւր
կրիցն ընկալաւ : Եւ դարձեալ արտաքոյ անկեալ աս-
տուստ հրոյն, և իբրու ոչ 'ի դատարկ հասեալ, մեր-
ժելով օդոյն՝ որ մերձ է, դիւրաշարժ գոլով տակաւին

[1] Յօր. ամենայնիւ վերև խոնարհ փոխաբերելն առ իւրեանց տեղիս :
[2] Յօր. զկացումն առ մականունութիւն :

զգեղ հաւաքմունքն, և ’ի հրոյն հաստատութիւնքն մերժելով, սա ընդ նմա խառնիցի։ Եւ մերժեալն առեալ դարձեալ զհանդարտութիւնն՝ իբրու յանհանդարտութեանն գոյացուցիչ հրոյն հեռացեալ, ’ի նոյնն նովաւ հաստատի. և զհրոյն ’ի բաց հեռացումն, ցրրտութիւն, և շարագայումն նորին մածեալ գոլ սեռ ատացաւ՝ ’ի սոցունց արդեօք ամենեցուն որչափ հոսանուտք են ջուրք. Նախ ասացաք զոմն իսկ ’ի յանօսրից և ’ի հանդարտագունից հոծագոյն եղեալ միատեսակ սեռ, փայլուն և շիկատեսակ հաղորդեալ, պատուականագոյն ստացուած ոսկի, քամեալ ածէ ’ի ձեռն քարի։ Եւ ոսկւոյ ոստ, վասն հոծութեանն կարծրագոյն լինելով սևացեալ, ադամանդ։ Եւ հուպն իսկ ոսկոյն մասանցն տեսակ յոլովս քան զմի ունելով, և հոծութեամբ քան զոսկի հոծագոյն գոլով, և յերկրէ մանր մասին և անօսրագունի հաղորդեալ, իբրու թէ գոլ կարծրագոյն. և մեծագոյն ներքոյ իւրոյ պակասումն ընկալեալ, թեթևագոյն քան զպայծառագոյնն, և մածեալ սեռ ջրոյ բաղկացեալ պղինձ եղև, և ’ի յերկրէ ընդ սմա խառնեալ, յորժամ հնացի, և դարձեալ մեկնի ’ի միմեանց, յանդիման ըստ ինքեանց ժանկ ասի[1]։ Եւ զայլքն այսպիսեաց ոչինչ պաճուճեալ է խորհիլ, վայելչական բանիւն, զհետ երթալով տեսակի։ Զայն, որ ’ի սակս հանգստեան, յորժամ յաղագս էակացն դիցէ միշտ զբանք, ընդ այնոքիւք ընթանալով որ յաղագս լինելութեան են վայելչագոյնք անզղջալի հեշտութիւն ստանայ, չափաւոր արդեւք ’ի կենցաղումն զխաղալիմն խոհեմութիւն արարեալ։

Այսպէս և արդ այժմ զոր յետ այսորիկ են՝ թողացուցանելով յաղագս նոցունց, զայն զոր ինչ ’ի կարգին են վայելչապէս՝ ասասցուք. այսպէս ընդ հրոյ խառնեալ ջուր, որչափ անօսր և խոնաւ է ’ի ձեռն շարժութեանն ճանապարհին՝ սահեալ ’ի յերկրի ջուր կոչի ’ի կակղագոյն ելոյ հաստատութեան սորա, և ’ի կարծրութենէն նուազեալ, և կամ երկրի ասացեալ։ Սա յորժամ ’ի հրոյ անջատի և յօդոյ միայնանայ՝ հանդարտագոյն լինիցի, մերժեալ ’ի ձեռն այնոցիկ՝ որ

1 Յոր. ժանկայի։

Digitized by Google

արտաքս ելցէ 'ի սմա։ Եւ սատուցեալ այսպէս այն որ գեր 'ի վերոյ է քան զերկիր մանաւանդ զայս կրելով՝ կարկուտ, և որ առ երկրաւ է՝ սառն, և այն որ նուազ ինչ կիսամած իցէ տակաւին՝ որ գերագոյն քան զերկիր, դարձեալ ձիւն. և որ առ երկրաւ շարամածեալն իցէ, 'ի ցօղոյ լինելով՝ եղեամն կոչի։ Իսկ և յոլովագոյն ջրոց տեսակքն խառնեալք ընդ միմեանս, 'ի միասին զսեռն, այնոցիկ՝ որ 'ի յերկրէ են տունկք քամեալ՝ խառնուածք ասացեալս։ Եւ վասն խառնուածոցս՝ աննմանութիւն իւրաքանչիւր ընկալեալ, զայլ բազում առանց նմանութեան սեռս առտուեցին։ Բայց չորս՝ որչափ հրախառն և յստակագոյն մանաւանդ տեսակք լինելով ընկալան անուանս իւրեանց։ Այն իսկ՝ որ հոգոյն է հանդերձ մարմնովն ջերմացուցիչ, գինի. և կակուղն և ընտրողականն աչաց՝ վասն որոյ տեսանեն զպայծառն՝ և զփայլեալն պարարտ թուեցեալն և իւղաբուղխ տեսակ, ձէթ և իւղ, և որչափ այլ են 'ի նոցունց զօրութենէ, և որչափ ծաւալական է մինչև ցբնութիւնն այնոցիկ՝ որ առ բերանովն են ճանապարհացն, այսմ զօրութեամբ քաղցրութիւն առտուելով, մեղր՝ որ ընդդէմ ամենեցուն է մանաւանդ ընկալաւ առասութիւն, և որ լուծականն է մարմնոյ այրելով, զփրփրատեսակ սեռն, յամենեցունց խառնուածոյ որոշեալ՝ կաթն մականուանեցաւ։ Եւ երկրի տեսակք քամեալն իսկ 'ի ձեռն ջրոյ այսպիսի յեղանակաւ լինի մարմին քարեղէն. զշարախառնեալ ջուրն յորժամ յետ զուգախառն մասին հատանի՝ փոխարկելով 'ի յօդոյ բնութիւն. և եղեալ օդ՝ 'ի յիւրն տեղի վերստին ընթանայ։ Եւ զսա թափուր ոչ ինչ էր պար առեալ։ Արդ զմերձաւոր օդն մերժեաց, և սա իբրու ծանր ելով, մերժեալ և ծաւալեալ առ երկրաւ՝ յոյժ անծկացոյց զսա և մերժեաց առ հիմունս ուստի ելեալ էր, մինչդեռ նոր էր օդն։ Եւ 'ի միասին շարամածեալ անլուծաբար 'ի ձեռն օդոյ երկրի ընդ ջրոյ, վէմ բաղկանայ. գեղեցկագոյն իսկ հարթ և հանդարտ և յստակագոյն մասամբքն, և յոռին որ ներհակն է նոցունց։ Եւ այն որ 'ի ձեռն հրոյ արագութեան ամենևին յափշտակէ զգիջայինն։ Եւ կարծրա-

Digitized by Google

գոյն քան զվէմն [1] լինիցի, որոյ սեւի անօթ կոչեմք, այս ինչ եղև։ Եւ է յորժամ խոնաւութիւն մնացէ 'ի կաւացեալ երկրին, 'ի ձեռն հրոյ յորժամ ցամաքիցի՝ լինի քար, այն որ զսեաւն [2] ունի գոյն։

Եւ այնուիկ՝ որ ըստ նոյունց այսոցիկ 'ի զուգախառնութենէ ջրոյ, 'ի բաց միանալով [3] յոյժ անօսրագունիւքն 'ի յերկրէ մասամբքն, աղտաղտուկ եղով, կիսամած լինիցի. և սա դարձեալ 'ի ձեռն ջրոյ, է ոմն իւղոյ և տղմի մաքրական սեռն, կոչէլն՝ լուանալի. և միւսն քաջայարմար գոլով հաղորդութեան այնմիկ որ առ բերանոյն [4] զգայութիւն աղոց ըստ համեմատութեան օրինի, աստուածասէր մարմին եղև։ Եւ այն որ հաղորդք են յերկոցունց, ջրոյ ոչ գոլով լուծանելի, և հրով վասն այսպիսի յեղանակաւ՝ այսպէս մածանի [5]։ Յերկրէ՝ հուր և օդ ոչ մաշէ, քանզի բաղկացութեանն նորին դատարկացն մանրագոյնս բնաւորելով 'ի ձեռն բազում անդորրութեան հասեալ ոչ բռնադատելով, անլոյծ զսա թողացուցեալ, առանց մաշման պարգևեաց։ Եւ ջրոյ իսկ, քանզի մեծագոյն բնաւորեալ են մասունք՝ բուռն առնելով զելսն, լուծանելով զսա մաշեն։ Քանզի զայն որ ոչ լինի բաղկացեալ՝ 'ի ձեռն բռնութեան այսպէս ջուր միայն լուծանէ. իսկ զբաղկացեալն՝ բաց 'ի հրոյ այլ ոչ ինչ. զի մուտ այլ ոչ ուրուք իցէ մնացեալ բաց 'ի հրոյ։ Եւ զջրոյ դարձեալ շարագայումն, զբռնագոյն իսկ, հուր միայն. իսկ զտկարագոյնն, երկաքանչիւր՝ հուր և ջուր՝ ծաւալեցուցանեն, ոմն զդատարկացն, և միւսն՝ ըստ եռանկեանցն։ Եւ բռնութեամբ զօդ բաղկացեալ ոչ ինչ լուծանէ, սակայն ըստ տարրին, և հուր մաշեալ անբռնադատելի է։ Իսկ արդ շարախառնեալ յերկրէ և 'ի ջրոյ մարմնոցն, մինչև ջուր արդեօք և բռնութեամբ զերկրի դատարկսն, 'ի միասին թաղկացեալ ունիցի. ջրոյն իսկ մասունքն յարտաքուստ 'ի վերայ հասանելով, և առ սոքօք հոսելով, զամենայն հաւաքումն ան-

1 Յոյնն. կարծրագոյն քան զայն լինիցի։
2 Յոր. զսեան ունի գոյն։
3 Ըստ յունին թուի՝ 'ի բաց միայնանալով, բաժանելով։
4 Յոյնն. որ առ մարմնոյն զգայութեան։
5 Յոր. հածինն։

Digitized by Google

մաշ թողացոյց. իսկ հրոյն մասունքն, 'ի ջրոյն դա-
տարկք մտանելով, զոր ինչ ջուր զերկիր, զայս ինչ
հուր զօդ գործելով, մաշելով հաստարակացն մարմնոյն՝
հոսելոյ միայն այս պատճառք պատահեցան։ Եւ համ-
դիպլին սոքա գոլով զոմն ինչ նուազագոյն ունելով քան
զջուր և զերկիր. իսկ այն որ ապակոյն է սեռն ամե-
նայն, և որչափ 'ի քարանցն հալական տեսակք կոչին։
Եւ այն իսկ դարձեալ որ զյոլովագոյն մասն ջրոյ ունի-
ցի, մոմատեսակ և խնկային մարմինք բաղկանան. և
ձևոց հաղորդութեամբ՝ և փոփոխմամբ առ միմեանս
պաճուճիլ դրեթէ ցուցաւ արդեօք. և զկիրմն նոցունց,
վասն որոյ եղեն պատճառաց, փորձելի է մեզ երևե-
ցուցանել։ Նախ և առաջին պարտ է զզայութիւն գոլ
միշտ ասացելոցս։ Բայց մարմնոյ, և որ առ մարմնոյ և
որ առ մարմնաւս են զլինելութիւն, և հոգւոյ թէ
որչափ մասն է մահկանացու, ընդ սոքօք ոչ եմք ան-
ցեալ։ Բայց. համդիպլին, ոչ այս առանց այնոցիկ, որ
առ կիրքն՝ որչափ զգայական են, և այնոքիկ առանց
այսոցիկ հնարաւորին բաւականապէս ասել. և հա-
մանգամայն ասելն՝ դրեթէ անհնար է։ Արդ ենթա-
դրելի է նախ զմին և զմիւսն. և առ 'ի յետոյ ենթա-
դրելովքն դարձեալ անցցուք։ Եւ արդ զի կարգաւ
կիրքն սեռն ինքն, ասեն, եղիցի մեզ առաջինք այն որ
ինչ առ մարմինն և հոգին էակք են։

Եւ նախ իսկ ըստ որում զհուրն ջերմն ասեմք,
տեսցուք աստանօր դիտելով, զընտրութիւնն և զհա-
տուած նորին խորհելով լինել առ մարմինս մեր։ Եւ
քանզի արագ ինչ է կիրս, դրեթէ ամենեցուն մեզ
զգալի է. բայց զանօսրութիւնն կողմանց և զանկեանցն
սրութիւնն [1], և զմանրկութիւնն մասանցն, և զբեր-
մանն արագութիւնն. (որով ամենիւք ուժգին գոլով
և հատու, արագապէս զհամդիպեալն առ ինքն՝ միշտ
հատանէ) և խորհիլ պարտ է, յիշելով զձևոյ սորա
լինելութիւն, քանզի մանաւանդ՝ սա է [2], և այլ ոչ
ինչ բնութիւն ընտրող ըստ մանրկութեան բաշխմանն՝
մասանց մարմնոց մերոց, այս զոր ջերմն կոչեմք, վայել

1 Յն. զանօսրութիւնն անկեանց, և զկողմանցն սրութիւնն։
2 Յօր. առէ։

չապէս ախտն և զանունն առտուեանց։ Իսկ ներհակն սոցունց, ապաքէն յայտ է․ սակայն ոչ ինչ կարօտասցի բանի։ Քանզի այն որ առ մարմինքն են գիջայինք մե֊ ծամասնագոյն 'ի ներքս մտեալ, և զփոքրագոյնսն ար֊ տաքս մերժելով 'ի նոցունց հաստատութիւնք, ոչ կա֊ րացեալ մտանել, 'ի միասին մերժելով զխոնաւականն մեր․ և 'ի հանդարտէ [1], և 'ի շարժելոյ անշարժ՝ 'ի ձեռն հանդարտութեան՝ զառ 'ի միասին գործն գոր֊ ծելով մածուցանէ։ Եւ այն իսկ որ օտար է 'ի բնու֊ թենէն ժողովեալ՝ մարմնչի ըստ բնութեան զնոյն ինքն՝ 'ի ներհականն մերժելով․ և մարտիս այսմիկ և սասանմանս եղաւ դողութիւն և սարսափ։ Եւ այս ա֊ մենայն կիրս, և այն որք գործեն զսա՝ անուն զցուրտն ընկալաւ․ և կարծր է որոց մարմինք մեր հնազանդին․ և կակուղ որչափ մարմնոյ․ և առ միմեանս այսպէս։ Հպատակին իբրու առ փոքր ինչ տալով զհաստատու֊ թիւն։ Եւ այն որ 'ի քառանկեանցն իցէ հաստատու֊ թեանց, և յոյժ իցէ հաստատուն՝ ընդդիմարտական տեսակն։ Եւ հծութեամբ 'ի միասին եկեալն յոլո֊ վիւք՝ ընդդիմատարած լցէ մանաւանդ։ Իսկ ծանր և թեթև, 'ի վեր և 'ի ստորին ասացեալ բնութեամբն քննելով արդեօք հաւաստի յայտնեսցի։ Քանզի բնու֊ թեամբ արդ երկուս ոմանս տեղիս գոլ ներհականս ամենայն ընկալեալ երկակի, զոմն ստորին՝ առ որոյ բերի, որչափ ունիցի թանձրութիւն ինչ մարմնոյ․ և զմիւսն 'ի վեր առ որոյ անկամաբար գոլ, ամենայն ոչ ուղիղ, ոչ ուրուք կարծեալն։ Քանզի ամենայն երկնի՝ գնդատեսակ գոլով, որչափ 'ի խոնարհ հեռացեալ են, հաւասար միջոյն՝ վերջինք կոչին, և նմանապէս պարտ է բնաւորիլ վերջինս․ և մէջն իսկ զնոյն չափն 'ի վերջ֊ նոյն հեռացեալ, պարտ է թուել հանդէպ գոլ ամե֊ նեցուն։

Արդ աշխարհի այսպէս բնաւորելով ինչ յասա֊ ցելոցն 'ի վեր ոք կամ 'ի ստորին եղեալ, ոչ իրաւամբք թուեսցի զայն որ ոչ է պատշաճ ասել անուն․ քանզի միջինն 'ի սմա տեղին յիրաւի է բնաւորեալ, ոչ 'ի վեր ասել՝ ոչ 'ի ստորին․ այլ նոյն իսկ 'ի մէջ։

1 Յոյնն․ և յանհանդարտէ (և իմա՝ յանհարթէ)․

Իսկ որ շուրջ է զսովաւ, ոչ է 'ի մէջ իսկ, և ոչ ունի տարբերութիւն մասն սորա՝ մանաւանդ առ միջն. և կամ յայնցանէ որ հանդէպ իցէ: Եւ այնմ որ նմանապէս ամենևին բնաւորեալ է, զոր անուանք 'ի վերայ բերելով սորա հակակայեալք, և կամ ուր գեղեցկապէս ասել վարկանիցի. քանզի եթէ հաստատուն ինչ իցէ 'ի մէջ ամենայնի հաւասարաչափ, առ ոչ և միոյ արդեւք առ ծայրսն բերիցի, վասն ըստ ամենայնի նմանութեան սոցունց:

Այլ և եթէ շուրջ զոտքօք գնասցէ ոք՝ բոլորակի, և զոտսն 'ի վեր դարձցի կացեալ, զնոյն արդեւք 'ի վեր և 'ի խոնարհ թուեցեալ կոչեսցէ: Քանզի բոլորն, որպէս ասացաք, այժմ գնդատեսակ գոլով, զտեղի ոմն խոնարհ, և զոմն վերագոյն ասել, ոչ է առն խոհեմականի: Եւ ուստ անուանեցան այսոցիկ. և որովք էակք ասել սովորեալ եմք վասն այսոցիկ բոլոր երկինս այսպէս բաժանելով, զայսոսիկ մեզ խոստովանելի է, ենթադրելով մեզ զայս ինչ: Եթէ ոք ամենայն 'ի տեղւոջ, և մանաւանդ ըստ այնմ որ հրոյն է հասեալ բնութիւն, յորոյ և յոլովագոյն իցէ արդեւք ժողովեալ յառաջ բերիցի 'ի վերայ այնմիկ ելեալ, և զօրութիւն յայս ինչ ունելով, առեալ զմասունս հրոյ 'ի կշիռ դիցէ, և վերացուցեալ զլուծ սորա, ձգելով զհուրն՝ յաննման դիւրաւ լիցի բռնագոյն: Քանզի զօրութեամբ միով երկոցունց համանգամայն զքաղելով փոքր իսկ յաւէտ, և յոլովն նուազ հարկաւորովք թօթափելով 'ի միասին հետևիլ բռնութեան, և զյոլովն իսկ՝ ծանր և 'ի ստորին բերեալ՝ կոչել, և զփոքրն՝ թեթև և վերին:

Այսպէս արդեւք պարտ է կարծեալ զմեզ գործել, յաղագս յայսմիկ տեղւոջս. քանզի 'ի վերայ երկրի կալով, և զհողատեսակ սեռք բաժանելով, և զերկիր իցէ յորժամ ձգեմք զսա առ աննման օդոյն, և օտարաբնակ իւրաքանչիւրոյ՝ առ բաղազանսն իւր ունելով զգորովականն: Իսկ փոքրագոյնն դիւրաւ առ 'ի մեծին բռնադատեալ, 'ի յաննմանն նախ հետևի: Զսա արդ թեթև առասացաք. և զտեղին՝ առ որ բերեմք բռնութեամբ՝ վերին, և ներհականն սոցունց կիր՝ ծանր և 'ի խոնարհ: Այսոցիկ արդեւք զանազա-

Digitized by Google

նապէս ունել սոցա առ ինքեանս հարկ է, վասն զի բազմութիւնքն սեռիցն ներհականացն այլոց այլ[1] տեղիքն ունին։ Քանզի որ 'ի միւսում տեղւոջ է փոքրագոյն ելով՝ այնմ որ 'ի ներհական տեղւոջն է՝ թեթևին. և ծանրերն՝ ծանր. և այնմ որ 'ի խոնարհ է՝ խոնարհն. և այնմ որ 'ի վեր է՝ վերն։ Ամենայն ներհակք և կողմանիք և ամենևին տարբերեալք առ միմեանս արդեւք գտցին լեալք։ Եւ գոլով զայս ինչ տակաւին զմտաւ ածել պարտ է յաղագս նոցունց ամենայնի, իբրու առ ազգակիցն իւրաքանչիւրոյ ճանապարհն գոլով, ծանր իսկ զբերեալն[2] առնէ, և զտեղին՝ յորում այնպիսին բերի խոնարհ։ Իսկ այնոքիկ որ հուպ են սոցա՝ երկաքանչիւրք այլպէս։ Արդ յաղագս այնոցիկ նոցունց կրիցն այսոքիկ ասասցին[3] պատճառք։ Եւ զողորկ դարձեալ և զխոշոր կրի պատճառն ամենայն ոք, տեսեալ, և այլք ուրուք ասել իցէ արդեւք հնարաւոր։ Քանզի կարծրութիւն ընդ կակղութեան խառնեալ, և կակղութիւն ընդ հոծութեան[4] զայս ինչ գործէ։ Մեծագոյն իսկ այսուհետև հասարակաց առ բոլոր մարմինն ախտիցն, որովք անցաք. և որչափ 'ի ձեռն մարմնոյս մասնկանցն զգայութիւնք ստանալով, տրտմութիւնք նոքօք և հեշտութիւնք համանգամայն հետևեալք ունին։ Այսպէս առ ամենայն զգալի և անզգալի ախտից՝ զպատճառսն առցուք, յիշելով զդիւրաշարժ և զդժուարաշարժ բնութեանն, զոր ինչ բարժանեցաք յառաջագոյն։ Քանզի սորա զհետ գնալով պարտ է մեզ զամենայն՝ որչափ խորհիմք՝ բաժանել։ Քանզի ըստ բնութեան դիւրաշարժն՝ յորժամ սուղ ինչ կիր 'ի սմանէ անկցի, բաշխեն մասնկունքն շրջանակիւ յայլ ևս հեռագոյն մասնկունքն, զնոյն գործելով, մինչ առ խոհեմականն հասանելով պատմիցէ զարարողին զօրութիւն։ Իսկ ներհականն հաստատուն գոլով, և ոչ ըստ միոյ բոլորի հասանելով, միայն կրէ, և այլ ոչ շարժէ 'ի մերձաւորացն։ Իբրու թէ մասնկացն այլոց ոչ բաշխելով այլոց

1 Իմա՝ ներհականս տեղիս ունի մին միւսոյն։

2 Յօր. ղբերանեալն։

3 Յօր. ասացին։

4 Յոյնն ասէ. Քանզի կարծրութիւն ընդ անհարթութեան խառնեալ, և հարթութիւն ընդ հոծութեան ընծայեցուցանէ։

մանկացն, առաջին կիրն 'ի նոցունց անշարժ եղեալ
'ի բոլոր կենդանիսն, առանց զգայութեան զկրեալն
եցոյց: Այսոքիկ իսկ յաղագս առ ոսկերօքն և հերօքն,
և որչափ այլք երկրայինս զյօրինս ունիմք 'ի մեզ մասն֊
կունքն: Լինիցին և այն իսկ որ յառաջին կոյս առ աչսն
և լսելիսն մանաւանդ, 'ի ձեռն հրոյ և օդոյ սոքօք զօ֊
րութիւն մեծագոյն գոլ: Իսկ արդ զհեշտութեանն
և զտրտմութեանն այսպէս պարտ է խորհել: Հեռա֊
գոյնն իսկ 'ի բնութեան լինելով և բռնադատականն
յանկարծակի այն է հեշտութիւն, և այն իսկ որ դիւ֊
րաւ և ըստ մանրկութեան լինիցի՝ անզգալի է [1]. և
ներհականն նոցունց՝ լինի ներհակապէս. և ամենայն՝
դիւրութեամբ եղեալ՝ զգալի իսկ է մանաւանդ, սա֊
կայն տրտմութեան և հեշտութեան ոչ հաղորդին.
իբրու այսոքիկ որ առ տեսութեանն են կիրք. որ և
մարմին յառաջագոյն ասացաւ զօր հանապազ բնակա֊
կից մեր լինելով: Քանզի 'ի սմա հատմունք և խա֊
րանք [2], և որչափ այլ կիրք են՝ տրտմութիւն ոչ առնի֊
ցեն և ոչ դարձեալ հեշտութիւն, 'ի նոյնն հասանե֊
լով տեսակ: Սակայն մեծ և հաւաստի զգայութիւնք
են, ըստ որոց արդեւք և որչափ սա ուրուք՝ առար֊
կուածաւ 'ի վերայ հասցէ: Քանզի բռնութիւն ամե֊
նևին ոչ գոյ առ ընտրութիւնն սորա և բաղդատու֊
թիւն: Իսկ այնոքիկ որ մեծօք մասամբք մարմինքն են,
և հազիւ հասանին առ գործօղն, բաշխելով զշարժու֊
թիւնքն ի բոլորն՝ հեշտութիւնք ունիցին և տրտմու֊
թիւնք, օտարացեալ իսկ՝ զտրտմութիւնն, և 'ի նոյնն
դարձեալ հաստատելով՝ զհեշտութիւնք: Եւ որչափ
ըստ մանրութեան զհպելն և զհեռութիւնն [3] իւրեանց
ընկալեալ են, և զլրմունս [4] յանկարծակի, և մեծա֊
մեծս այնոքիկ դատարկելովն անզգալիք են, և լրու֊
թեամբն՝ լինելով զգայականք, տրտմութիւն ոչ իսկ

1 Յոյնն. Զի որ արտաքոյ է բնութեանն և բռնադատ 'ի մեզ կիրք՝
ցաւաբերք են. և որ ըստ բնութեանն յանկարծակի և գնասցէ 'ի
բաց՝ հեշտագոյն է և ներհականն...:

2 Յօր. խորանք:

3 Յոյնն. Եւ որչափ մանունս զանջատումն և զդատարկութիւնն
առնուցուն, և լրութիւնս մեծամեծս...:

4 Յօր. գլրմունք:

Digitized by Google

հատուցանելով մահկանացու մասինն հոգւոյ, սակայն հեշտութիւնս մեծագոյնս. և յայտ է, զի առ անուշահոտութիւնքն այս ինչ լինիցի: Եւ որչափ յանկարծակի օտարանան, և ըստ մանրութեանն հազիւ դարձեալ 'ի նոյնն եկեալ հաստատին, զներհական առաջնոցն հատուցանեն զամենայն: Եւ այս իսկ առ խարմունքն, և հատուածքն մարմնոյն լինելով յայտ են: Իսկ արդ հասարակաց բոլոր մարմնոյն կիրքն և 'ի մականուանութեանցն այնոքիկ որ գործողացն իւրոց լինիցին, գրեթէ ասացաւ: Եւ այն իսկ որ լինին 'ի յատուկ մասամբք մեր, զկիրքն և զպատճառսն գործողացն ասել մեզ փորձ է առնելով պարտ է արդեւք [1], եթէ հնարաւորեսցուք:

Նախ արդ որչափ յաղագս խառնուածոցն յառաջագոյնսն ասելով 'ի բաց թողաք, յատուկ գոլով զսոքա կիրք առ լեզուաւն, երևեցուցանել արդ պարտ է ըստ որում հնար իցէ. և երևին այսոքիկ իբրու բազում անգամ 'ի ձեռն բաղդատութեանց ոմանց և ընտրութեանց լինելով. և առ սոքօք վարիլ մանաւանդ քան զայլս՝ խոշորութեամբ և ողորկութեամբ: Քանզի որչափ մտեալ առ երակքն, իբրու լեզուոյն փորձութեամբ [2], ծաւալելով առ սիրտն, 'ի խոնաւագոյն մասունքն մարմնոյն, և 'ի կակղագոյնքն ընկենլով, և 'ի հողայինքն խոշորեցուցանելով՝ 'ի միասին ժողովէ զփողս երակացն, և գօսացուցանէ [3]. այնոքիկ խոշորագոյն գոլով՝ տտիպ անուանին. և նուազ խոշորագոյն գոլով՝ այն է որ ներհակն է նորին: Իսկ և այն որ սոյունց մաքրողք են առ լեզուաւն՝ լուանալով, զամենայն առաւել քան զչափն զայս գործելով, և հասանելով առ 'ի ջերմացուցանել զընութիւնն, որպէս է զօրութիւն մաքրական տեսակացն, դառինք ամենայն այսպէս անուանեցան. և որք նուազագոյնքն են քան զսորայն ունակութիւն, և չափաւոր ինչ առ մաքրութիւնսն պիտանացու, աղի առանց դառն խոշորութեան, և յաւէտ մեզ երևին սիրելի: Իսկ այնոքիկ որ

1 Իմա. ասել մեզ ջանալի է՝ եթէ մարթասցուք:
2 Յոյնն. լեզուոյն փորձականք (երակքն):
3 Յոր. ցգօսացուցանէ:

Digitized by Google

բերանոյն են ջերմութեամբն հաղորդելով. և ծաս֊
քեալ 'ի ձեռն սորա՝ 'ի միասին ջերմասցին, և դար֊
ձեալ ընդ ինքեան ներհակապէս զջերմացուցիչն այ֊
րելով, և 'ի ձեռն թեթևութեան 'ի վեր բերեալք առ
զգայութիւնքն գլխոյն, հատանելով [1] զամենայն առ
որոց արդեւք հասանիցի, վասն այսոցիկ զօրութեանց
ամենայն այսպիսիքս կծու անուանեցան։ Եւ այնոքիկ
որ 'ի սոցանէ մանրանալով [2] 'ի ձեռն փտութեան, և
'ի նեղագոյն երակսն իջանելով, և այնոցիկ որ աստա֊
նօր են հողային մասանց, և որչափ օդային իցեն չա֊
փաւորութիւն ունելով, իբրու շարժմամբ առ միմեանս
գալարելով զստսա, և գալարեալ շուրջ միմեամբք, և
'ի յիրար մտանելով փողատեսակ գործել, տարածե֊
լով զստսա շուրջ այնոցիկ՝ որ 'ի ներքս մտանեն. իբրու
խոնաւութիւն, զօդով [3] շուրջ տարածելով, զոմանս
հողատեսակս [4], և զոմանս մաքուրս՝ խոնաւական ա֊
նօթք [5] օդոյ՝ ջուրք [6] փողատեսակք և շրջաբերք լինե֊
լով։ Եւ այն իսկ որ մաքրագոյնն են՝ յստակագոյն գո֊
լով հաստատիլ, և անուանակոչութիւն ընկալուլ
զայնմ իրի, որ ընդմիջաբար գոլով օդոյ՝ հաստատի
'ի ջրոյ անօսրագոյն ձևով [7]։ Եւ այնոքիկ՝ որ հողատե֊
սակքն են 'ի միասին շարժելով և վերանալով՝ եռա֊
ցումն և շաղախումն մականուանութիւն ընկալուլ. և սռ֊
ցունց ախտիցն պատճառն ասիլ քացախ։ Եւ առ այ֊
սոքիկ ամենայն ասացեալքս, կիր ինչ ներհական 'ի
ներհակայէ լինիցի պատճառէ, յորժամ 'ի ներքս մտե֊
լոցն թաղկացութիւն գիջութեամբ իւիք այնոքիւք՝ որ
լեզուոյն ունակութեանն ընտանի է բնաւորեալ, դիւ֊
րացուցանէ, ողորկելով զխոշորացեալս, և զստարա֊
գոյնսն 'ի բնութեանն թաղկացեալս, և կամ ծաւա֊
լեալս, զոմանս հաւաքէ և զոմանս ցրուէ. և զամենայն
'ի յայսցանէ ախտից քացախուտ առասութիւն ընկա֊
լեալ. մանաւանդ յայն որ ըստ բնութեանն՝ հաստա֊

1 Յոր. զգայութիւնք հատանելով գլխոյն։ 2 Յոր. մարմնանալով։
3 Յոր. զօդոս։ 4 Յոր. հոմատեսակս։
5 Յոր. աղօթք։ 6 Յոր. ջուրք։
7 Յոյնն. և անուանակոչութիւն ընդունի՝ պղպջակ. (զայնմ իրէ
ց'յետով բացատրութիւն է պղպջակ բառին, զոր յոյնն ունի)։

Digitized by Google

տէ, հեշտ և սիրելի ամենայնի. որպէս այնպիսին բժշկութիւն՝ բուռն կրիցն լինելով՝ անուանեցաւ քաղցր. և այսոքիկ արդեւք այսպէս։ Իսկ յաղագս այնոցիկ, որ հոտոտելեացն են զօրութիւնք, տեսակ նոցա ոչ գոյ։ Քանզի հոտոցն ամենայն կիսասեռ է. և տեսակի ոչ և միոյ 'ի սոցանէ պատահեալ է զուգաչափութիւն, առ 'ի յունել զոմն հոտ։ Այլ մերն որ շուրջ զնոքօք են երակք առ երկրի, և ջրոյ սեռքն նեղագոյն են բաղկացեալք։ Իսկ այնոքիկ որ առ հրոյ և օդոյ՝ անդորրագոյնք են։ Վասն այսորիկ 'ի սոցանէ ոչ ոք ոչ երբէք զոչ և մի իմացեալ է հոտ, այլ կամ թանալով, կամ հալելով, կամ բուրելով, լինին ոմանց հոտք։ Քանզի փոխաբերելով ջրոյ 'ի յօդ, կամ օդոյ 'ի ջուր, 'ի մէջ սոցունց լինիցին. և են 'ի միասին ամենայն հոտք՝ ծուխ և կամ մրրիկ. և 'ի սոցանէ այն՝ որ յօդոյ 'ի ջուր հասանի՝ մրրիկ է, և այն որ 'ի ջրոյ յօդ՝ ծուխ։

Աստուստ անօսրագոյնք են քան զջուր, և թանձրագոյն ամենայն հոտք են 'ի միասին քան զօդ։ Եւ յայտնին յորժամ ընդդէմ խցեալ առ շնչոյն արտաբերութիւնն ածցէ. զոմն բռնութեամբ շունչն առ ինքն, քանզի յայնժամ իսկ և ոչ մի՝ զոյգ սոցա քամեսցի [1]։

Այլ շունչն 'ի հոտոց միացեալ, ինքն միայն հետևի։ Երկու արդ այսոքիկ [2] անանունք եղեն սոցունց զանազանութիւնք, ոչ 'ի բազմաց, և ոչ պարզագունից ելով տեսակաց։ Այլ երկակի իսկ այն՝ որ հեշտն է և տրտմականն՝ որք աստանօր ասացին յայտնապէս. ոմն է դժուարին և բռնադատական՝ ամենայն վայրին այնմիկ, որչափ 'ի մէջ գագաթան մերոյ և պորտոյ ձևացեալ կայ. և միւսն՝ զայս իսկ զնոյնս հեզացուցանելով, և դարձեալ ըստ որում բնաւորեալ է սիրաբար բացատրելով։

Իսկ յերրորդ մասն 'ի մեզ զգայական դիտեն զայն որ ինչ առ լսելիսն է. և 'ի ձեռն որոց պատճառաց, այն որ շուրջ զսովաւ պատահին կիրք՝ ասել

1 Յոր. ժամեցի։
2 Յունն. Արդ վասն այսոցիկ, անանունք....։

Digitized by Google

պարտ է։ Ամենևին արդեւք ձայն՝ դիցուք զայն որ 'ի ձեռն օդոյ, և ուղղի՝ որ 'ի գլուխն է և արեան՝ մինչև ցհոգւոյ գանիւ բացատրեսցի. և շարժութիւն որ առ 'ի ամանէ է, զայն որ 'ի գլխոյն սկսանելով՝ վախճանի առ հաստատութիւնն լերդին, որ անուանի լուր։ Եւ որչափ երագն է սորա զայն սուր, և որչափ սղագոյնն է՝ ծանրագոյն. և զնմանապէսն՝ հանդարտ և դիւրագոյն. իսկ զներհական նորին՝ խոշորագոյն։ Եւ մեծ՝ զբազումն. և որչափ նորին է ներհականս՝ փոքունս։

Իսկ այնոցիկ որչափ յաղագս ձայնակցութեան են սոցունց՝ առ այնոցիկ որ յետոյ ասելոցն են, հարկ է ասել այսուհետև տակաւին։ Զորրորդ սեռ մեզ զգայական այն է, զոր պարտ է բաժանել, հոծք 'ի յինքեան զանազանութիւնք ստացեալ. զորս ամենայն 'ի միասին գոյնս կոչեցաք, զբոց իւրաքանչիւրոց մարմնոց 'ի բաց հոսելով՝ աչօքն չափաւոր մասնկունք ունելով առ զգայութիւնն։ Եւ յաղագս աչից՝ յառաջագոյնսն վասն պատճառացն լինելութեանն սակաւ ինչ ասացաւ աստանօր։

Արդ որ յաղագս գունիցն է մանաւանդ իրաւացի է վայելչապէս հեզատեսակ բանիւ պատմել։ Զայն որ բերին առ 'ի յայլոցն մասնկանցն, և անկանին 'ի յաչս, ոմանք՝ փոքունք, և ոմանք՝ մեծագոյնք, և միւսք հաւասարք նոցունց աչաց մասնկաց գոլով։ Իսկ արդ հաւասարքն առանց զգայութեան են. զորս արդեւք և յստակս կոչեմք. և մեծագոյնքն և փոքունքն, ոմանք բաղդատելով և ոմանք դատելով. զսա այնոքիւք՝ որ առ մարմնոյն են ջերմօքն և ցրտօքն, և այնոքիւք՝ որ առ լեզուաւն են տտիպ տեսակաւն, և որչափ ջերմացուցիչքն են, կծուք կոչեցաք՝ եղեալք գոլով։ Եւ զսպիտակն և զսեաւն՝ նոցունց կիրք եղեալ՝ յայլում սեռի զնոյնս, և այլ կարծելով վասն այսոցիկ պատճառաց. այսպէս պարտ է արդեւք առասել զսոսա։ Իսկ զայն որ բաղդատական է աչաց՝ սպիտակ, և զներհակ նորին՝ սեաւ. և զսրագոյն բերումն և 'ի սեռէ հրոյ առ այլ ուրուք անկեալն՝ ընտրող գոլով տեսութեանն մինչև ցաչքն. և զնոքունք՝ զելսն աչացն բռնութեամբ մերժողն և հալողն, հուր յանկարծակի և ջուր՝ զոր արտօսր կոչեմք՝ հեղլով անդուստ, և զնոյնդ գոլով

հուր՝ ներհակապէս հանդիպելով։ Եւ արտաքս իսկ
վազելով հրոյն՝ իբրու փայլատակմանէ, և միւսոյն 'ի
ներքս մտանելով, և առ խոնաւականն շրջանելով, պէս֊
պէս գոյնք գալարմամբս այսմիկ լինելով՝ Ճաճանչ իսկ
զկիրս զայս առաասացուք. և զգործողն սորա անուա֊
նեցաք պայծառ և փայլուն. և զայն որ 'ի մէջ սոցունց
է դարձեալ սեռն հրոյ, առ աչացն իսկ գիճութիւնն
հասանելով և խառնեալ ընդ սմա, ոչ փայլելով, և 'ի
ձեռն խոնաւութեանն փայլման խառնելով ընդ հրոյն,
գոյն ինչ արիւնատեսակ առտուեալ, անուամբ կար֊
միր ասեմք. և պայծառն ընդ կարմրի և ընդ սպիտակի
խառնեալ՝ խարտեաշ եղև։ Սակայն թէ որչափ ընդ
որ չափուց թէ և գիտիցէ ոք ասելն՝ միտք ոչ ունի.
քանզի կարիս ոչ ինչ է, և ոչ ասի բանն իրաւապէս,
թէպէտ և չափաւորապէս ոք գոյ ասել։ Իսկ կարմիրն
ընդ սևի և ընդ սպիտակի խառնեալ՝ ծիրանի։ Եւ
ձանձախարիթ՝ ընդ սոքօք խառնելով մանաւանդ բոր֊
բոքմամբ՝ շարախառնի սեաւ։ Իսկ շէկ 'ի խարտեշի և
'ի գոշի խառնմանէ լինի. և գոշի՝ սպիտակի և 'ի սեա֊
ւի. և դեղինն սպիտակի ընդ խարտեշի խառնելով.
իսկ ընդ պայծառի՝ սպիտակ շարախառնելով, և 'ի
խորին սեաւ անկեալ՝ զկապուտակ գոյնն կատարէ. և
կապուտք ընդ սպիտակի խառնեալ՝ զլուրջն. և շէկ
ընդ սևի՝ զկանաչն. և այլքն իսկ սոցանէ գրեթէ յայտ֊
նին որովք արդեւք նմանելով խառնութեամբ զվա֊
յելչական բանն առ ինքեանս պահել։ Ապա եթէ ոք
սոցա գործով գիտաւորութիւն առնելով ըմբռնիցէ
զքննութիւն, զմարդկային և զաստուածային բնու֊
թեանն ոչ գիտացեալ արդեւք իցէ զտարբերութիւնն.
զի աստուած զբազումսն 'ի մի խառնեալ, և դարձեալ
միոյն 'ի բազումս լուծանել բաւականապէս մակա֊
ցող գոլով համանգամայն և կարող։ Ի մարդկանէ ոչ
ոք յոչ և մի 'ի սոցանէ բաւական ոչ այժմ, և ոչ
յետ այսորիկ երբէք լինիցի։ Զայսոսիկ արդեւք ամե֊
նայն այսպէս յայնժամ բնաւորեալ, 'ի հարկէ գեղեց֊
կագունին և քաջագունին գոյացուցիչն առ 'ի յե֊
ղեալսն ըմբռնէր, յորժամ զբաւականն և զկատարե֊
լագոյն աստուածն ծնանէր. վարելով սոքօք առ 'ի
պատճառսն այսոցիկ տալով սոցա պաշտօն, և բարւոյն

Digitized by Google

նիւթոյ առ ամենայն եղեալսն ինքն էր։ Վասն որոյ արդեւք պարտ է երկու պատճառաց տեսակք սահմանել, զոմն 'ի կարեաց, և զմիւսն' աստուածային և զաստուածայինն իսկ խնդրել յամենայնի սակս բարեբաստ կենցաղոյս ստացման, որչափ ընդունելի մերոյ բնութեանս։ Իսկ այն որ 'ի կարեաց է 'ի սակս այնոցիկ, խորհեալ իբրու առանց սոցունց ոչ է հնար' զնոյնս այնոքիկ իմանամք վասն որոյ փութամք, և ոչ առնուլ և ոչ այլպէս հաղորդել։ Եւ արդ այժմ յորժամ իբրու ճարտարաց նիւթս' առաջի մեզ եդաւ զսեռք պատճառացն նարկելով, յորոց պարտ է այլ բանիս մնացորդացն շարանիւթիլ. դարձեալ արդ առ սկիզբն վերստին ելցուք և 'ի ձեռն սակաւուց վաղվաղակի 'ի նոյնս եկեսցուք, ուր այժմ հասեալ եմք, և վախճան արդեօք և գլուխ ճառիս զպատշաճաւորն փորձ արասցուք մակադրել առաջնոցն։ Զի որպէս իսկըզբանն ասացաւ, զայսոսիկ ամենայն անկարգաբար ունելով յիւրաքանչիւրում աստուած չափաւորութիւն արար' առ նոյն ինքն և առ այլս. և որչափ և ուր հնար էր չափաւոր և համեմատ գոլ սոցա. քանզի յայնժամ 'ի սոցանէ և ոչ մի էր հաղորդեալ այնմ որ ոչ էր հանդէպ, և ոչ ամենևին անուանել յայսցանէ' որ այժմ անուանին' արժանի էր բանիցն ոչ և մի, իբրու հուր և ջուր և որ ինչ այլոցն։ Այլ զայսոսիկ ամենայն յառաջագոյն զարդարեաց, և ապա յայսցանէ բաղկացոյց բոլոր կենդանի մի զայս, զամենայն կենդանիս ունելով ինքեան զանմահս և զմահկանացու, և աստուածայնոյն իսկ ինքն լինէր գոյացուցիչ. և զլինելութիւն մահկանացուացն իւրոց ծննդոցն գոյացուցանել հրամայեաց։ Եւ սոքա նմանեալք, առեալ զանմահ սկիզբն հոգւոյ. յետ այսորիկ, զմահկանացու զմարմինն սոքա [1] շուրջ ճախարակեցին, և կառք [2] ետուն ամենայն մարմնոյն։ Եւ այլ տեսակք սմա' շինէին մահկանացու հոգւոյ, դժուարինս և կարևորս յինքեան կիրս ունելով. նախ' զհեշտութիւն մեծ խաբէբայ չարին, և ապա զտրտմութիւն' զճողոպրիչն բա-

1 Յոր. սոքա։
2 Յոր. նոյն. յն. և կառս ետուն զամենայն մարմինն։

Digitized by Google

րեաց. և ստակաւին զվստահութիւն և զերկիւղ՝ զակնահեմական խորհրդակիցն. և զցասումն՝ զդժուարինն առ մխիթարութիւնս. և զլոյս զդիւրութեան ածանցուցիչն և ընդ զգայութեամբ անքանի և ձեռնարկելոյ ամենայն տափութեամբ: Զայսոսիկ առնելով[1], հարկաւորապէս զմահկանացու սեռն շարադրեցին: Վասն այսոցիկ արդեւք պատուելով զաստուածայինն՝ զի մի արհամարհեսցի. քանզի ամենայն հարկ էր առանց սորա ոչ գոլ զսա մեկնելով 'ի սմանէ զմահկանացուն բնակեցուցանեն 'ի մարմին այլում ուրուք բնակութեան, միջոց և սահման լինելով գլխոյն, և լանջացն, և 'ի մէջ սոցա երկաքանչիւրից եդեալք զպարանոցն, զի իցեն բաժանեալ: Եւ արդ առ զանջօքն և առ սովաւ վայրին՝ զմահկանացու սեռն հոգւոյն առտուեաց: Եւ քանզի ոմն սորա վեհագոյն, և ոմն վատթարագոյն բնաւորիլ էր՝[2] շինէ 'ի սմա զասացեալ վայրս, և մեկնէին 'ի միմեանց իբրու զարանց և զկանանց բնութիւն, զխոհեմութիւն միջնապարիսպ աստանօր 'ի մէջ սոցունց եդեալք: Եւ զայն իսկ մասն հոգւոյն՝ որ հաղորդեալ էր արութեան և ցասման մարտական գոլով բնակեցուցին հպագոյն 'ի գլուխն 'ի մէջ խոհեմութեանն և պարանոցին. զի բանականին լսող գոլով, և հաղորդելով ընդ սմա, բռնութեամբ՝ ցանկութեանցն յաղթիցէ սեռի, յորժամ 'ի ծայրաքաղաքին գոլով բանականին հրամանին կամաւորապէս անսալով ոչ կամեսցին. և զսիրտն իսկ համանգամայն երակացն, որ աղբիւր, շրջաբերեալ ուժգնաբար յամենայն անդամունսն արեանն, յընծայաբերական բնակութիւն բնակեցուցին. զի յորժամ եռասցի յանդգնութիւնն ցասմանն, պատուիրելով բանականին իբրու անիրաւ ոմն՝ առ սոքօք լինիցի գործ արտաքուստ, և կամ 'ի ներքոյ ոմանց ցանկութեանց, արագապէս 'ի ձեռն ամենայն հեղագոյն փողիցն, ամենայն որչափ զգայականն է 'ի մարմինն, զհրամանացն և զսպառնալեացն առեալ զգայութիւն հպատակ լինիցի, և ամենեւին հետեւեսցի. և այսպէս ամենայնի զլաւագոյնն արքունական թողուցու: Եւ 'ի վազելն իսկ սրտին՝ չա-

1 Յոյնն. խառնելով:

2 Յօր. բնաւորէր:

րագունից կարծեօք, և ցասմնականին [1] յարուցեալ՝ նախ գիտելով եթէ 'ի ձեռն հրոյ սրտմտականին այսպիսի բնակութիւնս [2] հանդերձեալ էր լինել, օգնականութիւն սմա հնարեալք զթոքին տեսակն բնաւորեցին. Նախ իսկ՝ կակուղ և առանց արեան, և ապա զաջիջքն 'ի ներքոյ ունելով ծախտեալ իբրև զմշտիկ. զի զշունչն և զըմպելին ընդունելով՝ հովացուցանէ, և շնչաբերութի̃ և դիւրութիւն 'ի տապումն առտուիցէ: Վասն որոյ և զառուսն շնչափողիցն՝ առ թոքումն եդին, և առ սրտին զսա հաստատեցին, իբրու համանգամայն կակղագոյն. զի յորժամ ցասումն 'ի սմա աճիցէ, վազելով հպատակութեամբ և հովութիւն գտեալ՝ նուաղ վաստակեսցի, և բանականին մանաւանդ հնարաւորի ցասմամբ տալ պաշտօն. և այն իսկ որ կերակրոց և ըմպելեաց ցանկականն է հոգւոյն, և որչափ կարօտութիւն ունիցին վասն մարմնոյն բնութեանն, զայն իսկ 'ի մէջ խոհեմութեանն և առ պորտոյն սահմանին բնակեցուցին, իբրու մսուր ամենեցուն՝ յայսմ տեղւոջս մարմնոյն սննդեանն զսա հաստատեալք. և կապեցին զսա աստանօր, իբրու վայրենի ինչ սննդական, հարկաւոր կերակրելով և 'ի միասին գոլով եթէ հանդերձեալ ինչ իցէ մահկանացուն գոլ սեռ: Զի միշտ [3] ճարակելով առ մսրին և հեռագոյն 'ի խորհրդականէն բնակելով, զխռովութիւնն և զխնդութիւնն դուզնաքեայ առնելով, զայն որ հզօրն է 'ի հանդարտութեան յաղագս ամենեցուն հասարակաց պատշաճին. Թողուցու խորհիլ, վասն այսորիկ աստանօր ետուն սմա զդասութիւն: Եւ գիտելով զսա իբրու 'ի բանականն ոչ էր հանդերձեալ խորհիլ, թէ և հասու լինիցի ուրուք երբեք սոցունց զգայութեանն, ոչ բնականագոյն սմա՝ զի փոյթ առնիցէ բանից ումանց. և 'ի ձեռն կերպարանաց և կարծեաց գիշերայնոց և տունջեանականաց մանաւանդ ափոփեսցի. զայսոսիկ արդեօք առ սմա աստուած խորհելով զլերդոյն տեսակն բաղկացոյց, և եդ

1 Յոր. ցասմնականիցն:

2 Յոյնն. այսպիսի ուռուցումն հանդերձեալ էր...: (Վրիպակ ընթերցումն թարգմանչին, որպէս և վերոյ յընծայաբերական բնականին, զի առէ յոյնն δορυφορικὴ οἴκησις.

3 Յոր. Զիւր:

Digitized by Google

'ի նորայն բնութիւն, հոծ և ողորկատեսակ, և պայծառ և քաղցր, և դառնութիւն հպելով[1] հնարաւորեաց։ Զի 'ի սմա տրամախոհութեանցն առ 'ի մտացն բերելով զօրութիւն, և ընդունելով զտիպս, իբրու 'ի հայելւոջ, և տեսանելով զպատկերս, յորժամ բաղադան դառնութեան մասամբն վարելով դժուարապէս հացէ առ 'ի սպառնալիս. և յամենայն լեարդն արագապէս խառնելով՝ մաղձատեսակ գոյնս երևեցուցանէ, և 'ի միասին ժողովեալ զամենայն առնէ լղծ և խոշոր. և խափանէ զընդունական դրունքն, զոմանս՝ առ ուղիղսն Թիւրելով և 'ի միասին հաւաքելով, և զոմանս խնլով և փակելով՝ տրտմութիւն առտուիցէ և արտաշնչութիւնք[2]։ Եւ յորժամ դարձեալ զներհական սոցունց երևմունս կենդանագրիցէ, հեզութեան ուրուք կաթիլ ընչըս 'ի տրամախոհութենէ դառնութեան իսկ հանդարտութիւն շնորհելով, ոչ շարժելով և ոչ մերձենալովն առ ներհականն իւրոյ բնութեանն կամեցեալ. և քաղցրութեան՝ որ առ նորին է սորա բնակից առ ինքեան վարելով, և զամենայն ողորկատեսակ ուղիւղ և ազատ ուղղելով. զուարթ և հանդարտ առնիցէ զայն՝ որ առ լերդովն բնակեալ է մասն հոգւոյ, և 'ի գիշերին հանգիստ ունելով չափաւոր՝ դիւթութեամբ վարիլ առ քունն. քանզի բանիւ և խոհեմութեան հաղորդեալ ոչ է։ Քանզի յիշելով զԹուղթ հօրն՝ բաղկացուցիչն մեր, յորժամ գրէր զմահկանացու սեռս իբրու արիագոյն առնել ըստ զօրութեան, այսպէս արդեւք ուղղելով, և յուռնս՝ զի 'ի ճշմարտութիւն ուրուք մերձ լիցէ, հաստատեցին[3] 'ի սմա զդիւթութիւնն։ Եւ նշան բաւականագոյն՝ իբրու զդիւթականն՝ մարդկային անզգամութեանն աստուած պարգևեաց։ Զի ոչ ոք առ միտս գոլով մերձեսցի յաստուածայինն և 'ի ճշմարիտ դիւթականն, եթէ ոչ առ քունն՝ խոհեմութեանն խափանեսցի զօրութիւնն, և կամ 'ի ձեռն ցաւոյ և կամ այլոց ոմանց հանդիպմանց յեղափոխեսցի։ Այլ 'ի զոյգ զա-

1 Յոյնն. և դառնութիւն ունելով։
2 Յոյնն. Տրտմութիւն ընծայեցուցանէ և անհամութիւնս։
3 Յօր. հաստատեցի։

մենայն իմանալն այնմ է՝ որ առ խոհեմութիւն իցէ և զասացեալսն վերստին յիշելով երազ կամ անուրջ 'ի ձեռն դիւրական և ներգործական բնութեանն, և որչափ արդեւք երևմունք երևեսցին, զամենայն մտածութեամբ բաժանէ, թէ զի և կամ ուր ինչ նշանակէ, և որոյ հանդերձեալ կամ անցեալ ներկայի բարւոյ կամ չարի. և տակաւին իսկ այնմ որ մոլեալն իցէ, և 'ի նոյն իսկ կայ և մնայ, ոչ է գործ զերևեալսն և զասացեալսն դատել յինքենէ: Այլ բարւոք է կանխաւ ասացեալն՝ թէ գործելն զիրսն և ճանաչելն զանձն իւր՝ ողջախոհին միայն պատշաճի: Աստուստ և զմարգարէիցն սեռ յաստուածային դիւթութիւնսն օրէն էր դատաւորս նստուցանել. զորս դիւթք իսկ ոմանք անուանեցին, տգէտք գոլով զի այն որ 'ի ձեռն նշանակաց է համբաւին և կարծեացն նմանողք են՝ սոքա անուանեսցին արդեւք [1]:

Իսկ արդ բնութիւնն լերդոյն այսպէս է վասն այսոցիկ, և 'ի տեղւոջ բնաւորեցաւ՝ յորում ասացաք՝ 'ի սակս դիւթականի: Եւ տակաւին իսկ 'ի կենդանութեան իւրաքանչիւրում հաստատունք նշանք ունիցի զայսպիսիս: Բայց յորժամ 'ի կենդանութենէն պակասի՝ կոյր լինիցի, և զդիւթութիւնքն՝ աղօտագոյնք ունիցի առ նշանակել ինչ հաւաստի: Եւ այնորիկ դարձեալ որ մերձաւորն է սորա փորոտին՝ բաղկացութիւն և հաստատութիւնն եղև ընդ աջհեկէ, 'ի սակս սորա, առ 'ի շնորհել սմա զպայծառութիւնն միշտ և զմաքրութիւնն, որպէս հայելւոյ կազմեալ և պատրաստ միշտ յարակայեալ մաքրիչ: Վասն որոյ իսկ և յորժամ ոմանք անմաքրութիւնն լինիցին վասն հիւանդութեան մարմնոյ առ լերդաւն զամենայն փայծաղանն անգայտութիւնն ընդունիցի մաքրելով, իբրու դատարկ սորա նիւթելով և առանց արեան: Աստուստ լցեալ առ 'ի յայնցանէ որ մաքրեն աճեալ մեծ և անգեղ լինիցի. և դարձեալ յորժամ մաքրեսցի մարմինն՝ խոնարհեալ յիւր չափ եկեսցէ:

1 Յոյնն. Տգէտք գոլով ամենևին զի սոքա են մեկնիչք համբաւոյ և երևութից՝ որ լինին նշանակօք: Եւ չեն դիւթք, այլ մարգարէք մանաւանդ գուշակելոցն կոչեսցին յիրաւի արդեօք:

Արդ յաղագս հոգւոյ որչափ մահկանացու ունի և որչափ աստուածային, և ուր և յետ որոց և վասն որոց որիշ բնակեցաւ, Ճշմարիտ իսկ՝ որպէս ասացաւ՝ աստուծոյ հանդերձ մերով ասելով, յայնժամ արդեւք միայն այսպէս գոլով՝ յայնժամ հակառակեսցուք. սակայն զոր վայելչականն էր մեր ասել՝ ասացաւ, և տակաւին այժմ մանաւանդ դիտեսցուք, և վճռագնել մեզ պարտ է առ 'ի յասել այդոցիկ՝ որ ասացան։ Իսկ զայն որ այսոցիկ 'ի կարգին է՝ զհետ երթալ պարտ է ըստ այսոցիկ. և էր այս այլ ինչ 'ի մարմնոյ՝ ըստ որում եղև. քանզի այսպիսի խորհրդաւ բաղկանալ մանաւանդ վայել էր արդեւք ամենայնի։ Զոր լինելոցն էր առ մեզ՝ ըմպելեաց և կերակրոց զեխութիւն՝ գիտելով բաղկացուցիչքն սեռիս մերոյ, և զի քան զչափաւորն, 'ի ձեռն անյագութեան յոյժ վարիմք յաճախագունիւ։ Արդ զի ոչ ապականութիւն արագագոյն 'ի ձեռն հիւանդութեանց լինիցի, և անկատար վաղվաղակի մահկանացու սեռս վախճանիցի՝ զայսոսիկ նախ տեսանելով, այնմ որ լինելոցն էր ըմպելոյն և կերակրոյն ունակութեանն՝ զանուանեալն ներքին որովայն՝ եդին ընդունակ, գալարեալք առ սովաւ զաղեացն լինելութիւն. զի ոչ արագապէս յարուցեալ կերակուրն, վաղվաղակի դարձեալ այլոյ կերակրոյ հարկեսցի մարմինն կարօտանալ. և առատելով զանյագութիւնն 'ի ձեռն որկորամոլութեանն, անիմաստասէր և աներաժիշտ արասցէ զսեռն ամենայն և անհպատակ աստուածայնոյն որ առ մեզն է։ Իսկ յաղագս ոսկերացն և մարմնոյն և այսպիսի ամենայն բնութեանն՝ եղև այսպէս։ Հանդերձ այսոքիւք ամենայնի սկիզբն իսկ՝ ուղղեն է լինելութիւն, քանզի կենացս կապակցութիւնս, հոգւոյն շաղկապելով ընդ մարմնոյն, 'ի սմա բաշխին. և հաստատեն զմահկանացու սեռս. և սա իսկ ուղիղս՝ յայլոց եղև։ Քանզի յեռանկեանցն որչափ առաջինք և առանց թիւրութեան և ողորկատեսակ գոլով, ըղհուր և զջուր և զօդ և զերկիր մանաւանդ շնորհել հնար էր, զայսոսիկ աստուած յիւրեանց սեռիցն 'ի բաց ընտրեալ, և խառնեալ ընդ միմեանս չափաւորս, զամենայն սերմ ամենայն մահկանացու սեռիս հնարելով՝ զուղեղն 'ի սոցանէ գործեաց։ Եւ յետ այսոցիկ

Digitized by Google

տնկելով 'ի սմա՝ կապակցէր զսեռս հոգւոցն և 'ի ձեւոց՝ որչափ հանդերձեալ էր ընկալուլ դարձեալ և տեսակք ըստ իւրաքանչիւրում զնոյն ուղիղս, յայսչափ և յայսպիսի ձեւս փաղփաղակի բաժանել՝ 'ի բաշխումն որ 'ի սկզբանն էր։ Եւ զայն իսկ որ հանդերձեալ էր զաստուածային սերմն ունել յինքեան, իբրու արօրայեղ բակառաբար պարունակեաց, ըստ ամենայնի ստեղծեալ անուանեաց ուղիղին զսա մասն՝ սկաւառակ։ Իբրու կատարելով իւրաքանչիւրում կենդանւոյ՝ առ սովաւ անօթն գլուխ լինելով. զոր դարձեալ և այլ մահկանացուն հոգւոյն հանդերձեալ էր ունել, միանգամայն բոլոր և յառաջաձիգ ձեւք բաժանէին։ Սակայն զամենայն ուղիղ համբաւեաց։ Եւ որպէս 'ի խարսխից՝ 'ի սոցանէ ամենայն հոգւոյն զուգակապանս արկանելով գործէր արդեւք միանգամայն մարմնոս մեր. ձեղուն իսկ ոսկր է, նախ շուրջ իսկ զբոլորոմն սմա շարամածելով. և զոսկրն բաղկացոյց այսպէս. հող մաքուր և յստակ առեալ շարժմամբ ընտրելով զանգէր, և ուղղով խառնէր. և յետ այսորիկ 'ի հուր դնէր զսա. և յետ այնորիկ մխէր 'ի ջուր[1]։ Եւ այսպէս փոխաբերելով բազում անգամ յերկաքանչիւրս՝ անհալական զսա առ 'ի յերկոցունցն գործէր։ Եւ վարելով շուրջ զսկաւառակաւն նորա ոսկր և գունդ ձախարակէր, և սմա ուղի ինչ անձուկ պատրաստեալ առ պարոմնոցին համանգամայն և ողնաշարական ուղղաւն 'ի սմանէ լռունք ստեղծեալ[2], տարածանէր իբրու շրջանակք, սկսանելով 'ի գլխոյն առ ամենայն մարմնոյն։ Եւ զամենայն զսերմն իսկ պահելով. այսպէս քարատեսակ խնոյր վերակաւ՝ յօդս գործելով 'ի սմա, միոյն առ միւսոյն յարամանեալ սղքօք առ միջոց սոցա հաստատելով, 'ի սակս շարժութեան, և 'ի խոնարհ թիւրելոյ զօրութեան։ Եւ զսորին իսկ ոսկերս բնութեանն ունակութիւն կարծրագոյն գոլ քան զոր պատշաճն էր վարկանելով, և անծալագոյն, և 'ի հրանալն և 'ի ցրտանալն դարձեալ ցաւագին լինելով՝ ապականիլ փաղփաղտկի զսերմն ներքոյ իւրոյ։ Եւ այս այսոցիկ

1 Յոյնն. Մխէր 'ի ջուր, և դարձեալ 'ի հուր, և միւսանգամ 'ի ջուր։

2 Յոր. լռունք։

այսպէս զջլացն և զմարմնոցն սեւ հնարաւորէր. քանզի միոյն զամենայն անդամունքն շաղկապեալ, տարածիլ առատուցել մարմնոյն։ Եւ զմարմինն իսկ յառաջարկու առ տապսն, և վերարկու առ ձմեռնային յեղանակն, տակաւին և առ գլորմունսն՝ խբրու թանձրատեսակ ինչ ստացուած, կակղապէս և հեզաքար մարմնոցն հպատակիլ։ Ջերմ ինչ խոնաւութիւն ունելով յինքեան, որ և յամարայնի քրտնելով և խոնաւանալով արտաքոյ՝ հովութիւն շնորհէ ընտանի մարմնոյն։ Եւ 'ի ձեռն ձմերայնի դարձեալ նոյնս հրով վանէ չափաւորապէս զսառնն՝ զոր արտաքուստ 'ի ներքս մտանելով բաղկանայ։ Զայսոսիկ յաղագս մեր խորհելով՝ օրինակաստեղծն, 'ի ջրոյ և հրոյ և յերկրէ խառնեալ և շարայարմարեալ, զթթուագոյն տեսակ և զաղտաղտին 'ի միասին դնելով զանգուածն, ներքոյ սորա խառնելով՝ մարմին արիւնուտ և կակղագոյն բաղկացոյց։ Իսկ զջղացն բնութիւն, յոսկեր և 'ի մարմնոյ առանց զանգուածի խառնմանէ միջակաւ զօրութեամբ յերկոցունցն զուգախառնեաց՝ շփկատեսակ գունիւ յարմարեալ զսա։ Աստուստ ձգական իսկ և ուժգնագոյն քան զմարմին. և գիջագոյն իսկ և կակղագոյն քան զոսկերք ստացաւ զօրութիւն ջիլքն. որովք շուրջ ըմբռնեալ ած զոսկերք և զուղիղ, կապելով առ միմեանս ջղիւք. և յետ այսորիկ մարմնով զամենայն զոսա ծածկեաց 'ի վերուստ։ Որչափ էին արդ յոսկերաց հոգեղուտք, սակաւով մարմնով զուգախնոյր, և որչափ անհոգեղուտք էին, ներքոյ յոլովիւք և հոծագոյն մարմնով։ Եւ առ յօդքն ոսկերացն՝ ուր ոչ կարիս ինչ գոլ համեմատութիւնն երևեցուցանէր, անդ սուղ մարմին բնաւորեաց. զի ոչ խափանեցուցիչ առ ծալմունսն գոլով՝ դժուարաբերք գործիցին մարմինքն, և դժուարաշարժ լինելով. ոչ դարձեալ հոծք յոյժ և ուժգնապէս առ միմեանս թանձրացեալ, և հաստատագոյն գոլով՝ զանզգայութիւնն գործիցեն, ծանրագոյն առ 'ի յիշատակք, և թեթևագոյն առ խորհուրդսն գոլով։ Վասն այսորիկ արդեւք զանդամոցն և զկարթիցն և զոլոքացն բնութիւնն, և զայնոսիկ որ առ բազկօքն են ոսկերք, և առ կանգունքն [1] և զօդքն, և որչափ ոս-

1 Յոր. գանգունին։

կերք են՝ որ վասն սակաւ հոգւոյ ունելոյ ներքոյ ուղ-
ղոյն՝ թափուր են 'ի խոհեմութենէ. այսոքիկ ա-
մենայն մարմնոյն են լցեալ. և որչափ ներխոհեմա-
կանքն են նուազ մարմնով: Եթէ ոչ ուրուք զոմն զնոյն
ինքն ըստ ինքեան 'ի սակս զգայութեան մարմին այս-
պէս է բաղկացուցեալ, իբրու զլեզուոյն տեսակ. սա-
կայն զպօլովագոյնքն՝ այսպէս: Քանզի 'ի հարկէ լեալն,
և 'ի միասին մնեալ բնութիւնն, ոչ ուրուք ընդունես-
ցի, առ հոծ ոսկերն և մարմին բազում, և համանգա-
մայն սոցունց արագալուր զգայութիւն: Զի եթէ հա-
մանգամայն 'ի միասին զսոսա անկանիլ կամեցեալ էր՝
յաւէտագոյն քան զամենայն ընկալեալ էր արդեւք
առ գլխաւն բաղկացութիւն: Եւ մարդկայքն սեռս
զմարմնոյ տեսակն. ունելով 'ի վերայ իւր և զջղատե-
սակն և զկարծր գլուխն՝ կենցաղ կրկնապատիկ և բազ-
մապատիկ և ամբողջագոյն քան զայս որ այժմ է ստա-
ցեալ էր ապաքէն: Բայց այժմ այնոքիկ, որ առ մեր
լինելութիւնս գոյացուցիչք էին, համեմատելով թէ
որպէս յոգնամանակագոյն և յուրին, եթէ սղամանա-
կագոյն, և վեհ գործեցին [1] զսեռս, թուեցաւ նոցա
քան զպօլովագոյն կենցաղն և զյուրինն՝ դուզնաքեայն
լաւագոյն գոլով ամենայնի ամենևին գոլ հաճոյ: Ա-
ռուստ արդեւք անզգայտ ոսկերօք, և մարմնովք և ջղիւ
իբրու ծալմունս ոչ ունելով, զգլուխն պարածածկեաց:
Ըստ այսոցիկ արդ ամենայնի քաջազգայագոյն իսկ և
խոհեմագոյն, սակայն յոյժ տկարագոյն ամենայն առն
գլուխ եղաւ մարմնոյն: Իսկ զջիլքն վասն այսոցիկ և
այսպէս աստուած հաստատեալ՝ առ վերջին կոյս գլը-
խոյն շրջանակաւ առ պարանոցաւն կցեաց նմանու-
թեամբ. և զկզակսն՝ ծայրաբար սոցունց կապակցեաց
ըստ բնութեամբն դիմաց. և զայլսն յամենայն անդա-
մունսն սերմանեաց՝ շարամերձելով յօդ առ յօդի: Իսկ
արդ զբերանոյս մերոյ զօրութիւն ատամամբք և լե-
զուաւ և շրթամբք 'ի սակս հարկաւորացն և վեհա-
գունիցն զարդարեցին զարդարողքն, ըստ որում է
այժմ դասեալ. զմուտն իսկ հնարելով 'ի սակս հար-
կաւորացն, և զելսն 'ի սակս վեհագունիցն: Քանզի

1 Յօր. գործէոյ:

հարկաւոր է ամենայն որչափ 'ի ներքս մտանելով՝ մար-
մնոյն մնունդ տացէ։ Իսկ բանիցն բաժակն արտաքս
հոսելով, և պաշտօն տալով խոհեմութեանն, գեղեց-
կագոյն և վեհագոյն քան զամենայն տեսակ բաժա-
կաց։ Եւ դարձեալ իսկ և զգլուխն ոչ միայն սոսկ ոսկր
հնարէր թողուլ, վասն այն որ առ գեղեցկութիւնքն
երկաքանչիւր գերազանցութեանն։ Սակայն և ոչ ամե-
նևին ծածկեալ, խուլ և անզգայ, վասն առ մարմնոյն
թախանձութեան, տեսանել լինելով։ Արդ մարմնա-
տեսակ բնութեան ոչ ցամաքելով բնաւ, տեսակ ինչ
շուրջ զսովաւ անդուստ բնաւորեալ լինէր, զոր այժմ
մորթ անուանեմք։ Եւ սա 'ի ձեռն այնմիկ խոնաւու-
թեանն՝ որ առ գլխոյն է 'ի միասին բուսանելով՝ զգե-
ցուցանէր շուրջ զգլուխն։ Իսկ խոնաւութեան գոլոր-
շոյն մակտառական ծառացեալ ընդ կարանս 'ի վեր
ելանելով առոգէր զսա և շարափակէր. առ գագա-
թամբն, իբրու ժողովելով համանգամայն [1], և կարա-
նացն իսկ պէսպէս տեսակքն եղեն վասն զօրութեան
կերակրոյն և շրջագայութեանն. մարտնչելով սոցա
ընդ միմեանս՝ յաւէտ յոլովիք և նուազ՝ սակաւօք։
Զայս արդ զամենայն զմորթս հրով շրջանակի կարկա-
տէր աստուածային. և խոցոտելով սորա, և խոնա-
ւութեանն արտաքս 'ի ձեռն սորա բերելով՝ գիջայինն
իսկ և ջերմն որչափ յստակն էր՝ 'ի բաց երթայր։ Իսկ
խառնեալն յանցանէ՝ յորոց և մարմինն է՝ վերացեալ
իսկ 'ի ձեռն բերմանն արտաքոյ, երկար տարածէր ա-
նօսրութիւն ունելով հաւասար կարկատմանն. և 'ի
ձեռն հեղգութեան 'ի բաց մերժելով շրջափակեալ
արտաքոյ շնչոյն, դարձեալ նոյնս ընդ մորթովն գալա-
րեալ արմատանայր։ Եւ վասն այսոցիկ արդեւք կրիցս
սեռ հերիցն առ մորթն բնաւորեցաւ. բաղաղան իսկ
խեցատեսակին գոլով, սակայն կարծրագոյն իսկ և հօ-
ծագոյն թաղկեալ, և մեկնեալ 'ի մորթոյն իւրաքան-
չիւր հեր՝ առ միմեանս շարամանեալ խառուանայր
ցրտացեալ։ Այսպէս արդեօք թաւ գործեաց զգլուխս
մեր արարիչն՝ վարելով ասացեալ պատճառօքդ, և
խորհելով փոխանակ մարմնոյ ծածկոյթ պարտ գոլ

1 Յոյնն. Իբրու զհանգոյցս ժողովելով։

Digitized by Google

զսա վարկանէր, 'ի սակս այնմիկ՝ որ ինչ առ ուղղոյն են և գլխոյն, դատարկ տեղայն զգուշութեան, և յամարայնի և ձմերայնի բաւականապէս ստուեր ինչ և զովացումն տալոյ. քաջազգայութեան ոչինչ խափանիչ լինելով, և այն որ առ մատամբքն են հիւսուած ջղին և մորթոյն և ոսկերն, 'ի միասին խառնեալ յերիցն, և 'ի բաց չորացեալ, մի հաղորդ. յամենեցունց կարծր եղև մորթ. պատճառակցօքս իսկ այսոքիկ գոյացեալ, սակայն պատճառականագոյն տրամախոհութեամբն՝ գործեալ 'ի սակս այնոցիկ որ լինելոցն էր յապա: Իբրու զի երբէք յարանց կանայք և այլ գաշանք լինելոց էին, գիտէին զայս բաղկացուցիչքն մեր: Եւ զի պիտոյիցն արդեւք մագլայն բազումք յանասնոցն և յոյժ կարօտանալոց: Աստուստ առ մարդիկ փաղփաղակի լինելով սոցա յօրինեցին զճիրանայն լինելութեանն: Այսուիկ արդեւք բանիւ և պատճառօքս այսոքիւք, զմորթ և զհեր և զմագիլք առ ծայրս ոսկերացն բուսուցին: Եւ քանզի էին մսհկանայս մասունքն և անդամքն 'ի միացին բնաւորեալ, իսկ զկենդանութիւնն հրով և հոգւով 'ի հարկէ պարտ էր սմա ունել. և վասն այսորիկ 'ի ձեռն սոցունց հալեալ ունայնանալով ապականէր[1], օգնութիւն սմա աստուածքն հնարին. Քանզի մարդկային բնութեանս բաղազան բնութիւն, այլօք տեսակօք և զգայութեամբ խառնեալ իբրու այլ ումն կենդանի գոլ: Զայսոսիկ արդեւք ընտանի ծառք և տունկք խրատելով առ պտղաբերութիւն[2] 'ի ձեռն երկրագործութեանն՝ մերձաւորութիւն առ մեզ ընկալաւ: Եւ յառաջագոյն էր միայն վայրենեացն սեռ, երիցագոյն գոլով քան զընտանիքս: Քանզի ամենայն որ կենդանութեան հաղորդի ուղղապէս իսկ արդեւք, և իրաւապէս ասին կենդանիք: Սակայն հաղորդեալ է այն իսկ՝ զոր այժմ ասեմք երրորդ տեսակին հոգւոյն, զորմէ բան է, 'ի մէջ խոհեմութեանցն և պարտոյն սերտիլ. որոյ կարծեաց և խորհրդոյ և մտաց և զգայութեան հեշտագունի և ցաւաբերականի հանդերձ

1 Յոր. ապականիր:

2 Յոյնն. Ընտանի ծառք և տունկք և սերմանիք անկեալք երկրագործութեամբ:

ցանկութեամբն՝ ոչ և մի գոյ հաղորդութիւն։ Քանզի կրելով զամենայն ինչ բերէ, և դառնալով ինքն ինքեամբ առ ինքեան զաւ 'ի յարտաքուստն իսկ մերժելով շարժութիւն, և ընտանեաւն իւրով վարելով, յիւրոցն իսկ խորհել կամ տեսանել բնութեամբ, ոչ աւանդեաց լինելութիւն[1]...։ Զայսոսիկ զամենայն սեռքս տնկելով վեհքն առ մեզ նուազագունիցս, մնդական առուս հատին 'ի մարմնի մերում. հատանելով իբրու 'ի պարտէզք՝ առուք, զի որպէս 'ի ջրոյ 'ի վերայ հոսմանէ ուռոգի. և նախ իսկ առուք գաղտնապէս ընդ շարաբնակութեամբն մորթոյն և մարմնոյն՝ երկու երակք հատան առ Թիկունս կոյս, երկաւորիս, իբրու հանդիպեալ էր մարմինն՝ աջիւք և ահեկիւք գոլով։ Եւ զայսոսիկ իջուցին առ ողամբն, և զծննդականն 'ի միջի[2] ըմբռնեալք ուղիղ, քանզի սա այսպէս մնաւանդ յաձախեաց, և այլ այլմն դիւրահոս, աստուստ առ ստորին հանդիպմունս, հեղումն լինելով՝ զուռոգումն հանդարտ ունելով պարգևիցէ։ Եւ յետ այսոցիկ ցելեալք զերակքն առ գլխովն, և 'ի ձեռն միմեանց ներհակաւ մնեալ անցուցին՝ զոմանս յաջակողմանցն առ յահեակմն մարմնոյն, և զմիւսն 'ի ձախակողմանցն յաջակողմն խոնարհեցուցեալք. քանզի կապակցութիւն համանդամայն գլխովն իցէ մորթոյն առ մարմնոյն, քանզի ջղիւք ոչ էր շրջանակաւ առ գագաթամբն պատատեալ. և զգայութեանցն արդեւք կիրն՝ զի երկաքանչիւրոց մասանցն իցէ ամենայն մարմինն բաշխեալ։ Եւ զայն որ աստուստ է արդեւք շրջաբերութիւն[3] կազմեցին յեղանակաւ ոմամբ այսպիսեաւ. զոր տեսանիցեմք դիւրաւ, նախ խոստանալով այսպիսի իրս, զի ամենայն որչափ 'ի փոքրագունիցն բաղկանայ՝ մեծագունիցն տևէ. իսկ այն որ 'ի մեծագունիցն՝ փոքրագունիցն տևել ոչ կարէ։ Եւ հուր քան զամենայն սեռքն՝ մանրամասնագոյնն։ Որչափ 'ի ձեռն ջրոյ և երկրի և օդոյ բաղկացեալ են. և յայնոցիկ որ 'ի սոցա-

1 Յաւելու յոյնն. «Վասն որոյ որ կեայն՝ ոչ է այլ ինչ 'ի կենդանւոյ. այլ մնայուն և արմատարեալ կառուցաւ, վասն անքաժ լինելոյ յիւրմէ շարժմանէ»։

2 Յոր. զծննդականն 'ի մի մի ըմբռնեալք։

3 Ըստ յունին ընթեռնլի իցէ Թերևս՝ ջրաբերութիւն (ὑδραγωγίος).

նէն են, զամենայն անջատէ, և ոչ ինչ կարէ սմա տևել։ Զնոյն ինչ արդեւք խորհել պարտ է և յաղագս մերոյ որովայնի, զի կերակրոց և ըմպելեաց՝ յորժամ 'ի սմա մտանիցեն՝ տևէ։ Այլ ընչից և հրոյ մանրամասնագոյն սոցա ելով այնոցիկ թաղկացուԹեանն՝ տևել ոչ կարէ։ Այսուքիւք արդ աստուած վարելով՝ յայնմ որ յորովայնէն առ երակսն ուղղմունքն են, հիւսակ ինչ յօդոյ և 'ի հրոյ՝ իբրու զտեսակ ինչ մաղի[1] շարամանելով կրկնակ հիւսակ՝ առ մուտն ունելով, յորոց դարձեալ զմինն մանեաց[2] երկձղի, և 'ի մաղատեսակացն արդեւք տարածեաց իբրու լարս շրջանակաւ ամենայնի առ ստորինսն հիւսմանն։ Եւ զներքինսն արդ զմաղին 'ի հրոյ թաղկացոյց, և շուրջն սորա և զհովիտն յօդոյ տեսակէ. և առեալ զսա հաստատեաց շուրջ ստեղծեալ կենդանոյն՝ այսպիսի յեղանակաւ։ Զմինն 'ի հիւսատեսակացն՝ առ բերանաւն հասոյց. և կրկինն զօգոլով սորա, զմինն ըստ ընչափողիցն 'ի Թոքն հասոյց՝ և զմիւսն առ ընչափողքն յորովայնն. և զոմն ցելեալ զերկաքանչիւր մասունս առ առուքն ունգանն հաղորդաբար Թողացոյց։ Իբրու զի յորժամ միւսն ընդ բերանն ոչ եցցէ, 'ի սմանէ ամենայն հոսմունքն նորա լնուին. և զմիւսն հովիտն մաղի՝ առ ամենայն մարմինս, որչափ փոր է՝ բնաւորեցոյց։ Եւ զայս իսկ ամենայն երբեմն 'ի մաղատեսակք 'ի միասին հոսիլ գործեաց կակղապէս, իբրու օդ գոլով զսա. և երբեմն հոսմանն 'ի վեր դառնալ ընդ մաղատեսակ, և հիւսումն իբրու անդայտ գոլով մարմնոյն 'ի ներքս ընկղմիր[3] 'ի ձեռն սորա, և դարձեալ արտաքս ելանել. և զհրոյն ներքին նշոյլքն կապակցելով հետևիլ, յերկաքանչիւրսն՝ հասանելով օդոյն. և այս մինչև արդեւք մահկանացու կենդանին թաղկացեալ իցէ՝ լինելով ոչ դադարիլ։ Եւ այսմ իսկ սեռի այլ 'ի յայնմանէ, որ զմականուԹիւնքն է եդեալ, վերաշնչութիւն և արտաշնչութիւն ասեմք զի եդաւ անուն։ Եւ այս ամենայն գործս և կիրս այս մարմնոյ մերոյ եղև ուռոգելով և զովացմամբ կեալ և սնանիլ։ Զի յորժամ 'ի ներքս և արտաքս՝ վերաշնչու-

1 Յօր. մաղէ։

2 Յօր. մափնէաց։

3 Յօր. ընկղմեր... ելանէր։

*թեանն զօրով հուրն ներքոյ 'ի միասին զօրով հետևէ, և բաժանեալ միշտ, 'ի ձեռն ոստայնին մտանելով զկերակուրսն և զըմպելիսն ըմբռնէ, հալէ արդեւք. և ըստ մանրութեան բաժանէ 'ի ձեռն ելիցն՝ ըստ որում գնան՝ բերելով իբրև յաղբերէ յառուս բաշխելով զայսոսիկ հոսէ, և կամ իբրու խողովակօք 'ի ձեռն մարմնոյն առնէ զկերակրոցն հոսմունքն։*

*Դարձեալ իսկ զվերաշնչութեանն տեսցուք կիրս, որովք պատճառօք վարելով այսպիսի եղեն՝ իբրու այժմիկ. որոյ արդ, քանզի թափուր ինչ ոչ է, յորոց ինչ հնար է մտանել բերելով. և շունչն առ 'ի մէնջ արտաքս բերի. որ յետ այսորիկ է՝ արդ ամենայնի յայտ է որ ոչ 'ի թափուր, այլ 'ի մերձաւորն յատակին մերժի. և մերժեալն վարէ միշտ զմերձաւորն. և ըստ այսմիկ հարկի՝ ամենայն առ նոյնն վարեալ, ուստի ելաւ շունչն՝ մտանելով անդանօր, վերստին ընլով զսա՝ 'ի միասին հետևէ շնչոյն։ Եւ այս ամենայն իբրու անիւ 'ի շուրջ ածեալ լինիցի, վասն թափուր ոչ միոյ գոլով։ Վասն այսորիկ արդեւք 'ի լանջացն և 'ի թոքոյն՝ արտաքս ելեալ շունչ, դարձեալ 'ի ձեռն այնմ որ շուրջ զմարմնաւն է օդոյն, և անդայտ մարմնոցն 'ի ներքս մերժեալ, և շրջապէս վարելով՝ լցեալ լինիցի. և դարձեալ 'ի բաց շրջեալ օդն, և 'ի ձեռն մարմնոյն արտաքս գոլով զվերաշնչութիւն առ այսոքիւք մերժէ ընդ բերանոյն և ընդ հոտոտելեացն ճանապարհին. և զպատճառ սկզբանն[1] նոցունց նելի է այսպէս։ Ամենայն կենդանի առ իւրում արեանն և երակացն ճշմարտապէս ունի ջերմութիւն, իբրու յինքեան աղբիւր հրոյ գոլով. զոր և արդ նմանեցուցանեմք հիւսակի մաղի 'ի միջին տարածեալ՝ իբրու ամենևին մանեալ 'ի հրոյ. և այլն իսկ որչափ արտաքս՝ օդոյն է. ջերմութիւն ըստ բնութեան 'ի յիւրում վայրն արտաքոյ առ բաղադանն հասանել խոստովանելի է։ Եւ երկու ելիցն գոլով, այնմ իսկ որ ըստ մարմնոյն է արտաքս, և այն դարձեալ որ ըստ բերանոյն է և ռնգացն, յորժամ առ մինն դէմ զմիւսն մերժէ. և մերժեալն իսկ 'ի հուրն անկեալ՝ ջերմանայ, և այն որ արտաքս ելանէն՝ ցրտա-*

1 Յօր. և պղպջաման նաւթանն ։

նայ։ Եւ փոխարկելով իսկ ջերմութեանն, և այնոցիկ՝ որ ըստ միոյ ճանապարհի են ջերմագոյն լինելով, դարձեալ այն շեղելով իսկ, և ջերմագունին մանաւանդ առ իւրն բերելով բնութիւն, զայն որ յիւրաքանչիւր կողմունսն են՝ մերժէ շրջանակի. և այնմիկ՝ որ զայսոսիկ կրեն, և միշտ զայսոսիկ հատուցանեն, բոլոր այսպէս շարժեալ՝ յայսկոյս և յայնկոյս գործելով ՚ի ձեռն երկաքանչիւրոցն՝ զվերաշնչութիւնն՝ և զարտաշնչութիւնն լինել առտուէ։ Եւ արդ այնոցիկ որ առ բժշկական գործարանօք ուժանց տարեան, կամ այլոց նիւթոց ձգմունքն են ախտիցն պատճառքն, և հանդերձ սոքօք կլանելեացն և վտարմանց որչափ ՚ի բարձունս թողեալ լինին, և որչափ առ երկրաւ բերին, այսպէս են հետևելի. և որչափ բարբառք արագք, և հեզք, և սուրք և ծանրագոյնք երևին. երբեմն անյարմար լերելով ՚ի ձեռն աննմանութեանն, այնոցիկ՝ որ ՚ի մեզ են առ ՚ի նոցանէ շարժութեանս. և երբեմն զուգաձայնք ՚ի ձեռն նմանութեան։ Քանզի յառաջագունիցն և զոլորելոցն՝ հեղգագոյնք դադարելով զշարժմունքն, և ՚ի նմանութիւն եկեալ արդեւք այնոցիկ որ սոքա յետոյ մատուցեալք շարժեն ըմբռնեն զայնոսիկ. և ըմբռնելով՝ ոչ զայլ ոմն ՚ի վերայ արկանելով խառնեցին շարժութիւն, այլ սկիզբն հեղգագոյն բերման առ այն որ ոլորուտ է բերմանն։ Ցանկին նմանութիւն շարամերձելով մի իսկ ՚ի սրէ և ՚ի ծանրագունէ կիր զուգախառնեցին։ Վասն որոյ և հեշտութիւն իսկ անխոհեմիցն, և ուրախութիւն խոհեմականացն վասն աստուածային յարմարանացն նմանութեանն, մահկանացու բերմամբ լինելով՝ շնորհեցին։ Եւ արդ ջրոցն ամենայն հոսմունքն տակաւին և որոտմանց ճայթմունք, և այն որ սքանչելի են յաղագս ելեքտռոնացն ձըգմանցն և Հերակլեան քարանցն, սոցունց ամենեցուն քաշումն իսկ ոչ և միոյ գոյ երբէք։ Բայց թափուր ինչ ոչ գոլովն, ամփոփիլ զսոսա զինքեանս առ միմեանս, և յայնժամ ընտրելով և բաղդատելով յիւրաքանչիւր փոխելով՝ ՚ի հաստատութիւնս իւրեանց հասանիլ, և ամենայն այսոցիկ կրիւքս առ միմեանս շարամանելով՝ սքանչելի գործ այնմ որ ըստ յեղանակին խնդրէ, երևեսցին։ Արդ և վերաշնչութեանս, ուստի և բանս

դիմեաց. ըստ այսոցիկ և 'ի ձեռն սոցունց եղև, որպէս յառաջագոյնս ասացաւ, հաստանելով իսկ զկերակուրս հրոյն, և քարձրանալով ներքոյ 'ի միասին շնչոյն հետևելով, և զերակքն յորովայնէն 'ի միասին վերացմամբն ընլով. զհատեալսն [1] աստուստ 'ի վեր բերելով. և վասն այսոցիկ արդեւք առ բոլոր մարմինն՝ որպէս կենդանեաց ջուրքն մննդեան՝ այսպէս 'ի վերայ հասեալք եղեն, Նորահատք գոլով, և ազգակից՝ զոմանս պտղոց, և զոմանս՝ դալարաց. զոր աստուած առ այս իսկ տնկեաց գոլ կերակուր, զպէսպէս ունելով գոյնս՝ վասն 'ի միասին խառնմանն. և կարմիրն յոլովագոյն առ սմս գոյնն յաճախեցի [2], 'ի հրոյն հատուածոյն և 'ի նմանութենէն գիջային գոյացեալ բնութեամբ: Վասն որոյ զայն իսկ որ ըստ մարմնոյն հոսի, ընկալաւ զգոյն որպիսի տեսութեամբ պատմեցաք, զոր և արիւն անուանեմք՝ քաշխումն մսոյ և ամենայն մարմնոյ: Ուստի և ոռոգեալ իւրաքանչիւր՝ ընու զդատարկելոյն հաստատութիւն: Եւ յեղանակն լրութեանն՝ և քաժանմանն լինի, որպէ յամենայնի ամենեցուն բերումն եղև, զոր ամենայն ազգակիցն բերէ առ ինքեան: Զի զայն որ արտաքոյ շուրջ է զմեւք միշտ հալէ և քաշխէ առ իւրաքանչիւր տեսակ զհոմսցեղն իւր առաքելով. և զայն որ արիւնատեսակն [3] է մաքրապէս դարձեալ քաշխելով ներքոյ առ մեզ իսկ և գալարելով, իբրու ընդ երկնաւ ընդ քաղկացութեամբն իւրաքանչիւր կենդանոյ՝ հարկի նմանել զամենայն բերումն: Եւ առ քաղաքանն արդեւք բերելով իւրաքանչիւր յայտցանէ որ ներքոյ են քաշխեալ, լցոյց դարձեալ զդատարկեալն: Եւ յորժամ յոլովագոյն քան զ'ի վերայ հասեալն 'ի քաց գնասցէ՝ և ապականի բոլորն. և յորժամ նուազ՝ աճէ: Նոր արդ քաղկացութիւն ամենայն կենդանոյն, Թափուր զեռանգիւնսն՝ իբրու առ ողնափայտիւք առ սեռքն տակաւին ունելով, ամրագոյն շարակայումն ստանայ առ միմեանս. և շարամածի որպէս Թանձրութիւնն նորա կակղապէս, իբրու յուղղէ նորագոյն լինելով, և մնանելով կաԹամբ: Եւ արդ յար

1 Յօր. զհատափէալսն:
2 Յօր. յաճախէցի:
3 Յօր. օրինափէսակ:

տաքուստն ըմբռնեալքն 'ի սմա եռանկիւնքն՝ յարտա-
քուստ 'ի ներքս մտանելով՝ յորոց և իցեն արդեւք՝
զկերպակուրսն իսկ և զըմբելիսն նորին եռանկեանցն
հնագոյն գոլով և տկարագոյն նորօքն հատանելով
յաղթէ. և զկենդանին մեծ գործէ սնուցանելով 'ի
բազում նմանեաց։

Իսկ յորժամ արմատն եռանկեանցն սասանի,
վասն բազում նահատակութեանս բազում ամանա-
կաւ առ բազումս նահատակելով։ Իսկ զկերպակրոյ իւրն
'ի ներքս մտանելով տակաւին ոչ կարէ հատանել 'ի
նմանագոյնս ինքեանց. և սոքա առ 'ի յայնցանէ որ
արտաքուստ 'ի ներքս մտանեն դիւրաւ բաժանին։ Եւ
նուազի ամենայն կենդանին այսուիկ յաղթեալ, և
կիրս ծերութիւն[1] անուանի։ Եւ կատարած, յորժամ
այնոցիկ որ առ ուղղիւն են եռանկեանցն շարայարմա-
րեալ շաղկապքն՝ ոչ հանդուրժելով տակաւին բա-
ժանին ցաւօք, փոխաբերեն զշաղկապքն[2] հոգւոյն։
Եւ սա արձակեալ ըստ բնութեանն՝ հեշտութեան 'ի
բաց սլանայ։ Քանզի ամենայն օտարոտին 'ի բնութե-
նէն՝ ցաւաբեր է. և այն որ ըստ որում բնաւորեալ է՝
լինին հեշտ։ Եւ մահ իսկ ըստ այսոցիկ, այն որ ըստ
ցաւոց և 'ի ձեռն խոցոյ և վիրաց լինին՝ բռուն է և
ցաւաբեր, իսկ այն որ ծերութեամբ ըստ բնութեան
'ի վախճան հասանի, քան զամենայն մահս անցաւա-
գոյն է, մանաւանդ հեշտութեամբ լինելով քան եթէ
տրտմութեամբ, և հիւանդութիւնն՝ եթէ ուստ
բաղկանան, յայտ է ուրուք և ամենայնի։ Քանզի չորք
գոլով սեռքն՝ յորոց 'ի միասին մարմինն մածաւ, հո-
ղոյ, հրոյ, ջրոյ և օդոյ. սոցա օտար 'ի բնութենէն յա-
ձախութիւն և նուազութիւն, և վայրին փոխումն յընտանոյն
առ օտարն լինելով՝ հրոյ իսկ և այլոցն. քանզի սեռք
յոլովք միոյ էակս պատահեցան[3], զայն որ ոչն է պատ-
շաճ իւրաքանչիւր յինքեանն՝ ըմբռնելով. և զամենայն
որչափ այսպիսիք են՝ զխօթութիւն և զհիւանդութիւն
արտունեն։ Քանզի զիւրաքանչիւրոյ առանց բնութեան[4]

1 Յօր. 'ի կիրս ծերութիւն...։
2 Յօր. փոխաբերեն. իսկ շաղկապքն։
3 Ին. Քանզի սեռք յոլովք քան զմին լեալ պատահեցան։
4 Յօր. առանց բնականութեան։

Digitized by Google

լինելով և փոխելով, որչափ յառաջագոյն ցուրտ էր՝ այն ջերմանայ, և այն որ ցամաքայինքն են՝ լինին յետոյ խոնաւութքն. և թեթևքն արդեւք՝ ծանունք. և ամենևին ամենայն փոխմունք ընդունին։ Զի միապէս ասացաք զայն որ նոյնն է ինքեամբ, և ըստ նորին, և իբրու նոյնպէս և համեմատութեամբ լինելով, և ոչ լինելով, թողուցու զնոյնն ըստ ինքեան գոլով ողջ և ամբողջ կալ և մնալ։ Այն ինչ արդեւք որ թախանձեսցի՝ 'ի սոցունց արտաքս ելանելով կամ 'ի ներքս մտանելով, այլայլութիւնք պէսպէս և ցաւս, և անեզր ապականութիւնս առնուիցէ։ Եւ երկրորդից արդեւք բաղկացութեանց՝ բաղկանալով ըստ բնութեան՝ երկրորդ իմացութիւն ցաւոց լինիցի՝ այնմ որ ախորժիցէ իմանալ։ Քանզի ուղիւղ յայնցանէ, և ոսկեր [1] և մսոյ և ջլի շարամածելով, տակաւին և արեան՝ այլ իսկ յեղանակաւ, սակայն 'ի նոցունց [2] լինելով, այլոցն իսկ յոլովագոյնս ըստ որում առաջինքն են, և մեծագոյնքն հիւանդութեանց այսպէս անկան 'ի միասին։ Յորժամ ներհակապէս դարձեալ գնասցէ լինելութիւն սոցա, յայնժամ սոքա ապականիցին։ Քանզի ըստ բնութեան միսք և ջիլք յարենէ լինին. ջիլն իսկ 'ի նեարդիցն՝ վասն թաղազանութեանն. և միսքն՝ 'ի մածեալ յարենէն յայնմանէ՝ որ մածի անջատելով 'ի ներտիցն։ Եւ 'ի բաց մնացեալն 'ի մսացն և 'ի ջղացն, դարձեալ տտիպքն և պարարտն համանգամայն զմարմինն կցէ առ ոսկերացն բնութիւն, և նոյնս զայն որ առ ուղղիւն է ոսկր՝ սնուցանելով աճեցուցանէ. և այն իսկ որ վասն հոծութեանն ոսկերացն քամի՝ մաքրագոյն սեռն եռանկեանցն՝ ողորկագոյն գոլով և պարարտագոյն, վիժելով [3] և քամելով յոսկերայն՝ ոռոգէ զուղիւղն։ Եւ ըստ այսոցիկ իւրաքանչիւրից լինելով, բազում ողջութիւն պատահի. և հիւանդութիւնք՝ յորժամ ներհակապէս։ Զի յորժամ մաշեսցի միսքն՝ վերստին դարձեալ զմաշուածն յերակքն հանէ, և հանդերձ հողմով պէսպէս արիւնն և ուժգին մտանելով յերակսն գունիւք և դառնութեամբք [4] պաճուճեալ, և քացա-

1 Յօր. ոսկերի։
2 Յօր. սականց նոցունց։
3 Յօր. վիճելով։
4 Յօր. դաղնութեամբք։ Բայց յոյնն ասէ. հոծութեամբք։

խուտ և աղօտագոյն [1] զօրութեամբ, մաղձք 'և վէրք և մաղասք՝ զպէսպէս արասցէ: Չի կամադարձ ամենեցուն լինելով և ապականելով, զնոյն իսկ զարիւնն նախ շփոթեն, և ինքեանք ոչ և մի սնունդ մարմնոյն առատուելով, բերլին ամենևին 'ի ձեռն երակացն, դասութիւն այնոցիկ որ ըստ բնութեանն են՝ ոչ ևս ունելով շրջաբերութեանցն. և թշնամիք ինքեանց նոցունց՝ վասն ոչ և մի շահեկանութիւն ունելով յինքեանց. և 'ի բաղկացեալ մարմնումն, և 'ի վայրի հնացելումն, պատերազմելով՝ շփոթեն և մաշեն: Եւ որչափ արդեւք հնագոյն գոյ 'ի մարմնոյն մաշի՝ դժուարահալ լինելով, և սեւանայ իսկ 'ի ձեռն հնացեալ 'ի միասին այրման: Եւ վասն ամենևին վատնեալ լինելոյ՝ դառն գոլով, ամենայն դժուարին առ մարմնոյն անկանի, որչափ ոչ արդեւք տակաւին ապականեալն իցէ: Եւ յայնժամ իսկ փոխանակ դառնութեանն զքացախուտն ընկալաւ սեաւ գոյնն, անօսրանալով 'ի բաց մանաւանդ դառինն: Եւ յայնժամ դառնութիւնն իսկ արեամբ մկրտեալ, գոյն կարմիր ընկալաւ. և սեւոյն ընդսմա խառնելով՝ մաղձագոյն: Եւ տակաւին 'ի միասին խառնեին խարտեաշ գոյնն հանդերձ դառնութեամբն, յորժամ նորագոյնն մաշեսցի միս 'ի ձեռն այնմ որ առ բոցումն [2] է հրոյն: Եւ հասարակաց իսկ անունն ամենեցուն այսոցիկ է այնմիկ, զոր ոմանք 'ի բժշկաց մաղձ անուանեցին, թէպէտ և զօրաւոր գոլով 'ի բազումս իսկ և յաննմանս նայիլ, և տեսանելով առ սոքօք մի մեռ ներգոլով, արժանի ամենեցուն մականուանութեան: Եւ այլքն որչափ մաղձոյ տեսակք ասին, ըստ գունոյն ընկալաւ բան յատուկ իւրաքանչիւր 'ի սոցանէ: Իսկ վէր, որ արեան քամուած է՝ հանդարտ, և որ սեաւ մաղձի և քացախագունի՝ վայրենի է. իսկ յորժամ 'ի միասին խառնեսցի վասն ջերմութեան, աղօտ զօրութեամբ կոչի քացախուտ մաղաս այնպիսին. և մաշեալն իսկ հանդերձ օդով 'ի նոր և 'ի մատաղագոյն մարմնոյ, սորա հօղմ լինելով և 'ի միասին ըմբռնելով 'ի ձեռն խոնաւութեան, և օդն և խոնա-

Տ Աղօփագոյն. իմա՝ աղօտ, աղատագոյն, աղայլին որպէս յն. ունի:
1 Յօր. բոխուէ:

ռութիւնն տեսակք ինչ հաստատութեամբ բաղկա-
նալով յայսպիսի ախտէ. մի ըստ միոջէ իսկ անտեսք
վասն մանրութեան, և 'ի միասին ամենայնիւ թանձ-
րութիւն ինչ երևելի առաւելով, գոյն ունելով
զփրփրոյն լինելութիւն՝ տեսանել սպիտակ։ Զայս ամե-
նայն մաշուածս մատաղագոյն մարմնոյն հանդերձ
ջնջով շարամանելով ասասցուք սպիտակ գոլ մաղաս,
և նոր իսկ. մաղասի բաղկանալով քամոնքս՝ քիրտն և
արտօսր, և որչափ այլք այսպիսի մարմինք զօր հա-
նապազ հեղլին մաքրելով։ Եւ այսոքիկ արդեւք ամե-
նայն գործիք ցաւոց եղեն. յորժամ արիւն ոչ 'ի կե-
րակրոց և յըմպելեաց յոլովացի ըստ բնութեան, այլ
'ի ներհական թանձրութեանցն զօտարոտիմն ըմբռ-
նելով բնութիւնն յորինի. և խառնելով արդեւք 'ի
ձեռն ցաւոցն մարմնոյն ուրաքանչիւրոյ, և մնալով յիւ-
րում հաստատութեան՝ կէսքն լինիցին շարաբերու-
թեանն [1] զօրութիւնքն. զի տակաւին վերացումն ու-
նիցի դիւրին սլացմամբ։ Իսկ արդեւք յորժամ հիւան-
դասցի այն որ զմարմինն ընդ ոսկերացն շաղկապեն, և
ոչ ևս դարձեալ 'ի ներդիցն արիւն, և 'ի ջղացն մեկ-
նելով՝ ոսկեր իսկ մնուընդ, և մսի առ ոսկեր լինիցի
շաղկապ, այլ 'ի պարարտէ և յողորկագունէ և տապէ,
խոշոր և աղտաղտին և խռովացեալ 'ի ձեռն չար վա-
րուց լինիցի, յայնժամ զայսօսիկ կրելով այն ամենայն
այնպիսին ցամաքեսցի իսկ նոյնդ դարձեալ ընդ մսօքն
և ընդ ջղօքն, 'ի բաց կացեալ յոսկերացն. և միսքն
յարմատոց իւրոց առ միմեանս հաւաքելով՝ զջիղքն
մերկ թողուցուն, և լցեալ աղտաղտիւք։ Եւ ինքեան
դարձեալ անկանելով յարեանն բերումն, զառաջա-
գոյն ասացեալ ցաւս՝ յոլովագոյնս գործեն։ Եւ դը-
ժուարին ախտք առ մարմինքն սոցունց լինելով, մեծա-
գոյն ևս լինիցին այն որ նախ քան զայսոսիկ են։ Յոր-
ժամ ոսկր վասն հոծութեան մարմնոյն՝ ոչ ընկալեալ
վերաշնչութեան բաւականապէս, 'ի ձեռն փտեալ
խոնաւութեանն ջերմանալով տկարասցի, ոչ զսնունդն
ընդունելով։ Դարձեալ իսկ սա ներհակապէս 'ի միս
եկեսցէ ցամաքեալ. և միւսն յարիւն անկանելով, խո-

1 Յն. Կէս լեցի զօրութիւն ցաւոյն (συνφορᾶς)։

Digitized by Google

շորագոյնք զամենայն յառաջագունիցն զհիւանդու-
թիւնքն գործիցէ։ Եւ ամենեցուն վերջնագոյն, յոր-
ժամ ուղղին բնութիւնն 'ի նուազութեան ուրուք
կամ 'ի գերազանցութենէ հիւանդասցի՝ զմեծա-
գոյնքն առ 'ի մահ կատարիցէ ցաւք, ամենայն բնու-
թեանն մարմնոյն ներհակապէս 'ի հարկէ դարձեալ
հոսելով։ Եւ երրորդ դարձեալ հիւանդութեանց տե-
սակ, եռակի լինելով զմտաւ ածել պարտ է, զոմն 'ի
ձեռն շնչոյ, և զոմն 'ի ձեռն մաղասոյ, և զոմն 'ի ձեռն
մաղձի։ Քանզի յորժամ թօքն՝ մարմնոյն շնչիցն շտե-
մարանապետն՝ մաքուր զելսն ոչ ունիցի, խցեալ 'ի
ձեռն հոսմանցն, յայս կոյս ոչ գոլով, և յայնկոյս յոլո-
վագոյն շունչ քան զպատշաճն 'ի ներքս մուծանելով,
ոմանք սփոփման ոչ հանդիպելով փտիցին, և ոմանք
յերակացն անցանելով և 'ի միասին դառնալով՝ մաշեն
զմարմինս; 'ի մէջ սորա, իբրու խցումն ինչ առնելով.
և բիւրինս հիւանդութիւնք ցաւաբերք յայսցանէ
հանդերձ բազմութեամբ քրտանց բազում անգամ
գործիցեն։ Եւ բազում անգամ 'ի մարմնումն առ ըն-
տրութիւնսն մսին՝ շունչ մտանելով, և արտաքս ելա-
նելով հնար ոչ ունելով, զնոյնսն այնոցիկ՝ որ ար-
տաքուստ 'ի ներքս մտանեն՝ աւտուիցեն երկունս. և
մեծագոյնս իսկ յորժամ առ ջիղսն և երակքն որ առ
ոսկերօք են դադարեալ 'ի շարաւ դարձցի, և զմակտա-
րածան ջիղքն, և զշարունակ՝ ոսկերօք յետս ձկտեցու-
ցանէ՝ որք արդեւք հիւանդութիւնք նովիմբ իսկ շար-
ոլորմամբ ախտին առասացան տարածմունք և լոյծք.
յորոց և բուժելն դժուարագոյն է։ Քանզի հուր ջեր-
մութեանն արդեւք ներլինելով մանաւանդ լուծանեն
զայսպիսիքս։ Իսկ սպիտակ մաղձեայքն՝ վասն մնացելոյ
շնչոյ առ ոլորտս արեանն որձանս իմն փոխանակ վճիռ
և մաքրագոյն արեան վտարէ զմաղձն. և արտաքոյ
մարմնոյն վերաշնչութիւն ունելով հանդարտագոյն
իսկ խայտացուցանէ զմարմինն բորոտութիւնք և այլ
պէսպէս տեսակք, և սոցունց ազգակից ցաւքն ծնանե-
լով. և ընդ ձեւս մաղձի խառնելով. և առ շրջագա-
յութիւնն այնմիկ որ 'ի գլխումն են աստուածայինք
գոլով զգայութեանց ցրուեալ, և խառնելով զսոսա՝
առ քուն իսկ հասանելով նիրհէ։ Իսկ արթուն գո-

Digitized by Google

լով 'ի վերայ հասեալ՝ դժուարին առ 'ի բացփոխումն
լինիցի. և հիւանդութիւն վնասական գոլով բնու-
թեանն իրաւապէս՝ սրբազան կոչին, և մաղաս թթուա-
գոյն և աղտաղտին՝ աղբիւր ամենայն հիւանդութեանց
է՝ որչափ լինիցի ստորահոսական. և վասն զի տեղիքն
առ որս սա հոսի պէսպէս են՝ անուանակոչութիւն ըն-
կալաւ. և որչափ ասին շարաւ առնուլ մարմնոց՝ յայ-
րեցմանէ 'ի մաղասահար լինելոյ՝ ամենայն 'ի ձեռն
մաղձի լինիցին: Առեալ արդեօք վերաշնչութիւն, ար-
տաքս զպէսպէս 'ի վեր առաքէ բնութեան եռաց-
մունք. և ներքոյ արգելեալ՝ հրայրեաց հիւանդու-
թիւնք բազում ներգործէ, և մեծագոյն՝ յորժամ
ընդ մաքուր արեան խառնելով, սեռն ներդիցն՝ իւրոյ
դասութեանն տարբերիցի, որք սերմանեալ իսկ են
յարեան՝ զի չափաւորապէս հաղորդեսցի անօսրու-
թեանն և թանձրութեանն, և ոչ վասն ջերմութեան,
իբրու զխոնաւ 'ի մարմնոյն արտաքս հոսեսցի. և ոչ
իսկ հոծագոյն, և դժուարաշարժ գոլով, հազիւ շրջեա-
ցի առ երակքն: Եւ ժամանակ արդեւք, զայս ներտքն
բնութիւնն լինելութեանն պահեն. որք յորժամ և
մեռելոյ ումեմն ներշունչ գոլով, տակաւին տեսցէ ոք
զարիւն և զներտքն 'ի միասին առ միմեանս ժողովիցէ,
մնացեալ ամենայն արիւնն հեղու. և թողլով՝ վաղվա-
ղակի առ սպառակացեալն սմա մածուցանեն շնչաւն:
Զայսուիկ արդեւք զզօրութիւնքս ունելով ներտիցն
յարեան, բնութեամբ մաղձն հին արիւն լինելով, և
դարձեալ 'ի մարմնոյն յայս ինչ մաշեալ, ջերմ և խո-
նաւ ըստ սակաւին յառաջնումն անկանելով, մածի
վասն ներտիցն զօրութեան. և մածեալ և շիջուցեալ
բռնութեամբ՝ զցուրտ և զդողութիւն առատուիցի ներ-
քոյ: Եւ 'ի վերայ յոլովից հոսելով՝ առ ինքեան ջեր-
մութեամբն յաղթելով ներտիցն, եռալով յանդասու-
թիւն հասցէ. և եթէ բաւական լինիցի յաղթել խս-
պառ, առ ուղղին յարուցեալ սեռն, այրելով եղյծ
զկառուցմունսն հոգւոյն աստուստ իբրև զնաւու, և
թողացոյց ազատիլ: Իսկ յորժամ նուազագոյն իցէ,
յայնժամ մարմինն մաշելով ընդդէմ կացցէ, և սա
յաղթեալ, կամ ըստ ամենայն մարմնոյն արտաքս անկ-
ցի, և կամ 'ի ձեռն երակացն 'ի ներքին մերժեալ՝

Digitized by Google

կամ 'ի վերինն որովայն, իբրու փախստական 'ի խռո-
վեալ քաղաքէ՝ 'ի մարմնոյն արտաքս անկեալ՝ գարա-
ղութիւն և ողորկաղղութիւն հոսմամբ որովայնին, և
զայսպիսիդ առաւեաց հիւանդութիւնք։ Իսկ արդ
'ի հրոյ գերազանցութենէ մանաւանդ հիւանդացեալ
մարմինն, չարունակ տապք և ջերմութիւնք գործեն.
և այն իսկ որ 'ի յօդոյ միջօրեայ և երեքօրեայ գործեն
'ի ձեռն ջրոյ՝ վասն տարտամագոյն օդոյ և հրոյ գոլ
զսա, և հողոյն՝ եռապատիկ գոլով դանդաղագոյն
քան զնոսա՝ քառապատիկ շրջաբերութեամբ ժամա-
նակի մաքրելով չորեքօրեայ ջերմութիւնք գործեն՝ որ
և հազիւ 'ի բաց փոխեսցի։ Եւ այնոքիկ իսկ որ առ
մարմնովն հիւանդութիւնք՝ այսպէս պատահին լինե-
լով։ Եւ որ 'ի հոգւոյն․ վասն ունակութեան մարմնոյ՝
այսպէս։ Արդ հիւանդութիւն հոգւոյ՝ անմտութիւն
ասելի է. և կրկին սեռք են անմտութեան. մոլեգ-
նութիւն, և անուսումնութիւն։ Եւ զամենայն արդ զոր
ինչ և կրիցէ ոք ախտ, որպիսի և իցէ 'ի նոցունց՝ պարտ
է հիւանդութիւն առասել։ Բայց զհեշտութիւնս և
տրտմութիւնս գերազանցեալս, քան զհիւանդութիւնս
մեծագոյնս դնելիք են սոքա։ Քանզի խնդացեալ մարդ-
գոլով, և կամ զներհակսն 'ի ձեռն տրտմութեան
կրելով, փութացեալ զմին 'ի սոցանէ տարաժամաբար
կալուլ, և միւսոյն ճողոպրիլ, ոչ տեսանել և ոչ լսել
ոչ ինչ ուղիղ կարասցէ, և կատաղի, և մտածու-
թեան հաղորդել յայնժամ ոչ իցէ կարացեալ։ Եւ
սերմն այսմիկ յոյժ հոսանուտ գոլով հասանի առ ու-
ղիղն, և որպէս եթէ ծառ բազմապտուղ առաւել
քան զորչափն է բնաւորեալ իցէ, զբազումս ըստ ի-
րաքանչիւր երկունս, և զբազում հեշտութիւնս ստա-
նալով առ ցանկութիւնս և առ այսպիսի ծննդոցս,
մոլեգնեալ զյոլովագոյնն լինելով կենցաղոյս, վասն
մեծագոյն հեշտութեանցն, և տրտմութեանցն հի-
ւանդացեալ և առանց խոհեմութեան ունելով ընդ
մարմնովն զհոգին, ոչ իբրու հիւանդացեալս, այլ ի-
բրու կամաւ կարծեցեալ է չար։ Եւ ճշմարիտն առ
ափրոդիտականսն վաւաշոտութիւնք՝ առ բազում մասն
հոգւոյն, վասն միոյ սեռին ունակութեան, 'ի ձեռն
անդայտութեան ոսկերացն հոսանուտ և դիջային՝ 'ի

մարմնի ցաւք եղեն։ Եւ գրեթէ ամենայն արդեւք, որչափ 'ի հեշտութեանց անժուժկալութիւնք են իբրու 'ի կամաւորացն ասելով չարեացն՝ ոչ ուղղաբար նախատիցին։ Քանզի կամաւ իսկ չար ոչ և մի ոք է. այլ վասն չար ունակութեան ուման[1] մարմնոյն. և անհրահանգ սննդեանն՝ չարն լինի չար։ Եւ ամենայնի այսոցիկ նամեբար և իբրու չար ինչ առլինիցի։ Եւ դարձեալ արդ այն որ առ տրտմութիւնք վասն մարմնոյն՝ ըստ այսոցիկ հոգին բազում չարութիւն ունիցի։ Զի յորոյ արդեւք իցէ, 'ի թթուագունիցն և յաղտաղտուկ մաղձիցն, և որչափ դառինք և մաղձատեսակ խառնուածք առ մարմնոյն մոլորեալք՝ արտաքս իսկ վերաշնչութիւն ոչ ընկալցին, այլ ներքոյ գումարելով զեռ 'ի յինքեանց գոլոշին ընդ հոգւոյն բերմամբն միաւորելով խառնեսցին, պէսպէս հիւանդութիւնս հոգւոյն գործեսցին, յաւէտ և նուազ, և սակաւ և յոլով։ Եւ առ երիս տեղիսն բերեալք հոգւոյն առ որոյ արդեւք իւրաքանչիւր 'ի սոցանէ անկանի, և պաճուճէ զտեսակս դժուարութեան և անյօժարութեանս պէսպէս, պաճուճէ իսկ և զյանդգնութիւնս և զանգիտումն. և տակաւին զզանխլութիւնս համանգամայն և դժուարին ուսմունս։ Եւ առ սոքօք յորժամ այսպէս չարաչար հաստատին քաղաքավարութիւնք, և բանք չարք առ քաղաքօք առանձնապէս և 'ի հրապարակի ասելով, և տակաւին ուսմունք ոչ ուրուք սոցունց բուժական 'ի մանկութենէ ուսանի. այսչափ չարքն ամենայն իցեն չարք՝ վասն երկու իրի՝ ակամաբար լինելով։ Որոյ պատճառք գոլ թուել մեզ պարտ է տնկողքն մանաւանդ քան զտնկեալքն, և ըզսնուցողքն մանաւանդ քան զսնուցեալսն։ Սակայն և յօժարանալ պարտ է, ուր և հնար լինիցի, 'ի ձեռն սննդեան և 'ի ձեռն խորհրդոց և ուսմանց ճողոպրել 'ի չարէն, և զներհակն նորին ընկալուլ։ Այսոքիկ արդեւք յեղանակին այլոց բանից։ Եւ սոցա հակադարձումն սակայն, որ առ մարմնոյն են, և տրամախոհութեանցն հաճոյութիւնք, որովք պատճառօք ողջացին, դարձեալ վայելչագոյն է և իրաւապէս հատու-

[1] Այսպէս յօրինակին. այսինքն՝ մարմնոյ իմիք։

ցանել։ Քանզի արդարագոյն է մանաւանդ յաղագս բարեացն՝ քան եթէ չարեացն հատուցանել զբանս։ Եւ արդ ամենայն բարի՝ գեղեցիկ է. բայց գեղեցիկն ոչ է անչափ։ Եւ կենդանի արդ զայսպիսին գոլով համանգամայն՝ չափաւոր պարտ է դնել։ Եւ 'ի չափաւորացն զփոքունսն իսկ զգալով համեմատեմք. սակայն առ իսկագոյնքն և մեծագոյնքն՝ անհամեմատաբար ունիցիմք։ Քանզի առողջութիւնք և հիւանդութիւնք, արութիւնք իսկ և չարութիւնք, ոչ և մի չափաւորութիւն և անչափութիւն մեծագոյն քան զհոգւոյն նորին առ նոյնն մարմին։ Յորոց ոչ զոք գիտեմք և ոչ զմտաւ ածեմք, զի զհոգի զօրաւոր և զամենևին մեծ յորժամ տկարագոյն տեսակ ընկալցի, և յորժամ փոխանակ այսմիկ շարադրեսցի ընդ սմա՝ ոչ գեղեցիկ բոլոր իցէ կենդանին։ Քանզի անչափաւոր է մեծիւ անչափաւորութեամբք[1] զներհակապէսն ունելով։ Իսկ որ զներհակապէսն ունիցի, ամենայն տեսութեանց, տեսանել կարողին՝ փափագելի իցէ և գեղեցկագոյն։ Իբրու արդ բարձրասրուն, և կամ զայլ ինչ վերագոյն քան զունակութիւն, անչափ յինքեան ինչ գոլով մարմին համանգամայն իսկ գարշելի, և համանգամայն առ վաստակոյն հաղորդութիւնն՝ զբազում իսկ աշխատանս և զբազում շփոթութիւնք և զգլորմունս, վասն օտարաբերութեանն առտուելով՝ բիւրից չարեաց ինքեան իցէ պատճառ։ Այսպէս արդ խորհիլ պարտ է և յաղագս երկաքանչիւրոյ՝ այնմ զոր կոչեմք կենդանի. իբրու յորժամ 'ի սմա հոգի լաւագոյն գոլով քան զմարմին՝ յօժարագոյն իցէ, շարժելով սա զամենայն ներքոյ՝ հիւանդութեամբ լցցէ, և յորժամ յամենս յուսմունս և 'ի խնդրուածս հասցի քաջոլորապէս՝ մաշեսցի, սակայն զուսմունս և զմարտս բանիւք առնելով հրապարակաւ և առանձնապէս 'ի ձեռն մաքառի և դիմաբանութեան լինելով, հրատեսակ զսա առնելով լուծանէ. և զհոսմունս 'ի վերայ հասուցանելով զյոլովագոյնսն պարտէ[2] յայնցանէ որ անուանեալ են բժիշկ, և զներհակսն գործէ պատճառիլ։ Եւ մարմինն

1 Յոյնն. Մեծաց չափակցութեանց։
2 Յն. Պատրէ։

իսկ յորժամ առաւել ցրտագոյն [1] լինիցի, փանաք և տկար տրամախոհութեան կցորդ բնութեան լինիցի, կրկին ցանկութեանց ելց բնութեամբ ըստ մարդկան, 'ի ձեռն մարմնոյ իսկ մնողեան, և վասն աստուածայնագունին՝ այնոցիկ որ 'ի մեզ են, այսինքն է խոհեմութեան, վեհագունին շարժութեան յաղթելով և զիւրեանցն իսկ անձեցուցանելով իր. և զհոգւոյն խուլ և դժուարին առ ուսմունս, և առանց յիշողութեան առնելով զմեծագոյնն հիւանդութիւն զանուսումնականութիւնն գործեն։ Մի է արդեւք փրկութիւն առ երկաքանչիւրսն, ոչ հոգւոյն առանց մարմնոյ շարժիլն, և ոչ մարմնոյ առանց հոգւոյն. քանզի սպառնալով միմեանց՝ լինիցի հաւասարաչափք և ողջք։ Եւ զուսումնականն արդ կամ զայլ ինչ խոկումն յոյժ տրամախոհութեամբ գործելով, և զմարմնոյն պարտ է հաստուցանել շարժութիւն, կաճառելով ընդ կրթականաւն, և այնմ որ զմարմինն փութապէս ստեղծնու, զհոգւոյն շարժութիւքն հաստուցանել պարտ է առ երաժշտականաւ և ամենայն իմաստասիրականաւ վարելով։ Եթէ արդարապէս ոք հանդերձեալ է համանգամայն իսկ գեղեցիկ և միանգամայն բարի ուղղապէս կոչիլ, և ըստ այսոցիկ նոցունց և զմասունսն բժշկել պարտ է, զամենայնի 'ի բաց նմանելով [2] տեսակ։ Քանզի մարմնոյն այնոքիւք՝ որ 'ի ներքս մտանեն բորբոքելով ներքոյ, և ցրտանալով և դարձեալ արտաքնովքն չորանալով և գիջանալով, և զսոցունց հետևեալսն կրելով երկաքանչիւրօքն շարժութեամբ, յորժամ իսկ հանդարտութիւն բերելով մարմինն աւանդեսցի շարժութեամբն, և յաղթեալ ուրուք կալցէ. ապա եթէ զայն՝ որ սնուցող և դայեակ ամենեցուն առասեմք, նմանիցէ ոք, և մարմնոյն իսկ մանաւանդ ոչ երբէք հանդարտութիւն բերել թողուցու, այլ շարժիցէ, և տատանմունս զոմանս միշտ 'ի սմա ներգործելով յամենայն ժամ, զներքինս և զարտաքինս մերժիցէ ըստ բնութեան շարժութիւնս, և չափաւորապէս սասանելով՝ զայնոսիկ որ առ մարմնովն մոլորեալ կիրք և մասունքն են, ըստ բաղազանութեան առ միմեանս 'ի

1 Յն. Առաւել մեծ և ցրտագոյն։

2 Յոր. ճալով։

դատութիւն զարդարէ, ըստ յառաջագոյն բանին՝ զոր յաղագս ամենայնի ասէաք, ոչ թշնամի առ թշնամոյ եղեալ, թողուցու պատերազմունս և հիւանդութիւնս 'ի ներմարմնոյն ծնանիլ. այլ բարեկամ եղեալ առ բարեկամի 'ի բաց գործելով զողջութիւն առտուիցէ: Իսկ արդ 'ի շարժութեանցն, այն որ յինքեան ինքեամբ արիագոյն է շարժութիւն, քանզի մանաւանդ տրամախոհականին և ամենայնի բաղազան է շարժութեանն իսկ այն որ միւսով թարմատար է: Եւ վատթարագոյն կալով մարմնոյն, և հանդարտութիւն բերելով՝ 'ի ձեռն այլոցն ինքն զմասունքն շարժելով: Վասն որոյ արդեւք մաքրութեանց և բաղկացութեանցն մարմնոյ, այն իսկ որ 'ի ձեռն կրթագունից արիագոյն է. երկրորդ իսկ որ 'ի ձեռն սլացմանց, ըստ նաւարկութեանցն, և ուր արդեւք վարութիւնք առանց աշխատութեան լինիցին. և երրորդ իսկ տեսակ յոյժ հարկելոյն պիտանացու, և այլ բար ոչ առմուաց ունողին ընդունել, այն իսկ որ բուժական մաքրութիւն լինի: Քանզի զհիւանդութիւնքն որչափ մեծագոյն վիշտք ոչ ունին, ոչ է պարտ բուժականաւն գրգռել. քանզի ամենայն բաղկացութիւն հիւանդութեանց՝ յեղանակաւ ոմամբ 'ի կենդանեացն բնութիւնն է նմանեալ: Զի և սոցունց շարագայութիւնն դասեալ ունելով զկենցաղոյս ժամանակս լինի, սեռին իսկ 'ի միասին ամենայնի. և ինքն ըստ ինքեան կենդանին պատահումն ունելով իւրաքանչիւր կենցաղոյս 'ի կենցաղս բուսանի, առանց այնոցիկ որ 'ի հարկէ են կրիցն: Քանզի եռանկիւնքն իւրաքանչիւրոց իսկ բանն վաղվաղակի զօրութիւն ունելով բաղկանան՝ մինչև ցժամանակ ուրուք հնարելով բաւիլ. քան զոր ոչ ոք արդեւք երբէք կեանք կեցցէ հեռագոյն: Յեղանակ արդ այս իսկ և առ հիւանդութիւնս բաղկացութեանն, զոր առանց ժամանակին բախտին եթէ ապականիցէ ոք դեղիւք, համանգամայն 'ի փոքունց մեծք, և բազումք 'ի սակաւուց հիւանդութիւնք սիրեն լինել: Վասն որոյ դաստիարակել պարտ է հրահանգիւք զամենայն զայսպիսիս, որչափ արդեւք հնար իցէ. և ոչ դեղիւք՝ զչար և զդժուարագոյն մաքառեցուցանել պարտ է: Եւ յաղագս իսկ հասարակաց կեն-

դանւոյն և ըստ մարմնոյն սորա մասանցս, ըստ որում
արդ դաստիարակեալ, և դաստիարակելով 'ի սմանէ,
մանաւանդ արդեւք, ըստ համեմատութեան կեցցէ,
այսոքիկ ասացան։

Իսկ զայն որ դաստիարակելոցն է, զսա մանա֊
ւանդ ուր և որպէս պատրաստելի է ըստ զօրութեան,
զի գեղեցկագոյն և արիագոյն առ 'ի կրթութիւնսն
գոլով։ Եւ 'ի ձեռն ստուգութեան արդեւք յաղագս
այսոցիկ պատմել, բաւական արդեւք լինիցի նոյնդ ըստ
ինքեան գործ միայն. և վարկպարազի որպէս յառա֊
ջագոյն հետևեալ ոք, ոչ յեղանակաւ դիտելով առ
սմա, այսուիկ [1] բանիւս անցցէ արդեւք, որպէս բա֊
զում անգամ ասացաք, եթէ երեք տեսակք հոգւոյ
եռակի են 'ի մեզ բնակեալ։ Եւ հանդիպի իւրաքան֊
չիւր շարժութիւնք ունելով։ Այսպէս և այժմ ըստ
այսոցիկ իբրու 'ի ձեռն ողից ասել պարտ է. քանզի
ումեմն 'ի նոցանէ 'ի խափանի գոլով, և իւրոց շար֊
ժութեանցն հանդարտութիւն բերելով, տկարագոյն
լինել հարկ է. և ումեմն 'ի կրթմունս՝ գոլով զուար֊
թագոյն։ Վասն որոյ պահել պարտ է իբրու ունիցին
արդեւք զշարժութիւնքն առ միմեանս չափաւորս։ Իսկ
զայն որ յաղագս իսկագոյն առ մեզ է հոգւոյ տեսա֊
կիս՝ տրամախոհիլ պարտ այսպէս է իբրու սա ուրեմն
աստուած՝ դև իւրաքանչիւր սպարգևեաց. զայս ար֊
դեւք զոր ասեմք բնակիլ իսկ ծայրաբար 'ի մերում
մարմնի, և առ այն որ 'ի յերկինս է բաղազանութիւն
'ի յերկրէ զմեզ 'ի բաց բառնալ. իբրու ոչ ելով բոյս
երկրային, այլ երկնային՝ ուղղագոյն ասելով։ Քանզի
անդուստ ուստի առաջինն հոգւոյն լինելութիւն բու֊
սաւ, զգլուխն և զարմատն մեր աստուածայինն կա֊
ռուցանելով ուղղեսցէ զամենայն մարմին։

Իսկ այնուիկ որ առ ցանկութիւնս և դիմամար֊
տութիւնս ճահաւորեալ է, և առ այսոքիւք աշխա֊
տեալ յոյժ, ամենայն աւանդութեանցս հարկ է մահ֊
կանացու լինել։ Ի սոցանէ ոչ փոքումբ իրիւ պակա֊
սեալ, իբրու այսպէս աճեցելումն։ Իսկ այնմ որ առ
ուսումնասիրութիւնն և առ ճշմարիտ խոհականու֊

1 Յօր. այսմիկ։

թիւնքն իցէ փութացեալ, և առ այսօրիկ մանաւանդ կրթելումն, խորհել իսկ զանմահսն և զաստուածայինսն՝ եթէ ճշմարտութեան 'ի վերայ հասանել ամենայնի ուրուք հարկ է. որչափ ինչ մարդկային բնութիւնս է անմահութեան ընդունակ, սորա և ոչ մի մասն պակասեալ: Իբրու միշտ զաստուածայինն պաշտելով, և ունելով բարեւք զարդարեալ զայն իսկ դեն յինքեան բնակակից՝ զանազանապէս բարեբաստ գոլով: Եւ պաշտօն արդեւք ամենայնի ամենեւին մի է՝ իւրաքանչիւրուք զընտանի սնունդքն և զ արժութիւնս հատուցանել. և այնմ որ 'ի մեզն է աստուածայնւոյն յօքնատեսակ շարժութիւնք են՝ ամենայնի իմացութիւնքս և շրջաբերութիւնքս, Սոցունց արդեօք զհետ երթալով իւրաքանչիւր ոք պարտ է, զայն որ առ լինելութեանն 'ի գլխումն ապականեալ շրջաբերութիւնքն են մեր ուղղել, ուսանելովն զամենայնի յարմարմունքս և զշրջաբերութիւնքս, այսմ որ իմանալի է զիմացօղմնմանեցուցանելով ըստ նախնի բնութեանն. և նմանեցուցանելով՝ կատարած ունել առաջի եդեալ մարդկան առ 'ի յաստուածոցն առաքի կենցաղոյս՝ առհասեալս իսկ և այն որ յապառնի է ժամանակն: Եւ արդ այժմ մեզ՝ այն որ իսկզբանէ հրամայեցաւն պատմիլ յաղագս ամենայնի՝ մինչև ցլինելութիւնն մարդկան, գրեթէ նմանեցաւ զկատարածն կալեալ. քանզի զայլ կենդանիք, ըստ որում եղեն՝ 'ի ձեռն սակաւուց յիշել պարտ է. որով ոչ ինչ հարկ է երկարացուցանել: Քանզի այսպէս չափաւորագոյն ոք սովաւ թուեսցի 'ի յաղագս սոցունց գոլ բանիցն. այսպէս արդ եղիցի մեզ որ ասելոցն եմք: Ցեղելոց արանցդ որչափ անարիութեամբ զկենցաղս ապիրատաբար անցուցին, ըստ վայելչական բանին 'ի կանանց բնութիւնն փոխեցին յերկրորդում լինելութեանն: Եւ ըստ այնմ ժամանակի վասն այսորիկ աստուածք զկենակցութեան տռփումն նիւթեցին՝ կենդանի, զոմն 'ի մեզ շնչաւոր, և զոմն 'ի կանայս բաղկացուցանելով: Այսպիսի յեղանակաւ զերկաքանչիւրսն առնելով, զըմպելոյն ելն այն որ 'ի ձեռն թոքոյն զըմպելլին առ երիկամունքն 'ի բուշտն բերելով, և ընչաւն մղեալ 'ի միասին արտաքս առաքէ զընդունեալն, արարին յայնմ որ 'ի

Digitized by Google

գլխոյն ըստ պարանոցին և ողնաշարին ուղեղն է մածեալ, զոր և սերմն յառաջագոյնս ասացաք բանս։ Եւ սա իբրու շնչաւոր գոլով և առեալ զվերաշնչութիւն զայն ըստ որում վերաշնչեաց, 'ի հոմանէն կենդանական ցանկութիւն ներգործեալ 'ի սմա՝ տուփումն ծնանելոյ կատարեաց։ Վասն որոյ արանցն առ պատկառանացն բնութիւն՝ անհաւանական ինչ եղև և ինքնազօր իբրու կենդանի անհպատակ բանին, ամենեցուն 'ի ձեռն մոլեկան ցանկութեանցն ձեռնարկելով յաղթել։ Եւ 'ի կանայս իսկ այն որ մայրական որովայնք կոչին, վասն այսորիկ նոցունց կենդանի ցանկական գոլով մանկարարութեան, յորժամ անպտուղ առն իւրոյ ժամանակ բազում լինիցի՝ դժուարապէս հեծելով հանդուրժէ և մոլորելով ամենևին ըստ մարմնոյն, զելսն շնչոյն խնու, վերաշնչել ոչ թողլով՝ առ վերջինսն տարակուսանս հասուցանէ, և զայլ զց[illegible] պէսպէս առնու, մինչև արդեւք երկաքանչիւրոցն ցանկութիւնն և տուփումն 'ի միասին հասեալ, և իբրու 'ի ծառոց քաղելով պտուղ, և յերկիր ոմն արօրավար յարդանդին, անտեսս մանրկութեամբ, և անստեղծ կենդանիս սերմանելով։ Եւ դարձեալ ընտրելով, զմեծամեծս ներքոյ հնձիցեն. և յետ այսորիկ 'ի լոյս ածելով՝ կենդանեաց լինելութիւն կատարիցեն։ Կանայք իսկ արդեւք էգք ամենայն այսպէս եղեն։

Իսկ հաւուցն ցեղ փոխայարմար. փոխանակ հերիցն թևք բուսուցանելով, ամբիծ արանց, և թեթևագունից. և բարձրաբանականաց իսկ, բերելով տեսութեամբն զառ 'ի յաղագս սոցա ապացոյց վասն դիւրին բարուցն գոլ հաստատունք։ Եւ հետևակն և գազանատեսակն եղև յայնցանէ, որ ոչ և միով վարին իմաստասիրութեամբ, և ոչ տեսանելին և ոչ մի յայնմանէ որ առ յերկինսն են բնակութիւնքն. յաղագս ոչ միոյ իրի վասն ոչ ևս այնմ որ 'ի գլուխն է՝ վարելոյն շրջաբերութեամբն. այլ այն ոք իւք որ առ լանջօքն են մասունքն հոգւոյն՝ իբրու առաջնորդաց՝ հետևելին։ Վասն այսոցիկ արդեւք խորհրդոցս զառաջին ոսկերքն և զգլուխն յերկիր հաստատեցին ձգեալք՝ բաղազանութեամբ, և առաջաձիգք և պէսպէսք ընկալան զգլուխս, ուր և խոտորեցան խափանմամբ իւ-

Digitized by Google

թաքանչիւրոցն շրջաբերութիւնքն։ Եւ չորքոտանի սեռն տոցա յայսմանէ բուսանէր [1] պատճառէ, յոլովս հաստատութիւնս ենթադրելով աստուծոյ՝ այնոցիկ որ մանաւանդ անխոհեմքն են, զի յաւէտագոյն առ երկրաւ ձգին։ Եւ այնոցիկ որ անզգամագոյնքն են 'ի սոցանէ, և ամենեքին ամենայն առ երկրան բոլոր մարմնաւն տարածելոցն, իբրու ոչ ինչ տակաւին ոտից գոլով պիտոյից, անոտս նոքա և գետնաշարժս առ երկրաւ ծնան։ Եւ չորրորդ սեռն ջրային եղև, յայնցանէ որ մանաւանդ անզգայագոյնքն են և անուսումնականք. զայս ոչ մաքուր վերաշնչութեանն արժանացուցին փոխատեղծիչքն, իբրու զհոգին ամենայն բաղբաղանօք անմաքուր ունելով. այլ փոխանակ անօսր և մաքուր վերաշնչութեանն օդոյ, 'ի ջրոյ պղտորագոյն և խորին թողացուցին վերաշնչութիւն. ուստի ազն ձկանցն և ոստրիցն, 'ի միասին ամենեցուն որչափ 'ի ջուրսն են, եղեն 'ի նմանութիւն վերջին անուսումնութեան, վերջին բնակութիւնս ընկալեալ։ Եւ այսոքիկ արդեւք՝ ամենայն յայնժամ և այժմ փոխաբերեն կենդանիքս 'ի միմեանց, մտաց և անհանճարութեան փոխաբերութեամբ և ստացմամբ այլայլեալք։ Եւ արդ կատարած յաղագս ամենայնի այժմ իսկ զբանս ունել ասացաք։ Քանզի զմահկանացուս և զանմահ կենդանիքս ըմբռնեալ աշխարհիս այսմիկ, այսպէս կենդանի երևելի՝ զերևելիսն պարունակեալ, պատկեր արարչին աստուած զգալի, մեծ և արիագոյն և գեղեցկագոյն, և կատարելագոյն եղև, մի երկին սա՝ գոլով միածին։

1 Յօր. բուսանէր։ Յոյնն. բուսանէր և բազմոտանի (յայսմանէ) պատճառէ։

ՎԵՐՋ

կամ 'ի վերինն որովայն, իբրու փախստական 'ի խառ-
վեալ քաղաքէ՝ 'ի մարմնոյն արտաքս անկեալ՝ զարա-
ղութիւն և օղորկաղողութիւն հոսմամբ որովայնին, և
զայսպիսիդ առաւեաց հիւանդութիւնք։ Իսկ արդ
'ի հրոյ գերազանցութենէ մանաւանդ հիւանդացեալ
մարմինն, շարունակ տապք և ջերմութիւնք գործեն.
և այն իսկ որ 'ի յօդոյ միջօրեայ և երեքօրեայ գործեն
'ի ձեռն ջրոյ՝ վասն տարտամագոյն օդոյ և հրոյ գոլ
զսա, և հողոյն՝ եռապատիկ գոլով դանդաղագոյն
քան զնոսա՝ քառապատիկ շրջաբերութեամբ ժամա-
նակի մաքրելով չորեքօրեայ ջերմութիւնք գործեն՝ որ
և հազիւ 'ի բաց փոխեսցի։ Եւ այնոքիկ իսկ որ առ
մարմնովն հիւանդութիւնք՝ այսպէս պատահին լինե-
լով։ Եւ որ 'ի հոգւոյն՝ վասն ունակութեան մարմնոյ՝
այսպէս։ Արդ հիւանդութիւն հոգւոյ՝ անմտութիւն
ասելի է. և կրկին սեռք են անմտութեան. մոլեգ-
նութիւն, և անուսումնութիւն։ Եւ զամենայն արդ զոր
ինչ և կրիցէ ոք ախտ, որպիսի և իցէ 'ի նոցունց՝ պարտ
է հիւանդութիւն ասել։ Բայց զհեշտութիւնք և
տրտմութիւնք գերազանցեալս, քան զհիւանդութիւնս
մեծագոյնք դնելիք են սոքա։ Քանզի խնդացեալ մարդ
գոլով, և կամ զներհակս 'ի ձեռն տրտմութեան
կրելով, փութացեալ զոմն 'ի սոցանէ տարաժամաբար
կալուլ, և միւսոյն ձողոպրիլ, ոչ տեսանել և ոչ լսել
ոչ ինչ ուղիղ կարասցէ, և կատաղի, և մտածու-
թեան հաղորդել յայնժամ ոչ իցէ կարացեալ։ Եւ
սերմն այսմիկ յոյժ հոսանուտ գոլով հասանի առ ու-
ղեղն, և որպէս եթէ ծառ բազմապտուղ առաւել
քան զորչափն է բնաւորեալ իցէ, զբազումս ըստ իւ-
րաքանչիւր երկունս, և զբազում հեշտութիւնք ստա-
նալով առ ցանկութիւնս և առ այսպիսի ծննդօքս,
մոլեգնեալ զյոլովագոյնն լինելով կենցաղոյս, վասն
մեծագոյն հեշտութեանցն, և տրտմութեանցն հի-
ւանդացեալ և առանց խոհեմութեան ունելով ընդ
մարմնովն զհոգին, ոչ իբրու հիւանդացեալս, այլ ի-
բրու կամաւ կարծեցեալ է չար։ Եւ ճշմարիտն առ
ափրոդիտականսն վաւաշոտութիւնք՝ առ բազում մասն
հոգւոյն, վասն միոյ սեռին ունակութեան, 'ի ձեռն
անդայտութեան ոսկերացն հոսանուտ և դիջային՝ 'ի

Digitized by Google

մարմնի ցաւք եղեն։ Եւ գրեթէ ամենայն արդեւք, որչափ 'ի հեշտութեանց անժուժկալութիւնք են իբրու 'ի կամաւորացն ասելով չարեացն՝ ոչ ուղղաբար նախատիցին։ Քանզի կամաւ իսկ չար ոչ և մի ոք է. այլ վասն չար ունակութեան ուման [1] մարմնոյն. և անհրահանգ սննդեանն՝ չարն լինի չար։ Եւ ամենայնի այսոցիկ նամեբար և իբրու չար ինչ առլինիցի։ Եւ դարձեալ արդ այն որ առ տրտմութիւնք վասն մարմնոյն՝ ըստ այսոցիկ հոգւին բազում չարութիւն ունիցի։ Զի յորդ արդեւք իցէ, 'ի թթուագունիցն և յաղտաղտուկ մաղձիցն, և որչափ դառինք և մաղձատեսակ խառնուածք առ մարմնոյն մոլորեալք՝ արտաքս իսկ վերաշնչութիւն ոչ ընկալցին, այլ ներքոյ գումարելով զառ 'ի յինքեանց գոլորշին ընդ հոգւոյն բերմամբն միաւորելով խառնեցին, պէսպէս հիւանդութիւնս հոգւոյն գործեցին, յաւէտ և նուազ, և սակաւ և յոլով։ Եւ առ երիս տեղիսն բերեալք հոգւոյն առ որոյ արդեւք իւրաքանչիւր 'ի սոցանէ անկանի, և պաճուճէ զտեսակս դժուարութեան և անյօժարութեանս պէսպէս, պաճուճէ իսկ և զյանդգնութիւնս և զանգիտումն. և տակաւին զզանխլութիւնս համանգամայն և դժուարին ուսմունս։ Եւ առ սոքօք յորժամ այսպէս չարաչար հաստատին քաղաքավարութիւնք, և բանք չարք առ քաղաքօք առանձնապէս և 'ի հրապարակի ասելով, և տակաւին ուսմունք ոչ ուրուք սոցունց բուժական 'ի մանկութենէ ուսանի. այսչափ չարքն ամենայն իցեն չարք՝ վասն երկու իրի՝ ակամաբար լինելով։ Որոյ պատճառք գոլ թուել մեզ պարտ է տնկողքն մանաւանդ քան զտնկեալքն, և ըղսնուցողքն մանաւանդ քան զսնուցեալսն։ Սակայն և յօժարանալ պարտ է, ուր և հնար լինիցի, 'ի ձեռն սննդեան և 'ի ձեռն խորհրդոց և ուսմանց ճողոպրել 'ի չարէն, և զներհակն նորին ընկալուլ։ Այսոքիկ արդեւք յեղանակին այլոց բանից։ Եւ սոցա հակադարձումն սակայն, որ առ մարմնոյն են, և տրամախոհութեանցն հաճոյութիւնք, որովք պատճառօք ողջացին, դարձեալ վայելչագոյն է և իրաւապէս հաստու-

[1] Այսպէս յօրինակին. այսինքն մարմնոյ իմիք։

ցանել։ Քանզի արդարագոյն է մանաւանդ յաղագս բարեացն՝ քան եթէ չարեացն հատուցանել զբանս։ Եւ արդ ամենայն բարի՝ գեղեցիկ է. բայց գեղեցիկն ոչ է անչափ։ Եւ կենդանի արդ զայսպիսին գոլով համանգամայն՝ չափաւոր պարտ է դնել։ Եւ 'ի չափաւորացն զփոքունսն իսկ զգալով համեմատեմք. սակայն առ իսկագոյնքն և մեծագոյնքն՝ անհամեմատաբար ունիցիմք։ Քանզի առողջութիւնք և հիւանդութիւնք, արութիւնք իսկ և չարութիւնք, ոչ և մի չափաւորութիւն և անչափութիւն մեծագոյն քան զհոգւոյն նորին առ նոյնն մարմին։ Յորոց ոչ զոք գիտեմք և ոչ զմտաւ ածեմք, զի զհոգի զօրաւոր և զամենևին մեծ յորժամ տկարագոյն տեսակ ընկալցի, և յորժամ փոխանակ այսմիկ շարադրեսցի ընդ սմա՝ ոչ գեղեցիկ բոլոր իցէ կենդանին։ Քանզի անչափաւոր է մեծիւ անչափաւորութեամբք [1] զներհակապէսն ունելով։ Իսկ որ զներհակապէսն ունիցի, ամենայն տեսութեանց, տեսանել կարողին՝ փափագելի իցէ և գեղեցկագոյն։ Իբրու արդ բարձրաարուն, և կամ զայլ ինչ վերագոյն քան զունակութիւն, անչափ յինքեան ինչ գոլով մարմին համանգամայն իսկ գարշելի, և համանգամայն առ վաստակոյն հաղորդութիւնն՝ զբազում իսկ աշխատանս և զբազում շփոթութիւնք և զգլորմունս, վասն օտարաբերութեանն առտուելով՝ բիւրից չարեաց ինքեան իցէ պատճառ։ Այսպէս արդ խորհիլ պարտ է և յաղագս երկաքանչիւրոյ՝ այնմ զոր կոչեմք կենդանի. իբրու յորժամ 'ի սմա հոգի լաւագոյն գոլով քան զմարմին՝ յօժարագոյն իցէ, շարժելով սա զամենայն ներքոյ՝ հիւանդութեամբ լցցէ, և յորժամ յամենս յուսմունս և 'ի խնդրուածս հասցի քաջոլորապէս՝ մաշեսցի, սակայն զուսմունս և զմարտս բանիւք առնելով հրապարակաւ և առանձնապէս 'ի ձեռն մաքառի և դիմաբանութեան լինելով, հրատեսակ զսա առնելով լուծանէ. և զհոսմունս ի վերայ հասուցանելով զյոլովագոյնսն պարտէ [2] յայնցանէ որ անուանեալ են բժիշկ, և զներհակքն գործէ պատճառիլ։ Եւ մարմինն

1 Յոյնն. Մեծաց չափակցութեանց։
2 Յն. Պատրէ։

իսկ յորժամ առաւել ցրտագոյն [1] լինիցի, փանաք և տկար տրամախոհութեան կցորդ բնութեան լինիցի, կրկին ցանկութեանց ելոց բնութեամբ ըստ մարդկան, 'ի ձեռն մարմնոյ իսկ սննդեան, և վասն աստուածայնագունին՝ այնոցիկ որ 'ի մեզ են, այսինքն է խոհեմութեան, վեհագունին շարժութեան յաղթելով և զիւրեանցն իսկ աճեցուցանելով իր. և զհոգւոյն խուլ և դժուարին առ ուսմունս, և առանց յիշողութեան առնելով զմեծագոյնն հիւանդութիւն զանուսումնականութիւնն գործեն: Մի է արդեւք փրկութիւն առ երկաքանչիւրսն, ոչ հոգւոյն առանց մարմնոյ շարժիլն, և ոչ մարմնոյ առանց հոգւոյն. քանզի սպառնալով միմեանց՝ լինիցի հաւասարաչափք և ողջք: Եւ զուսումնականն արդ կամ զայլ ինչ խոկումն յոյժ տրամախոհութեամբ գործելով, և զմարմնոյն պարտ է հատուցանել շարժութիւն, կաճառելով ընդ կրթականաւն, և այնմ որ զմարմինն փութապէս ստեղծնու, զհոգւոյն շարժութիւքն հատուցանել պարտ է առ երաժշտականաւ և ամենայն իմաստասիրականաւ վարելով: Եթէ արդարապէս ոք հանդերձեալ է համանգամայն իսկ գեղեցիկ և միանգամայն բարի ուղղապէս կոչիլ, և ըստ այսոցիկ նոցունց և զմասունսն բժշկել պարտ է, զամենայնի 'ի բաց նմանելով [2] տեսակ: Քանզի մարմնոյն այնոքիւք՝ որ 'ի ներքս մտանեն բորբոքելով ներքոյ, և ցրտանալով և դարձեալ արտաքնովքն չորանալով և գիջանալով, և զսոցունց հետևեալսն կըրելով երկաքանչիւրոցքն շարժութեամբ, յորժամ իսկ հանդարտութիւն բերելով մարմինն աւանդեսցի շարժութեամբն, և յաղթեալ ուրուք կալցէ. ապա եթէ զայն՝ որ սնուցող և դայեակ ամենեցուն առասեմք, նմանիցէ ոք, և մարմնոյն իսկ մանաւանդ ոչ երբէք հանդարտութիւն բերել թողուցու, այլ շարժիցէ, և տատանմունս զոմանս միշտ 'ի սմա ներգործելով յամենայն ժամ, զներքինս և զարտաքինս մերժիցէ ըստ բնութեան շարժութիւնս, և չափաւորապէս սասանելով՝ զայնոսիկ որ առ մարմնովն մոլորեալ կիրք և մասունքն են, ըստ բաղազանութեան առ միմեանս 'ի

1 Յն. Առաւել մեծ և ցրտագոյն: 2 Յոր. Նմանել:

*դատութիւն զարդարէ, ըստ յառաջագոյն բանին՝ զոր յաղագս ամենայնի ասէաք, ոչ թշնամի առ թշնամոյ եղեալ, թողուցու պատերազմունս և հիւանդութիւնս 'ի ներմարմնոյն ծնանիլ. այլ բարեկամ եղեալ առ բարեկամի 'ի բաց գործելով զողջութիւն առնուցէ։ Իսկ արդ 'ի շարժութեանցն, այն որ յինքեան ինքեամբ արիագոյն է շարժութիւն, քանզի մանաւանդ տրամախոհականին և ամենայնի բաղազան է շարժութեանն իսկ այն որ միւսով թարմատար է։ Եւ վատթարագոյն կալով մարմնոցն, և հանդարտութիւն բերելով՝ 'ի ձեռն այլոցն ինքն զմասունքն շարժելով։ Վասն որոյ արդեւք մաքրութեանց և բաղկացութեանցն մարմնոյ, այն իսկ որ 'ի ձեռն կրթագունից արիագոյն է. երկրորդ իսկ որ 'ի ձեռն սլացմանց, ըստ նաւարկութեանցն, և ուր արդեւք վարութիւնք առանց աշխատութեան լինիցին. և երրորդ իսկ տեսակ յոյժ հարկելոյն պիտանացու, և այլ բար ոչ առմտաց ունողին ընդունել, այն իսկ որ բուժական մաքրութիւն լինի։ Քանզի զհիւանդութիւնքն որչափ մեծագոյն վիշտք ոչ ունին, ոչ է պարտ բուժականաւն գրգռել. քանզի ամենայն բաղկացութիւն հիւանդութեանց՝ յեղանակաւ ոմամբ 'ի կենդանեացն բնութիւնն է նմանեալ։ Զի և սոցունց շարագայութիւնն դասեալ ունելով զկենցաղոյս ժամանակս լինի, սեռին իսկ 'ի միասին ամենայնի. և ինքն ըստ ինքեան կենդանին պատահումն ունելով իւրաքանչիւր կենցաղոյս 'ի կենցաղս բուսանի, առանց այնոցիկ որ 'ի հարկէ են կրիցն։ Քանզի եռանկիւնքն իւրաքանչիւրոց իսկ բանն վաղվաղակի զօրութիւն ունելով բաղկանան՝ մինչև ցժամանակ ուրուք հնարելով բաւիլ. քան զոր ոչ ոք արդեւք երբէք կեանք կեցցէ հեռագոյն։ Յեղանակ արդ այս իսկ և առ հիւանդութիւնս բաղկացութեանն, զոր առանց ժամանակին բախտին եթէ ապականիցէ ոք դեղիւք, համանգամայն 'ի փոքունց մեծք, և բազումք 'ի սակաւուց հիւանդութիւնք սիրեն լինել։ Վասն որոյ դաստիարակել պարտ է հրահանգիւք զամենայն զայսպիսիս, որչափ արդեւք հնար իցէ. և ոչ դեղիւք՝ զչար և զդժուարագոյն մաքառեցուցանել պարտ է։ Եւ յաղագս իսկ հասարակաց կեն-*

Digitized by Google

դանւոյն և ըստ մարմնոյն սորա մասանցս, ըստ որում
արդ դաստիարակեալ, և դաստիարակելով 'ի սմանէ,
մանաւանդ արդեւք, ըստ համեմատութեան կեցցէ,
այսոքիկ ասացան:

Իսկ զայն որ դաստիարակելոցն է, զսա մանա-
ւանդ ուր և որպէս պատրաստելի է ըստ զօրութեան,
զի գեղեցկագոյն և արիագոյն առ 'ի կրթութիւնսն
գոլով: Եւ 'ի ձեռն ստուգութեան արդեւք յաղագս
այսոցիկ պատմել, բաւական արդեւք լինիցի նոյնդ ըստ
ինքեան գործ միայն. և վարկպարազի որպէս յառա-
ջագոյն հետևեալ ոք, ոչ յեղանակաւ դիտելով առ
սմա, այսուիկ [1] բանիւս անցցէ արդեւք, որպէս բա-
զում անգամ ասացաք, եթէ երեք տեսակք հոգւոյ
եռակի են 'ի մեզ բնակեալ: Եւ համդիպի իւրաքան-
չիւր շարժութիւնք ունելով: Այսպէս և այժմ ըստ
այսոցիկ իբրու 'ի ձեռն ողից ասել պարտ է. քանզի
ումեմն 'ի նոցանէ 'ի խափանի գոլով, և իւրոց շար-
ժութեանցն հանդարտութիւն բերելով, տկարագոյն
լինել հարկ է. և ումեմն 'ի կրթմունս՝ գոլով զուար-
թագոյն: Վասն որոյ պահել պարտ է իբրու ունիցին
արդեւք զշարժութիւնքն առ միմեանս չափաւորս: Իսկ
զայն որ յաղագս իսկագոյն առ մեզ է հոգւոյ տեսա-
կիս՝ տրամախոհիլ պարտ այսպէս է իբրու սա ուրեմն
աստուած՝ դև իւրաքանչիւր սպարգևեաց. զայս ար-
դեւք զոր ասեմք բնակիլ իսկ ծայրաբար 'ի մերում
մարմնի, և առ այն որ 'ի յերկինս է բաղաղանութիւն
'ի յերկրէ զմեզ 'ի բաց բառնալ. իբրու ոչ ելով բոյս
երկրային, այլ երկնային՝ ուղղագոյն ասելով: Քանզի
անդուստ ուստի առաջինն հոգւոյն լինելութիւն բու-
սաւ, զգլուխն և զարմատն մեր աստուածայինն կա-
ռուցանելով ուղղեսցէ զամենայն մարմին:

Իսկ այնուիկ որ առ ցանկութիւնս և դիմամար-
տութիւնս ճահաւորեալ է, և առ այսոքիւք աշխա-
տեալ յոյժ, ամենայն աւանդութեանցս հարկ է մահ-
կանացու լինել: Ի սոցանէ ոչ փոքումբ իրիւ պակա-
սեալ, իբրու այսպէս աճեցելումն: Իսկ այնմ որ առ
ուսումնասիրութիւնն և առ ճշմարիտ խոհականու-

[1] Յօր. այսմիկ:

Digitized by Google

թիւնքն իցէ փութացեալ, և առ այսոսիկ մանաւանդ կրթելումն, խորհել իսկ զանմահոն և զաստուածայիննն՝ եթէ ճշմարտութեան 'ի վերայ հասանել ամենայնի ուրուք հարկ է. որչափ ինչ մարդկային բնութիւնս է անմահութեան ընդունակ, սորա և ոչ մի մասն պակասեալ: Իբրու միշտ զաստուածայինն պաշտելով, և ունելով բարւոք զարդարեալ զայն իսկ դևն յինքեան բնակակից՝ զանազանապէս բարեբաստ գոլով: Եւ պաշտօն արդեւք ամենայնի ամենևին մի է՝ իւրաքանչիւրումք զընտանի սնունդքն և զ արժութիւնք հատուցանել. և այնմ որ 'ի մեզն է աստուածայնւոյն յօքնատեսակ շարժութիւնք են՝ ամենայնի իմացութիւնքս և շրջաբերութիւնքս, Սոցունց արդեօք զհետ երթալով իւրաքանչիւր ոք պարտ է, զայն որ առ լինելութեանն 'ի գլխումն ապականեալ շրջաբերութիւնքն են մեր ուղղել, ուսանելովն զամենայնի յարմարմունքս և զշրջաբերութիւնքս, այսմ որ իմանալի է զիմացողմննմանեցուցանելով ըստ նախնի բնութեանն. և նմանեցուցանելով՝ կատարած ունել առաջի եդեալ մարդկան առ 'ի յաստուածոցն առաքի կենցաղոյս՝ առ հասեալս իսկ և այն որ յապառնի է ժամանակն: Եւ արդ այժմ մեզ՝ այն որ իսկզբանէ հրամայեցաւն պատմել յաղագս ամենայնի՝ մինչև ցլինելութիւնն մարդկան, գրեթէ նմանեցաւ զկատարածն կալեալ. քանզի զայլ կենդանիքս, ըստ որում եղեն՝ 'ի ձեռն սակաւուց յիշել պարտ է. որով ոչ ինչ հարկ է երկարացուցանել: Քանզի այսպէս չափաւորագոյն ոք սովաւ թուեսցի 'ի յաղագս սոցունց գոլ բանիցն. այսպէս արդ եղիցի մեզ որ ասելոցն եմք: Ցեղելոց արանցդ որչափ անարիութեամբ զկենցաղս ապիրատաբար անցուցին, ըստ վայելչական բանին 'ի կանանց բնութիւնն փոխեցին յերկրորդում լինելութեանն: Եւ ըստ այնմ ժամանակի վասն այսորիկ աստուածք զկենակցութեան տարփումն նիւթեցին՝ կենդանի, զոմն 'ի մեզ շնչաւոր, և զոմն 'ի կանայս բաղկացուցանելով: Այսպիսի յեղանակաւ զերկաքանչիւրոմն առնելով, զըմպելոյն ելն այն որ 'ի ձեռն թոքոյն զըմպելին առ երիկամունքն 'ի բուշտն բերելով, և շնչաւն մղեալ 'ի միասին արտաքս առաքէ զընդունեալն, արարին յայնմ որ 'ի

Digitized by Google

գլխոյն ըստ պարանոցին և ողնաշարին ուղիղն է մա-
ծեալ, զոր և սերմն յառաջագոյնս ասացաք բանս։
Եւ սա իբրու շնչաւոր գոլով և առեալ զվերաշնչու-
թիւն զայն ըստ որում վերաշնչեաց, 'ի հոմանէն կեն-
դանական ցանկութիւն ներգործեալ 'ի սմա՝ տռփումն
ծնանելոյ կատարեաց։ Վասն որոյ արանցն առ պատ-
կառանացն բնութիւն՝ անհաւանական ինչ եղև և
ինքնազօր իբրու կենդանի անհպատակ բանին, ամե-
նեցուն 'ի ձեռն մոլեկան ցանկութեանցն ձեռնարկե-
լով յաղթել։ Եւ 'ի կանայս իսկ այն որ մայրական որո-
վայնք կոչին, վասն այսորիկ նոցունց կենդանի ցանկա-
կան գոլով մանկարարութեան, յորժամ անպտուղ
առն իւրոյ ժամանակ բազում լինիցի՝ դժուարապէս
հեծելով հանդուրժէ և մոլորելով ամենևին ըստ մար-
մնոյն, զելսն շնչոյն խնու, վերաշնչել ոչ թողլով՝ առ
վերջինսն տարակուսանս հասուցանէ, և զայլ զգ[illegible]-
պէսպէսս առտուէ, մինչև արդեւք երկաքանչիւրոցն
ցանկութիւնն և տռփումն 'ի միասին հասեալ, և իբրու
'ի ծառոց քաղելով պտուղ, և յերկիր ոմն արօրավար
յարգանդին, անտեսս մանրկութեամբ, և անատեղծ
կենդանիս սերմանելով։ Եւ դարձեալ ընտրելով, զմե-
ծամեծս ներքոյ հնձիցեն. և յետ այսորիկ 'ի լոյս ա-
ծելով՝ կենդանեաց լինելութիւն կատարիցեն։ Կա-
նայք իսկ արդեւք եգք ամենայն այսպէս եղեն։

Իսկ հաւուցն ցեղ փոխայարմար. փոխանակ հե-
րիցն թևք բուսուցանելով, ամբիծ արանց, և թե-
թևագունից. և բարձրաքանականաց իսկ, բերելով
տեսութեամբն զառ 'ի յաղագս սոցա ապացոյց վասն
դիւրին բարուցն գոլ հաստատունք։ Եւ հետևակն և
գազանատեսակն եղև յայնցանէ, որ ոչ և միով վարին
իմաստասիրութեամբ, և ոչ տեսանին և ոչ մի յայն-
մանէ որ առ յերկինսն են բնակութիւնքն. յաղագս
ոչ միոյ իրի վասն ոչ ևս այնմ որ 'ի գլուխն է՝ վարե-
լոյն շրջաբերութեամբն. այլ այն ոք իւք որ առ լան-
ջօքն են մասունքն հոգւոյն՝ իբրու առաջնորդաց՝ հե-
տևին։ Վասն այսոցիկ արդեւք խորհրդոցս զառաջին
ոսկերքն և զգլուխն յերկիր հաստատեցին ձգեալք՝
բաղազմնութեամբ, և առաջաձիգք և պէսպէսք ըն-
կալան զգլուխս, ուր և խոտորեցան խափանմամբ իւ-

Digitized by Google

թաքանչիւրոցն շրջաբերութիւնքն։ Եւ չորքոտանի սեռն սոցա յայսմանէ բուսանէր [1] պատճառէ, յոլովս հատատութիւնս ենթադրելով աստուծոյ՝ այնոցիկ որ մանաւանդ անխոհեմքն են, զի յաւէտագոյն առ երկրաւ ձգին։ Եւ այնոցիկ որ անզգամագոյնքն են 'ի սոցանէ, և ամենևին ամենայն առ երկրան բոլոր մարմնաւն տարածելոցն, իբրու ոչ ինչ տակաւին ոտից գոլով պիտոյից, անոտս նոքա և գետնաշարժս առ երկրաւ ծնան։ Եւ չորրորդ սեռն ջրային եղև, յայնցանէ որ մանաւանդ անզգայագոյնքն են և անուսումնականք. զայս ոչ մաքուր վերաշնչութեանն արժանացուցին փոխատեղծիչքն, իբրու զհոգին ամենայն բաղբաղանօք անմաքուր ունելով. այլ փոխանակ անօսր և մաքուր վերաշնչութեանն օդոյ, 'ի ջրոյ պղտորագոյն և խորին թողացուցին վերաշնչութիւն. ուստի ազն ձկանցն և ոստրիցն, 'ի միասին ամենեցուն որչափ 'ի ջուրսն են, եղեն 'ի նմանութիւն վերջին անուսումնութեան, վերջին բնակութիւնս ընկալեալ։ Եւ այսոքիկ արդեւք՝ ամենայն յայնժամ և այժմ փոխաբերեն կենդանիքս 'ի միմեանց, մտաց և անհանճարութեան փոխաբերութեամբ և ստացմամբ այլայլեալք։ Եւ արդ կատարած յաղագս ամենայնի այժմ իսկ զբանս ունել ասացաք։ Քանզի զմահկանացուս և զանմահ կենդանիքս ըմբռնեալ աշխարհիս այսմիկ, այսպէս կենդանի երևելի՝ զերևելիսն պարունակեալ, պատկեր արարչին աստուած զգալի, մեծ և արիագոյն և գեղեցկագոյն, և կատարելագոյն եղև, մի երկին սա՝ գոլով միածին։

1 Յօր. բուսանէր։ Յոյնն. բուսանէր և բազմոտանի (յայսմանէ) պատճառէ։

# ՎԵՐՋ

Digitized by Google

# ՆՈՐ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՔ

## Ի ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆՑ ՆԱԽՆԵԱՑ

ԳԻՐՔ ՎԱՍՏԱԿՈՑ (Γεωπονικα) *Թարգմանութիւն նախնեաց յարաբացի լեզուէ. մի հատոր.* 1877:

## ԸՆԴ ՄԱՄԼՈՎ

Ս. ԱՐԻՍՏԻԴԵԱՑ *փիլիսոփայի աթենացւոյ Խօսք առ ինքնակալն Ադրիանոս կայսր, եւ Ի գոչումն աւազակին եւ 'ի Խաչելոյն ապաշխարութիւն. անդիւտք առ Եւրոպացիս. հրատարակելիք 'ի լատին բարբառ, հանդերձ հայ Թարգմանութեամբ նախնեաց:*

Ս. ՅՈՎՀ. ՈՍԿԵԲԵՐԱՆԻ *Ներբողեան 'ի Ս. Գր. Լուսաւորիչ.* (Հրաշալի է մեզ տօնս). *անդիւտ առ Եւրոպացիս. հրատարակելի 'ի լատին բարբառ, հանդերձ հայ Թարգմանութեամբ նախնեաց:*

